# ԱՐՏԱՇԻՐ ԲԱԲԱԿԱՆ

# ԿԱՐՆԱՄԱԿ





ՊԱՀԼԱՒ ԲՆԱԳՐԷՆ
ԹԱՐԳՄԱՆԵՑ
ՀԱՆԴԵՐՁ ԾԱՆՕԹՈՒԹԵԱՄԲՔ
ՕՐԲ. Յ. ԹԻՐԵԱՔԵԱՆ



ՓԱՐԻԶ
Բազմալեզուեան Տպարան Բաւնաչեանի
3, Սիմոր փողոց, 3
1906

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Սոյն աշխատութիւնը իմ՝ Պարսկաստան անցուցած տասն երկար տարիներուս՝ պտուղն է։

Ի վաղուց արդէն ընդնշմարած էի Իրանական ուսմանց կարեւորութիւնը հայ բանասիրութեան համար եւ մերթ ընդ մերթ, պատեհութիւններէ օգտուելով, կը սիրէի ալ զբաղիլ պարսիկ եւ հայ լեզուաց բաղդատական ուսմամբ։

Սակայն, ա՛յլ է հեռու եւ օտար տեղեր, խորթ եւ անյարմար միջավայրերու մէջ կցկտուրով եւ մուրացածոյիւ գոհանալ, եւ ա՛յլ լեզուին բուն կեդրոնին մէջ գտնուիլ եւ ժողովրդեան կենդանի բարբառէն եւ ցեղին դարաւոր ճոխ գրականութենէն օգտուիլ։

Բախտ կամ անբախտութիւն, այս վերջինը վիճակեցաւ մեզ։ Բժշկութ եւ գիւղութիւն ունէի ամէն տեղ ելումուտ ընելու, ամէն խաւերու մէջ թափանցելու, ամէն կարգի գաղափարաց արտայայտութիւնը լսելու եւ խելամտելու։

Ամէն օր ժողովրդեան բերնէն կը լսէի նոր նոր բառեր որ հայաչի կը հնչէին ականջիս. ո՛չ թէ այն ազատ՝ ակահ՝ ճախճիր՝ մարդ եւ այլ այսպիսի բառեր որ յայտնի եւ ամենուն գիտցածներն են, այլ թաքուն՝ վարագուրեալ՝ այլակերպեալ որ առաջին եւ անսովոր հայեցուածով աչքի չեն զարներ եւ միտք ալ չիգար թէ հայ լինին։ Ո՞վ արդարեւ կ'ակնկալէ որ բուն հայ կարծուած դէմք բառը Մազանդարանի գեղջուկ կնկան մը բերնէն պիտի լսուի, որ կ'ըսէ.

« Ղուբբունու դիմիդ բուշում »

որ կոկիկ պարսկերէնով պիտի լինի՝

« Ղուրբանը դիմէդ բէշէվէմ »

قربان دیمت بشوم

« Քո դէմքիդ ղուրբան լինիմ »

Այս եւ ասոր պէս անթիւ բառեր որոց մեծ մասը կրցածիս չափ հաւաքած պահած եմ հանդերձ մեկնողական բացատրութեամբք. Թերեւս օր մը լոյս տեսնէ։

Ֆիրդուսիի ուշադիր ուսումը մանաւանդ, յայտնութեան նոր հորիզոններ պարզեց իմ աչաց առջեւ։ Այնպիսի բառերու պատահեցայ անդ որոց այժմ խօսուն լեզուի մէջ հետքն անգամ չգտնուիր. եւ զարմանք այս է որ ես, հայ, այսինքն օտար, կը հասկնայի զանոնք, եւ պարսիկն՝ ընտանի եւ տէր լեզուին՝ չէր հասկնար։

Պատճա՞ռ. — Քանզի, որչափ ալ ազգով՝ ցեղով եւ քաղաքական արդի հանգամանօք օտար, այլ սակայն լեզուաց ծննդաբանական օրինօք եւ բերմամբ, ես իրօք աւելի մօտ էի պարսկին քան ինքը պարսիկը որ արաբական հեղեղին տակ ողողեալ, շատո՛նց հեռացեր օտարացեր է հին ձեւերէ։ Արաբ լեզուն եւ գրականութիւնը, շնորհիւ եւ հարկադրութեամբ կրօնի, այսօր ո՛րքան եւ ո՛րպէս ընկճած կաշկանդած եւ հեղձուցած է բուն պարսկական տարրը որ երկու տող բան չկրնար գրուիլ կամ խօսուիլ առանց մէջը ութը տասը արաբական բառ խառնելու։ Կղերական դասը՝ մանաւանդ՝ անողոք է այս մասին. այնպէս որ եթէ կարելի լինէր, համակ արաբերէն պիտի խօսէին, աւելի եւս անհասկանալի լինելու համար ռամկէն որով աւելի բարձր հովեր կ'ապահովուէր իրենց։

Այս մոլութիւնն այլ եւս ընդհանուր դարձած է այսօր. Միւնշիներուն (منشی դպիր) մէջ նա՛ աւելի խորունկ՝ հմուտ եւ ներհուն կը համարուի որ գիտէ, բայերը միայն պարսկերէն պահելով, մնացածը արաբերէն շարադրել։ Ո՛րչափ աւելի մութ՝ սեթեւեթեալ եւ դժուարիմաց (իմա՛ անիմանալի), ա՛յնչափ աւելի բարձր է շարադրութեան մը յարգը։ Հասարակ մահկանացուներն իսկ, դ. օ. սղաւորներ՝ խոհարարներ՝ կառապաններ, չըսեմ ատոնցմէ մի աստիճան բարձր դասակարգի մարդիկ, առ հասարակ մոլեալ զակատեալ՝ արբշիռ են այս արաբերէնի։

Բարեւն արաբերէն կը տրուի سلام علیکم թէ՛ միւսիւլմանի եւ թէ քաֆիրի (کافر) անխտիր. իսկ երբեմն, անոնք որ սովորական ոճի՝ մի

գանազանութիւն տեսնել կ՚ուզեն صباحكم باخير կ՚ըսեն եւ առ բառ ժամանակին՝ չուրջ ալ կը նային թէ հայոց գաղթականներ կա՞ն այս սըփռուած մարգարիտներուն ։

Մնաց այս արտահայտութեան մէջ անկորդ է պարսիկ ժողովրդէն լեզուի նախանձախնդրութիւն եւ հնութեան հաւատարմութիւն պահանջել ։ Անգիտայութիւնը՝ անփութութիւնը իր գագաթնակէտին հասած է ։ Լեզուին հոգ՚ը տանողութեանն զբաղող մէ՛կ հոգի մը, այո՛ մէկ հոգի մը չկանուիր այսօր ընդհանուր Պարսկաստանի մէջ ․ այս ուսումը եւ այս գիտութիւնը թողուած է օտարներուն ․ պարսիկը կը գոհանայ լեզուին մեքենական կիրառութեամբը միայն յորում եւ կը գերազանցէ ։ Այժմու ընթացիկ լեզուն — այս է պարսիկին գիտցածը ․ հին լեզուի՝ հին գրականութեան հետ գործ չունի նա ․ ամէն բառ որ իր հասկացողութենէն վեր է՝ հին պարսկերէն է (فرس قديم) կամ «զենդ ու փազենդ» (ژند و پاژند) պատրաստ առ ձեռն ասութիւն մը որով կը մերժէ ամէն ինչ որ հին է, առանց հիւլէի չափ գանազանութեան գաղափար ունենալու զենդի փազենդի, եւ այլնի վրայ ։

Այդպիսի սեփական ամենապարզ հեղինակութիւնը, Ֆիրդուսին կը կարդացուի խարխափմամբ՝ մերձաւոր եւ անհաստատ իմացողութեամբ, առանց վերլուծաբար տիրելու բառից ծագման՝ կազմութեան՝ ստոյգ իմաստին եւ քերականական կապակցութեանը ։

Հազարէն մի օրինակ՚ լինելու համար՝ յիշենք գերահռչակ Դիւցազներգուին հետեւեալ տողերը որ, հինգ վեց հարիւր ամաց առաջին անդրանկէն՝ հայ հանճարին (Եզնիկ)* ձայնակցելով կ՚ըսէ ․

بهستيش بايد كه خستو شوى
ز گفتار بيكار يكسو شوى

բառ առ բառ

« Էութեան Նորին պարտ է խոստովան լինել ․
« յԸնդունայն խօսից ի բաց կալ ։ »

Կը տարակուսիմ շատ թէ մի հատ պարսիկ գտնուի այսօր որ հասկընայ թէ ի՞նչ է خستو եւ خستوان ը, մինչդեռ հայու մը համար պարզ եւ ակներեւ է (խոստովան) ։

(*) «Եւ արդ քանզի մի էութիւնն անքնին է և անհաս բնութեամբ, առ նորա անքննութիւնն ընծայութիւն անգիտութեան մատուցանելի է, և առ էութիւն Նորին դաւանութիւն պետութեան և ոչ քննութեան ։ »

Այս առաջին եւ միակ օրինակը չէ․ պէտք ասենք թէ հայ լեզուին ծանօթութիւնը ո՛րչափ կարեւոր է, ոչ թէ Ֆիրդուսիի պէս մեծին պարսկերէնը՝ այլ աւելի հին այսինքն բուն իսկ պահլաւ մատենագրութեան բազում մութ եւ մինչեւ հիմա անորոշ մնացած կէտերը լուսաբանելու ։

Աւելին պէտք չէր իմ վաղնջուց լարուած հետաքրքրութիւնս խըթելու․ սկսայ այնուհետեւ աւելի լրջօրէն վերաբերուիլ ուսման եւ աւելի եռանդեամբ հետեւիլ այս զարմանալի երեւոյթներուն ։

Ընթերցողին համար կարեւորութենէ զուրկ լինի գուցէ, եթէ մանրամասնաբար պատմեմ թէ պարագայից ո՛րպիսի անակնկալ բերումներով եւ յաջողուածներով եւ ո՛րպիսի եւ ո՛րքան դժուարութեանց եւ արգելքներու յաղթելով առաջնորդուեցայ զէնդի եւ մանաւանդ փէհլեվիի փոքր ի շատէ ծանօթութեան որ ինձ համար ա՛յնպիսի հորիզոններ բացաւ որոյ ոլորտը չեմ կարող տակաւին չափել ։ Իրանական ճիւղերուն մէջ, պահլաւիկ մատենագրութիւնը միակը՝ եզականն է, որչափ ես տեսայ, որ ա՛յնչափ սերտիւ ընդգրկէ հայերէնը ։ Կրնամ ըսել թէ, մինչեւ այս օրս, օր չանցաւ որ նոր հանդիպման մը, նոր յայտնութեան մը եւ մին քան զմիւսն աւելի հետաքրքրաշարժ նոր առնչութեանց՝ նոր չօշափմանց հանդիպած չլինիմ ։

Որ աւելի զարմանալին է, այս աղերսները՝ այս առնչութիւնները հասարակ բիրտ (grossier) հանդիպումներ չէին երեւնար, այլ, մեծաւ մասամբ, ա՛յնպիսի նրբին՝ հիւթական՝ հիւլէական, ըսենք, կուզախառնութիւններ էին որ խորունկ մտածութեան եւ լուրջ եւ անպաշար եւ անաչառ դիտողութեանց տեղի կուտային ։ Ու թէպէտ կը վարանիմ, բայց, եթէ խօսքը՝ ճիշդը եւ բովանդակն ըսել պէտք եւ ներելի է, պիտի յայտարարեմ թէ մինչեւ իսկ զարհուրելի թուեցաւ ինձ ա՛յսչափ սերտ (intime) չգիտեմ ինչութիւնն ըսեմ պահլաւի եւ հայու մէջ ։ Ասոնց ո՛ եւ է անհաստատ եւ գաճալէժ կարծիքներու հապճեպով տեղի տալու, ուզեցի իմ բոլոր կարողութեամբս պեղել բրել պրպտել այս հանքը, տեսնելու թէ ի՛նչ դուրս կուգայ, վերջապէս ո՛ւր պիտի յանգի եւ ի՛նչ որոշ եւ բանաւոր եւ անդիմադրելի եզրակացութեան կարելի պիտի լինի հասնիլ ։

Գիտենք որ մեր լեզուին պատմութիւնը տակաւին եղած չէ․ այնպէս որ, ինչ որ ալ ըսուեցաւ՝ գրուեցաւ մինչեւ հիմա, թէ՛ մեր եւ թէ օտարաց կողմանէ, թուեաց կարծեաց սահմանին մէջն են բոլորն ալ․ ճշմարիտն այս է որ թարգմանչաց ձեռնարկութենէն առաջ լեզուին ունեցած վիճակին վրայ ոչ ոք ստոյգ բան մը գիտէ ։

Գրի գիւտով եւ Ս. Գրոց թարգմանութեամբ, յանկարծ, հրաշալի

կատարելութեամբ հրաշալի եւս լեզու մը կ'երեւնայ ի միջի · այս է մեր բոլոր գիտցածը ։ Լեզուին բոլոր պատմութիւնը այս յիշակարծ երեւման Թուականէն յառաջ կրած վիճակներու պատմութիւնն է , ո՛չ առաջ ։ Խաւարն ա՛յն ատենուան չցրուիլը , լռութիւնն ա՛յնքան բացարձակ է այդ Նախնական վիճակին վրայ որ մարդ չհամարձակիր մի որ եւ է փորձիչ հաւանականութեամբ կարծիք մը գոյացնել կամ ընել ։ Այն մի քանի հատակոտորներն ալ որ Խորենացին « Թուելեաց » անուամբ մեզ կ'աւանդէ , իբր հին բարբառոյ մը նշխարք կամ նշմարանք , ես չատ կը տարակուսիմ թէ Պատմահայրը զանոնք իսկապէս tale quale իր ժամանակի առմէկին կամ Դողթնացւոց բերնէն լսած ըլլայ ։ Ըստ ամենայն հաւանականութեան , մի օտարածայն աշուղի կամ աշուղներու հաւածեալ հագներգութիւններն էին սոքա զորս հայրենասէր քերթողահայրը թարգմանաբար տուած է մեզ՝ հայացնելով ։

Ազգ. պատմիչք մեզ կ'աւանդեն թէ , առ ի չգոյէ սեփական նշանագրաց , յունականով եւ ասորականով կը վարէին ի կրօնականս եւ պարսկականաւ ի քաղաքական եւ ի վարչականս ։ Որոշ չգիտցուիր թէ լեզո՛ւն ալ օտար էր , թէ ոչ լեզուն հայ էր եւ գրչութիւնը միայն օտար էր ։ Ամենքս ալ այս վերջին կարծիքին մէջ հաստատուած ենք եւ յայս կը միտին մեր պատմչաց ակնարկութիւններն ալ ։ Արդ , ի՛նչ մտածել , ինչ ընել ։ Ինչպէ՞ս եղեր է որ մինչեւ հիմա օտար նշանագրօք գծուած բայց մեզ հասկանալի հարազատ եւ անվրէպ հայերէնով տող մը՝ կէս տող բան , մի եւ եթ բառ անգամ մը գտնուած չէ ։ Մեր Նախնեաց անխախտատելի բարքը , Մեհրուժանայ այլեւայլութիւնները եւ այլ հազարաւոր այսպիսի պատահարք որոնցմով արդարացնել կը ջանայ Խորենացին այս բացառական երեւոյթը , անզօր եւ անարժէք ճիգեր եւ ունայն ենթադրութիւններ են ։ Զկրնար երբեք ընդունուիլ թէ ժամանակը՝ դիպուածը եւ այլ արտաքին կարելի՛ ո՛ եւ է արկածք եւ պատահարք խնամով եւ անմեկնելի խըստութեամբ , առ՛նք միայն բարձած եւ անհետացուցած ըլլային ի մէջոյ ։ Դիպուածներ կան այնտեղ որոնց թափանցած չենք ։

Եթէ ես , որչափ իմ նիւթոյս · չափազանցութեան սահմաններուն չեմ տարած իմ յափշտակութիւնս , ես իսկապէս համոզուած եմ որ Արիա-Եւրոպական լեզուախմբին խորագնին ուսումնասիրութիւնէն պիտի ծագի մեզ լոյս ։ Մեր այս համոզումը կ'արդարանայ ոչ միայն անով որ դարուց այն երկա՛ր եւ հեռաձիգ յաջորդութեան մէջ , թէ՛ սահմանակից , թէ՛ կրօնակից եւ թէ ըստ ամենայնի գաղափարակից եղած ենք Պարսից ազգին եւ թէ միշտ նոյն քաղաքական եւ ատենին կարգ ու սարքերը տիրած են երկուստեք որք ի հարկէ եւ բնականաբար իրենց փոխադարձ ազդեցութիւնը պիտի ունենային ժողովրդեան մտքին եւ լեզուին վրայ.

այլ եւ արդիւնք իսկ իրաց , ինչպէս իմ այս կարգի անկատար եւ փոքր ուսումնասիրութեանցս կը տեսնեմ , դերայլբայլէս զայս հաստատել կը թուի , ամէն օր նոր լոյս , նոր յայտնութիւն եւ նոր հաւաստիք բերելով առաջ ։

Եթէ խնդիրը մինչեւ հիմայ լուծուած չէ , պատճառն այն է որ մ'յն օրինօք եւ պայմաններով որ պէտք էր , առաջարկուած չէ ։ այն է՝ յետուլ չաղկապել ծանօթն անծանօթին հետ , այն կերպով եւ պայմաններով որ անոնց վերաբերութեան խելամտութիւնէն ինքնին բնականաբար բղխէ եզրակացութիւնը ։

Արդ՝ այն ձեւով եւ պարագով որ կ'առաջարկենք մենք խնդիրը՝ լուծման ընդունակ չէ , քանզի անհրաժեշտ պայմանները (données) չունի ։

Բացայայտ խօսելով , մենք մինչեւ հիմա , մեզ հետ ամենասերտ առընչութիւն ունեցող ազգաց լեզուն եւ պատմութիւնը ուսումնասիրած չենք որ ծանօթ եւ յենլի եզրներ ունենանք ի ձեռին . յայտնի բան է որ ցորչափ այս հիմը չդնենք , յաւիտեան խոյս պիտի տայ մեզմէ լուծումը ։

Ուրեմն նախ քան չափել ձեւել կերպել , նիւթերը տաղձները պատրաստենք ։ յետոյ կուզայ ճարտարապետել եւ ամբառնալ շէնքը ։

Այս է ահա մեր ալ ըրածը ներկայ աշխատութեամբ ։ Նիւթ ժողվելու վրայ ենք առ այժմ , տեսնենք արդ ի՛նչ կարելի է մտածել պրուլէք ձեւին վրայ ։

Վերը անցողաբար յիշեցինք պահլաւիկ լեզուին անհնարին կարեւորութիւնը հայ լեզուի համեմատական ուսման համար ։ այս է որ այժմ պիտի առաջի աչաց դնենք Թանձրացեալ կերպով ։ Բախտի մի անակնունելի յաջողութեամբ այնպիսի գործի մը վրայ ինկանք որ , մեր նպատակին համար , չէինք կրնար աւելի քան զայս յարմարագոյնը երեւակայել ։

Այս գործը հինգ փոքր պրակներէ բաղկացեալ մի պահլաւերէն հաւաքածոյ է , հին , այսինքն Սասանեանց օրով գրուած , շատ յարգի ։ բոլորն ալ եւրոպական լեզուներու թարգմանուած եւ մեկնաբանուած են ։ Բայց ճշմարտութիւնը մերկ հոլանելու համար աւելցնեմ որ ես եւրոպական թարգմանութեանց հետ բնաւ գործ ունեցած չեմ . յետոյ , շատ յետոյ , ես իմս կատարելէս վերջը իմացայ եւ Եւրոպա անցնելուս մի քանի հատը ձեռքս անցուցի եւ իմինիս հետ բաղդատեցի , նշանակելով տեղն ի տեղը տարբերութիւնները ։

Իմ աշխատութիւնս ուրեմն ուղղակի պահլաւերէնէն է , առաջնորդ ունենալով Խօտաեար-Շէհրիար անուն Զրադաշտադաւանդ փարսի գիտնական Դաստուր (دستور)ը որ իւր համաքէշներուն պահլաւ լեզուի ուսումը

դիւրացնելու համար՝ այս հաւաքածուն Թարգմաներ է, ոչ թէ արդի սահուն եւ ընթացիկ պարսկերէնի՝ այլ միջին եւ խրթին մի տեսակ ոճով զոր իրենք փարսիները միայն դիւրութիւն ունին իմանալու։

Այս անձը այսօր Պարսկաստանի միակ զէնդ ու պահլաւագէտ գիտնականն է, որ բազում տարիներէ ի վեր Հնդկաստան կը գտնուէր իր ուսումը կատարելագործելու համար եւ այս հրատարակութիւնն ալ ըրած է անդ ի Բոմբայ։

Տե՛ս ինչ ժամանակի յաջող բերումները որ մինչ ես աստ ի Շիրազ, ուր տարիէ մը հետէ կը գտնուիմ ընկերակցելով Ն. Իշխանական Բարձրութեան, Մելիք-Մանսուր-Միրզա Արքայորդւոյն, աչքէ անցընել եւ մաքուր գնելու վրայ էի իմ ձեռագիրներս, ահա նոյն փարսի գիտնականը որ քաղաքիս մէջ կ'երեւնայ, Հնդկաստանէն իր հայրենիքը Եզդ վերադառնալով։ Սա մի անակնկալ բարեբախտութիւն էր ինձ համար, քանզի բազում լուծելի խնդիրներ տարակութիւններ կային որոնց համար ի բազմաց հետէ կը մտադրուէի գրել կամ յատկապէս իրեն եւ կամ Փարսի Կաճառին ի Բոմբայ։

Պատեհութիւն ունեցանք ուրեմն այս տեղ այն ամենուն վրայ երկա՛ր օրեր խօսել եւ իրար հասկնալու։

Կը մնայ այժմ խօսել բուն գործոյն վրայ։

Այս Թարգմանուած հինգ պրակներէն ես առ այժմ մի հատը, «Արտաշիր Բաբականի»ը պիտի տամ, միւսներն ալ հետզհետէ աչքէ անցնել եւ տալու մտադրութեամբ։

Այս «Կարնամակ»ը Բոմբայի հին տպագրութեան մը վրայ Թարգմանուած եւ տպուած է եւ այն հինն ալ ընդօրինակուած է Պարսկաստան գտնուած միակ բնագրէ մը որոյ համար կ'ըսուի թէ ձեռք անցած պհլ. հին նշխարաց մէջ ամենէն հնագոյնն է եւ քաղուած հին ձեռագիրներէ, ի Թուին 691 Յազկերտի վերջին արքայի Սասանեան յորմէ կը հաշուեն Փարսիք իւրեանց Թուականը։

Նիւթը պատմական է եւ պատմութեան յոյժ երեւելի դէմքերէն մին, Սասանեանց Հարստութեան հիմնադիր Արտաշիրին վրայ կը խօսի։ Ոճը վիպական է եւ մասամբ ալ միստիկ, բայց վերին աստիճանի հետաքրքրական եւ հրահանգիչ, այնու զի ժամանակին ոգին, ընկերական եւ քաղաքական կացութիւնը եւ մտաց ընդհանուր ձգտումը քաջ ի հանդէս կը բերէ։

Գործոյն բուն ոգին քաջ ըմբռնելու համար կարեւոր է մի հարեւանցի ակնարկ նետել Պարսկաստանի այն ժամանակի դրութեան եւ հանգամանացը վրայ։

Արշակունիք կամ Պարթևք (Parthes) միշտ օտար և բռնաւոր համարուած են բուն պարսիկ տարրէն ։ Համաձայնութիւն, ներդաշնակութիւն և հետևաբար խառնուրդ ձուլում երբեք տեղի ունեցած չէ, այլ տեսակ մը խուլ և ճնշեալ համակրութեամբ կրաւորաբար տարած են Պարսիկք այս օտար լուծը ։ Այս անկցորդ և անզանգ օտարութիւնն այնո՛ւ առաւել չեշտուած էր մանաւանդ որ Արշակունիք կրօնական նոր (յունական) գաղափարներ և օտարոտի աստուածոց պաշտամունք ներմուծելով սաստիկ վիրաւորած էին Մազդեզի և Զրադաշտի սկզբունքներով և աւանդութիւններով տոգորուած զգացումները ։

Պարթևաց յունասէր բարուց բերմամբ հելլէն և հռովմէական բազմաստուածութիւնը բազմացած տիրած էր ի Պարս ։ Յունական լեզուն. յունական կրթութիւնը՝ ճարտարութիւնը, թատերական՝ մեհենական և այլ ընկերական երևոյթներն ու սովորոյթներն ի յարգի էին և բուն տեղական և ազգայիններն արհամարհեալ ։ Նոյն իսկ դրամոց վերտառութիւնը յունարէն էր և Արշակունի թագաւորք պարծանաց տիտղոս մը կը համարէին հելլենասէր (philhellène) կոչուիլը ։

Մի ուրիշ ոչ նուազ կարևոր պարագայ ևս կուգար չեշտելու այս խորթութիւնը և ընդլայնելու այն վիհը որ բացուած էր այս երկու տարրաց միջև. այն է զարգացման անհաւասարութիւնը ։

Դարեհեանց ժամանակը, գիտենք որ, Պարսկաստանը բարգաւաճման բարձրագոյն կէտը հասած էր, այնպէս որ բազում ինչ յաղթական Մակեդոնացիք անոնցմէ օրինակելու պէտք տեսած էին և ինքն իսկ Ալեքսանդր ո՛րքան հոգւով փարած էր Պարսկաստանի մէջ տիրող կազմակերպութեան որ, հակառակ իր աւագանւոյն խրատուց և թելադրութեանց, ամենևին փոխել խանգարել չուզեց տիրող ընկերական կարգը, այլ ամէն բան իւր վիճակին մէջ (statu quo) պահելու կողմը գտնուեցաւ ։ Այնպէս որ կրնար ըսուիլ թէ եղած փոփոխութիւնը ոչ թէ իշխանութեան էր, այլ անուան միայն, Դարեհին յաջորդելով պարզապէս Մակեդոնացին ։ Այս անցումն այնքան բնական երևցաւ որ, օրինաւորութեան դրոշմով ալ նուիրագործելու համար, ազգային մատենագիրք՝ ծննդեամբ և ծագմամբ ալ Դարեհեան առասպելեցին զԱլեքսանդր, որպէս թէ Դարեհի մէկ դուստրը, Փիլիպպոսի կին եղած էր ժամանակին ։

Ալեքսանդրի դէմ եթէ մէկ դժգոհութիւն մը կայ որ մինչև ցարդ խորարմատնուած է փարսիներուն մէջ, այն է թէ ոմանց սադրանաց տեղի տալով բոլոր հին մեհենական մատեանները այրել տուած լինի։ «Զարդեն, դրուժանն Ահրիման, կ'ըսեն, մարմնաւորեալ յանձին Ալեքսանդրի, արշաւեց Իրանի վրայ և ոչնչացուց բոլոր աստուածային կտակարանները և հազիւ ուրեմն այս աղետէ զերծ մնացած նշխարներն են որ այս-

որ այս կամ այն անկիւնէ կամ խորշէ երեւան կ՚ելլեն ։

Մակեդոնական իշխանութեան յաջորդելով Սելեւկիականը՝ Պարսկական աշխարհի պերճութենէն դարձեալ բան մը չփոխուեցաւ ․ Յունական նուրբ եւ ճկուն հանճարը հրաշալի կերպով կը դաշնաւորէր պարսկական նրբացեալ ճաշակի հետ ։

Իսկ Պարթեւք, ի բնէ բիրտ եւ անտաշ, շատ ստորին էին զարգացմամբ քան զնուաճեալ Պարսիկս որք բարբարոս գիտէին զանոնք եւ այս իսկ անհաւասարութիւնն էր որ յարելութիւնն անկարելի կը դարձնէր երկուստեք ։ Ազգային պատմագիրք որք ո՛րքան ճոխ եւ ճոռոմ են Աքեմենեանց Սասանեանց մասին ․ Արշակունեաց իշխանութիւնը գրեթէ յանկեայն կ՚անցնին , հազիւ մի քանի տող մութ եւ անկապ յիշատակութեամբ, եւ այն՝ «անիշխանական շրջան» (ملوك الطوائف) յորանուանութեան տակ , քան օրինաւոր իշխանութիւն ճանաչելով ։

Ֆիրդուսի , միակ ազգային պատմիչը , քանի մը տող հազիւ կը նուիրէ այս մի քանի հարիւր տարի տեւած եւ փառաւոր եւ փայլուն հարստութեան ։

از ایشان جزاز نام نشنیده ام
نه در نامهٔ خسروان دیده ام

կ՚ըսէ , այսինքն,

« Անոնց (Արշակունեաց) անո՛ւնը միայն լսած եմ
« Եւ ոչ ալ Արքայից Պատմութեան մէջ հանդիպած եմ (նոցա յիշատակութեան) ։

Ատելութիւնը զօրաւոր եւ խորարմատ էր ուրեմն ազգին մէջ ընդդէմ տիրող օտար ցեղի , եւ մտքերը գերազանցապէս պատրաստ եւ տրամադիր՝ սիրով ընդունելու այն ճարպիկ եւ բախտաւոր փրկիչը որ պիտի քաջութիւն ունենար ներկայանալու ։

Այս եղաւ Ստահրացւոյն Արտաշրի արագ յաջողութեան բուն գաղտնիքը ։

Պարսկաստանի մէջ Արտաւան վերջին ներկայացուցիչն էր Պարթեւական տանն եւ ազգակից մերոյս Խոսրովու , հօր Սրբոյն Տրդատայ ։

Արտաշիր սերեալ էր Դարեհ Գ․է որոյ պարտութեամբ յԱլեքսանդրէ՝ վերջացած էր Աքեմենեան կամ (ըստ Պարսից) Քայեան Տունը ։

Դարեհի գերդաստանը (օճախ) ցիր ու ցան եղած էր եւ նորա որդ-

ւոց մին, Սասան, Հնդկաստան ապաստանած էր եւ անդ անշուք եւ անշքեղ կեանք մը կը վարէր։ Դարեր յետոյ, սորա սերունդներէն մին, նոյնպէս Սասան անուն, Պարսկաստան անցնելով ամուսնացեր էր «Բաբակ» անուն հողատէր իշխանի մը աղջկան հետ յորմէ ծնաւ Արտաշիր, գլուցողն յառաջիկայ պատմութեանս։

Այս պատմականը։

Դալով Թարգմանութեանս.

## II.

Ցիշեցինք թէ գործոյս բնագիրը պահլաւերէն է։ Արդ թէպէտեւ իրանական ճիւղերուն վրայ մի ստանձին աշխատութեամբ ուրոյն ուրոյն խօսելու միտք ունինք, սակայն անհրաժեշտ կը համարինք այժմէն իսկ մի փոքր եւ հարեւանցի գաղափար մը տալ այդ լեզուին վրայ, գէ՛թ այնչափ որչափ պէտք է մեր նիւթոյն ընծայած բազմադիմի դժուարութիւնները զգացնելու համար։

Փէհլէվի ըսուած բարբառը, ըստ արդի գիտնոց համաձայն վկայութեան, Արշակունեաց վերջին ժամանակներու մօտ կերպաւորուած եւ Սասանեան Հարստութեան առեն ծաղկած եւ մահմետական շրջանին մէջ բոլորովին խափանուած եւ դադրած է։

Այս լեզուին մէջ կը գտնուին հին պարսկերէն (փարսի)է, եւ զենդէ բազում տարերք, բոլորն ալ քիչ ու շատ, մանաւանդ թէ շատ քան թէ քիչ, այլայլեալ ու աղաւաղեալ։ Ասոնց հետ առընթեր կը տեսնենք նաեւ շատ մը սեմական խառնուրդներ որք տարօրինակ կերպիւ այլանդակած եւ կնճռոտած են լեզուն։ Զարմանալին այս է որ այս սեմական բառերը՝ բայերը եւ այլ քերականական մասերը, ոչ թէ սահարկէ փոխառութիւններ են, ինչպէս լեզուաց բնական պահանջն է, այլ ըստ քիմս եւ հաճոյս (par caprice) կատարուած իմաստակական խաղեր. այնպէս որ սեմական բարբառներէն ո՛ր եւ իցէ մէկը, ըսենք, զօ. արաբերէնը քիչ շատ չհասկցող մէկը անկարելի է որ փէհլէվի գրուած մը կարողանայ ընթեռնուլ եւ հասկնալ։ Այս մասին տիրող կարծիքը սա է թէ այսպիսի խըրթնութիւններով անմատչելի դարձած լեզու մը անկարելի է որ հասարակ ժողովրդէն խօսուած լինի, այլ ժամանակին դպրաց կամ գրագէտ դասուն յատուկ քմածին մի ոճ կամ համարարգութիւն էր զոր իրենք միայն կը հասկնային եւ այնչափ աւելի կը խրթնացնէին որչափ աւելի բարձր երեւնալ կ'երեւակայէին յաչս ռամկին։ Վասն որոյ, բոլորովին արուեստական կը համարուի այսօր փէհլէվին եւ, ինչպէս ըսած է Մորտմանը՝ է-

փենդիական մի չենք ։ Աւելի ճշտելու համար գաղափարները՝ ըսենք — մի բարձր եւ զուտ գրական (littéraire) արտայայտութիւն էր սա . մանուածոյ եւ ճախորտիկեալ . խորթ եւ խրթին . միրզաներու՝ منشی ներու սեփականութիւնն էր եւ ժողովրդեան հետ գործ չունէր ։ Երբ հարկ կը լինէր ժողովրդին հաղորդել փէշքէշի հրաւէր մը , թուն ընթացիկ պարսկերէնը կը գործածուէր . չէին ըսեր , զօ . ռեժիմն ռեժիմ որմէ պարսիկ ախոյեանները բան մը չէին հասկնար , այլ , շահէնշահ (شاهنشاه) որ անզգական՝ որ սովորական եւ ամենուն գիտցած termeն էր ։ Ըսենք — պարզապէս կը թարգմանէին , երբ հասարակ մահկանացուաց հետ էր գործը ։

Այս՝ մէկ դժուարութիւն ։

Երկրորդը , որ գրեթէ անյաղթելեաց կարգէն է , այփաբետին անկատարութիւնն է ։ Ո՛րչափ եւ ինչ այ ըսեմ այս մասին , գիտեմ որ ճիշտ ու ճիշտ գաղափար չեմ կրնար տալ ընթերցողին ։ Սովաքականէն առնուած 14 նշանագիր կայ որով պիտի ձեւանոյ ամէն ձայն . այսչափ աղքատութիւն ոչ մէկ լեզուի մէջ կը տեսնուի՛ Ո՛ւր է զէնդին տառատութիւնն ճոխութիւնը եւ զունազեղ պէսպիսութիւնը , ո՛ւր փեհլէվիին ճիշտ ու ուղիղ զծութիւնը ։ Առաջինով ամէն կարելի ձայն մարթ է տալ . եւ առաւ համար է որ Փարսիներէն անոնք որ անգլիերէն կ'ուզեն ուսանիլ , նախապէս զէնդ այփաբետին հետ կը ծանօթանան որպէսզի անգլիերէնի անհատատ եւ անկանոն հնչումներն առնուլ պատկերացնեն եւ գրոշմեն ։ Իսկ պահլաւին համար , այսպիսի դիւրութիւններ երեւակայելի չէ ։

Նշանագրաց կանոնաւոր յօդաւորութեամբ չէ որ մարդ պիտի առաջնորդուի . այլ մտքի մէջ անոնց արթնցուցած գաղափարներուն յարմարութեամբը ։ Քանզի մի եւ նոյն նշանը , ըստ տեղւոյն , այլ եւ այլ ձայնով պիտի կարդացուի . երբեմն ա , երբեմն շ , երբեմն տ , երբեմն կ , եւն . եւն ։ Տառ կայ որ 8 , 10 , 15 եւ աւելի ձայներու ընդունակ է , որմէ կը ծագի , ընթերցանութեան համար , անհնարին դժուարութիւն եւ բազում ուրեք անհաստատութիւն բացարձակ ։ Բառ կայ որ 10 , 20 , 30 եւ աւելի տարբեր կերպերով կրնայ կարդացուիլ ։ Բառի մը համար , չեմ յիշեր ուր կարդացի թէ , 240ի չափ ընթերցուած առաջարկուած է ։ Առասպելական թուելու չափ անհեթեթ անշուշտ . այլ սակայն սա ճշմարիտ է որ շատ մը բառերու համար գիտնոց մէջ մինչեւ ցայսօր համաձայնութիւն կը պակսի . իւրաքանչիւրն իւր ընթերցման վրայ պնդելով ։

Ի մի բան, կրնայ ըսուիլ պատրաստելին համար թէ չկարդացուիր. այլ՝ կը գուշակուի։ Խօսքին ձեւումը, իմաստին պահանջումը, ներքին ծանօթութիւնը, խնդրական բառին միւս. որ բառարաններու մէջ գոյութիւնը, պատմութիւնը՝ աւանդութիւնը եւ այլ այսպիսի պայմանները են, վերջապէս, որ ոգւոյն օգնեն լուծելու առեղծուածը։ Այս ամէն հանգամանաց զուգընթացութեամբն է որ lectureի մը ճշտութեանը եւ հարազատութեանը մարթի գիտակցօրէն հաւատք ընծայել։

Մի զարմանալի յայտնութի՛ւն.

Եթէ գիտնական աշխարհը եւ ինքեանք իսկ Զրադաշտականք գիտնային թէ ի՛նչ մեծ եւ անգնահատելի ծառայութիւններ կրնայ մատուցանել հայերէնը պհլ. բնագիրներուն ընթերցումը եւ իմաստը ճշդելու, աւելի բուռն տենչիւ պիտի փարէին անշուշտ հայերէնի ուսման(*). եւ անհունապէս պիտի օգտուէին։ Հետաքրքրութեան համար առանձինն նշանակած եմ այն կտորները որ հայերէնո՛վ միայն հնար եղած է հաստատել եւ լուսաբանել textը։ Այս աստիճան հարազատութիւն կամ արեանակցութիւն, Խորենացիին բառերը գործածելով, ոչ մէկ ուրիշ լեզուի վրայ կը տեսնուի. կարծես թէ իրարու փոփոխակի լրացուցիչներն են այս երկու լեզուները։ Թարգմանութեանս ընթացքին մէջ պիտի տեսնուի որ երբեմն տեղ տեղ հարազատութիւնը նմանութեան կամ մերձաւորութեան սահմաններու մէջ ալ չէ մնացեր, այլ նոյնութեան յանգեր է։ Քանի անգամներ պատահեցաւ ամբողջ տող մը կամ տողեր ոչ թէ թարգմանել այլ նոյնութեամբ հայ նշանագրօք ի մերս փոխադրել։

Ի՛նչպիսի ոճ եւ եղանակ բանելու էինք ուրեմն որ այս նոյնութիւնները՝ այս նմանութիւնները եւ այս համագօրութիւնները անայլայլ եւ անփոփոխ եւ բովանդակ եւ կատարեալ առաջի աչաց դնէինք եւ հրաման եւ չփման կէտերը յայտ յանդիման զգալի եւ շօշափելի ընէինք, որ է մեր միակ նպատակը։

Եթէ վարուէինք լեզուին ընտել սահուն եւ կանոնաւոր ոճովը, ողորկ հայերէնով պարսկական պատմութիւն մը թարգմանած կը լինէինք եւ ոչ այլ ինչ, մինչդեռ մեր շարժառիթն այս չէր։

---

(*) Ասկէց երեք տարի չափ առաջ Թեհրանէն, Փարսի Արտաշիր Ջիի միջոցաւ որ Հնդկաստանի Զենդէնեանց կողմանէ Պարսկաստանի փարսիներուն վրայ այցելու վերատեսուչ է, մի ընդարձակ նամակ ուղղելով Բոմպայի Փարսի կաճառին, մատնանիշ ըրած էի փեհլեվիի եւ հայերէնի այս սերտ գրկախառնութիւնը։ Զգուշացուցած էի, պէտք եղած ապացոյցներով, թէ ո՛րչափ անհրաժեշտօրէն պէտք որ ունինք մենք փեհլեվին մշակելու, մեր լեզուին թափանցելու համար, նուազագոյն չափով նոյն անհրաժեշտութիւնը իրենց համար ալ կայ հայերէնը ուսանելու, իրենց լեզուին եւ քէշին շատ մը մութ մնացած կէտերը լուսաբանելու համար։ Իմ Եւրոպա ճանապարհորդութեանս վրայ գալով եւս ու կաճառի նախագահին մահը, ապարդիւն մնաց այնուհետեւ այդ խնդիրը։ Բայց դաստուր Խօսաէրին հետ բանակցեցանք վերստին արծարծելու։

Ուստի նախընտրեցի զոհել լեզուի գեղեցկութիւնը՝ մաքրութիւնը եւ այլ գրական առաւելութիւնները ուր ուրեք հարկը կը պահանջէր։ Անկէ ծագեցաւ մի տեսակ հայերէն որ արդի կոկիկ՝ ողորկ՝ վայելուչ հայերէնը չէ եւ ոչ ամէն հայու մերձենալի. եւ ոչ ալ օտար եւ խորթ լեզու մը, քանզի բացի բուն՝ հարազատ եւ վաւերական հայերէնէ՝ ընաւ ուրիշ օտար յոլա մի գործածած չեմ։ Եթէ անուն մը գտնել հարկ է՝ մեր ոճին (genre), կրնանք ըսել թէ հայապանրաւ է։ Եւ որովհետեւ մեր գործը ամէնին հետ չէ, այլ այն դասուն որ հայերէնի բոլոր թագուն գանձերն գիտակ եւ տեղեակ է, վասն որոյ չենք ալ մտատանջուիր բնաւ. թէ յաչաղանաց ուրիշ տուած լինինք մեր այս երեւութապէս (en apparence) անսովոր ոճովը, քանզի նոքա գիտեն թէ զուտ հայերէն է ինչ որ գրած ենք, միայն թէ մի այլ տեսակ հայերէն քան զոր ամէնը գիտէ եւ կ'իմանայ։

Այս յայտարարութեամբ, մանրամասնենք հիմա թէ ինչ կերպով վարուած ենք։

1. Այն բառերուն համար որ յայտնի եւ պարզ էին, զ. օ. «ղաւ. ապաստան, տափ, ջերմ, եւն., դժուարութիւն չկար. իսկ այն կարգի բառերն որ թէեւ լեզուին մէջ կային՝ այլ գործածութենէ ինկած, բառարաններու զանխուլ խորշերը կորսուած եւ կամ գաւառաբարբառներու մէջ թաղուած, մենք զանոնք խնամով որոնած գտած եւ դէմ հանած ենք իրենց պարսիկ ընկերակցին. «Անդարձ» բառը, զ. օ., շատ մարդ չգիտեր այսօր թէ կտակ՝ խրատ նշանակէ, գոնէ՝ մեզ Տաճկահայոցս համար բոլորովին անծանօթ է. այլ սակայն բուն հայերէն է եւ մինչեւ հիմա ալ Թիֆլիսեցւոց լեզուին մէջ կիրառութիւն ունի, ինչպէս իմացանք։ Արդ՝ փոխանակ կտակ՝ խրատ՝ խորհուրդ, ընտանի եւ հանրածանօթ բառերու, նոյն «անդարձ»ը գործածեցինք, քանզի սորա համազօրն էր, պահլաւի մէջ, اندرز։

Այսպէս շատ մը բառեր որ իրենց կեանքը՝ շրջանը բոլորած եւ այլ եւս մոռացութեան մէջ թաղուած եւ գրեթէ անհետացած էին, մեր նիւթը կը պահանջէր որ քաշէինք հանէինք զանոնք մոռացութեան անդունդէն եւ նոր կեանք եւ կենդանութիւն տալով գործոն շրջանի եւ վիճակի մէջ դնէինք։

2. Երբեմն կը պատահէր որ բառերը նոյն էին երկուստեք, كرمان եւ գերեզման, զ. օ., այլ առումները տարբեր։ Լեզուաց պատմութեան մէջ ամենաբնական եւ հանապազօրեայ մի երեւոյթ է այս որ իւրաքանչիւր ցեղ կամ ժողովուրդ, արմատէն իրեն բաժին ինկած սեփականութիւնը, իւր կեանքին՝ դիրքին եւ այլ բիւրաւոր պիտոյից եւ հանգամանաց համեմատ կը փոփոխէ՝ կը պէսպիսացնէ՝ կ'ընդլայնէ՝ կը սեղմէ, վերջապէս

հազար կերպերով կը յղփանայ ... Սակայն եւ այնպէս, հաղորդքէ: թեյ մը կայ միշտ, թագաւն եւ ամառանոցի շատ անգամ, որ կը զգայ կը կայծէ բրուրու հետ գաղափարները որչափ ալ հեռացած լինին. Դժբա-րութիւնը այս թելը գտնելն է որ միշտ չյաջողիր. Սոյն կարգէ է մեր վերի բառը, كرمان ը որ երկինք կամ անդրաշխարհեան վիճակ մը կը նշա-նակէ հին պարսից մէջ. Հայը մինչեւ երկինք չելլելով՝ ամենամաքրակեր է գաղափարը երկրի եւ հողոյ անդորրութեան մէջ. եւ այս իմացուածով ան կուգան կը միարանին كرمان եւ գերեզմանը, կ՚ուզէ՛ երկինք լինի այս անվերջ՝ անցաւ՝ խաղաղաւէտ վայրը, կ՚ուզէ երկիր եւ հող.

Դարձեալ, كرمان կը կոչէ պարունքը նա՛ եւ կնկան արգանդը (matrice). Հայը այս միաձնցումը (application) ըրած չէ. կնկան արգանդը գերեզ-ման կոչած չէ, այլ գերեզմանը արգանդ իմացած է զոր եւ ծոց (entrailles) եւ սիրտ երկրի* կը կոչէ. Յայտ իսկ, տես, Թէոդէս կողմեցիի գծերով. կուգան դարձեալ իրար կը շօշափեն գաղափարները (Տես ծան. 129).

Այս նկատումներն սաստիկ աչաց ունենալով. մենք երբեմն արգանդ» եւ երբեմն ալ «գերեզման» գործածած ենք անխտիր, որչափ ալ լսելեաց խորթ եւ անսովոր գայ այս վերջինը.

3. Կան այնպիսի աչ՚լ. բառեր որ հայերէնի մէջ նոյն ձեւով կեր-պարանքը եւ ազատ գործածութիւնը չունին՝ այլ թողեալ են բարդութեանց եւ ածանցմանց մէջ, մինչ անկշռաբար մնալ գլխովին. Այս պարագային մեզ համար նշանակութիւն չունի, բաւական է որ բառը լեզուին մէջ գոյութիւն ունենայ. այս է էականը եւ պահանջելին. Ուս-տի մերկացուցի այդ կարգի բառերն իրենց ծածկոյթէն եւ ի դէմ հանեցի պահելու պահելով երկուստեք նշանակութիւնները. Օրինակ լինի دخت բառը որ, ինչպէս գիտենք, մեր մէջ առանձինն եւ այս ազատ ձեւի տակ գործածուած չէ, այլ բարդութեանց մէջ, ինչպէս «Խոսրովիդուխտ», «Սանդուխտ», «Վարազդուխտ», «Շահանդուխտ», եւլն. Բաց աստի ունինք նաեւ «դուստր» որ լծորդն է دخت ի, սակի մը զանազանու-թեամբ որոյ այլուր պիտի տեսնենք օրէնքները. Մենք այս երկու ձեւերն ալ ազատաբար գործածեցինք, համառօտել եւ յանդիման դնելու համար երկուքին ալ գոյութիւնը.

4. Վերի նշանակուած բառերն ուրոյն ամբողջութիւն կամ թէ ը-սենք անհատականութիւն ունեցող բառեր են. Բայց կան պարագաներ ալ որ պահլաւի համապատասխանող տարերքը հայերէնի մէջ ալ կան, սակայն լրութիւն՝ եղականութիւն չկայ, միացած չեն այդ տարերքը որ մի ինքնակայ անհատ կազմեն, այլ ցրիւ եւ անկապ վիճակի մէջ են. Բաւական էր պարզապէս միաձեցնել յօդել այդ տարերքը, նոր իմաս-

* Եղնիկ.

տով նոր անձատ բառեր ունենալու համար իմ, նոր բառեր կերտելու մասին ունեցած եւ ցուցանած երկիւղածութեանս հակառակ, ամենեւին արգելք մը չտեսայ միացնել այս անջատ մասունքը, քանզի լեզուն ինքն իսկ օրէնքը եւ օրինակը ցոյց կուտայ նմանօրինակ յարակցութեանց։ Այսպէս, օրինակի աղագաւ, دين اكس բարդութիւն մը կայ պհլ.ի մէջ որ մեզ կը պակսի, գէ՛թ այն անձատ կազմութեամբ։ Այլ սակայն տարերքը կան «դեն» եւ «ական»* որոց մէջ գիծ (-) մը քաշել միայն բաւ է, կամ, մեր լեզուին օրինացը հետեւելով պարզ յօդիչ ա մը դնել, «դենական» (دين اكاه) բառ մ'ունենալու համար որ նշանակէ կրօնական, օրէնական, ինչպէս իր համազօրն ի պարսկի։

5. Կը պատահէր երբեմն ալ որ բառը բառին ուղղակի չէր պատասխաներ հայերէնի մէջ. այն պարագային, մերձաւոր արմատ մ'առնել հարկադրուած եմ, յօրինման օրէնքը ճշդիւ պահպանելով։ دش خدائی բառը, զօ. պարսկերէնի մէջ կը նշանակէ իշխանութիւն կամ տիրապետութիւն մը որ դառն եւ աղիտաբեր եղած է ժողովրդեան։ Բառը կազմուած է ի دش (դժ) մասնիկէ, եւ خدا է որ մեծ, աւագ, իշխան, տէր՝ կը նշանակէ։ Ես այս կուռ եւ գեղեցիկ իմաստը հայացնելու համար առեր եմ նոյն «դժ» մասնիկը զոր մենք ալ ունինք, բարդեր եմ «պետ»-ին հետ որ ինքն ալ արիական է (զնդ — պաիտի), որով եղեր է «դժպետութիւն» հարազատ հայ բառ մը որ ամենեւին նոյն է دش خدائی ին հետ թէ՛ շինքով, թէ՛ իմաստով։ Այսպէս բաւական նորաթեւք բառեր երեւցան նոր տառերով, բայց ոչ բռնածին, ոչ օտարէն եւ ոչ անարուեստ. այլ կատարելապէս համաձայն լեզուին ոգւոյն եւ օրինաց եւ ընդունուած օրինակաց ինչպէս են. մեր այս գիրքին մէջ. «դժգոհ, դժխեմ, դժկամ, դըժուար» եւ այլ այսպիսիք։

6. Անուանց ուղղագրութեանը մէջ նախնեաց տառադարձութեան հետեւեցայ. նախ որ քանզի բոլորը հին աշխարհի անուններ լինելով՝ անպատեհ էր անոնց նոր եւ օտարոտի կերպարանքներ տալ. երկրորդ որ՝ մեր արեւմտեայ հայոց եւ ի մասնաւորի Կ. Պոլսոյ հնչման ուղղութեանը համոզուած չեմ։ Հին հելլէն եւ հռովմէական մատենագրութենէն ի հայ փոխուած անունները կը տեսնենք որ բոլորն ալ հին տառադարձական օրինօք կատարուած են եւ ճիշդ կը համապատասխանեն այն հնչման որ այսօր կը լսուի արեւելեայ հայոց եւ Տաճկաստանի ալ գաւառացւոց բերնին մէջ։ Եւրոպացիք ալ ի վաղուց հետէ այսպէս ըմբռնած եւ տառաշրջած են հայ բառերը, հին եւ նոր. եւ Հիւբշմանի եւ Մէյէրի

---

* Ա-ի եւ Հ-ի փոխանակութեանց օրինակները շատ են. Ա հնագոյն է քան զՀ, ինչպէս ուրիշ տեղեր ալ պիտի տեսնենք։

տախտակները այսօր ընդհանուր գիտնական աշխարհէն ընդունուած եւ հաւանուած պատուական պատկերներ են ։

Նոր անուանց համար թո՛ղ ամէն մարդ իր վարժուած կերպովը գրէ եւ հնչէ ․ իսկ հիներուն հետ ըստ հաճոյս խաղալու իշխանութիւն չունինք ․ նոքա արդէն բարձրագոյն հեղինակութեամբ իրենց հաստատութիւնն առած որոշուած եւ սահմանադրուած են ։

Այս համարատուութիւնը լրացնելու համար աւելցնեմ որ այս թարգմանութեան մէջ , փէհլէվին ուղիղ եւ անսայթաք կարդալու առաջնորդ եղած է փէհլէվի ընագրին զէնդ տառերով փոխագրութիւնը (transcription) զոր գեղեցիկ ներշնչմամբ ըրած էր Խոստեար Դաստուրը մի եւ նոյն երեսին վերի կէսը փէհլէվի texteը , իսկ վարի կէսը նոյնին զէնդ արտագրութիւնը (reproduction) դնելով ։ Որով դեղեւելու՝ գայթելու տեղի չէր մնար պահլաւի ընթերցման համար ։ Դժուարին կէտը այս էր , ուղիղ ընթերցումը ։ Իսկ ուղիղ հասկացողութեան համար գլխաւորապէս Դաստուր Խոստեարին տուած ցյշ թարգմանութիւնը առաջնորդ ունեցած եմ որ անշուշտ ամենէն վստահելին է , ըստ որում նոյն ազգը՝ նոյն լեզուն եւ նոյն կրօնքը ներկայացնող եւ բազում տարիներ այս ուսմամբ պարապած գիտնականի մը ձեռքով կատարուած է ։

Մի այլ պարագայ եւս նկատ. եւ մի նոր երաշխաւորութիւն ընծայեց ինձ , այն է Nöldeke գերման գիտնականին հմտալից թարգմանութիւնը զոր վերջերս ձեռք անցընելով ծայրէ ի ծայր եւ կէտ առ կէտ բաղդատեցի* իմինիս հետ , եւ ամենամեծ գոհունակութեամբ տեսայ որ ըստ ամենայնի համաձայն ենք , բացի մի քանի մանր տարբերութիւններէ ընթերցուածոց եւ յիմաստս, որոց համար երբեմն ինձ հարկ եղաւ անոր մօտենալ, երբեմն ալ զնա առ իս հրաւիրել ։

Այս ամէնը տեղն ի տեղը կատարեալ ճշտութեամբ նշանակած եմ ծանօթութեանց մէջ ։ Այսպէս վարուած եմ նաեւ ամէն անոնց համար որոց հետ պատահում ունեցեր եմ ո՛ եւ է առթիւ , ոչ միայն ծածկած լռած չեմ անոնց անուններն , ի՛նձ միայն չսեփականելու համար գտման պատիւը , այլ ընդ հակառակն , ամենայն երկիւղածութեամբ յիշած յիշատակած եմ ամէն անոնք որ ինէ առաջ խօսած են մի եւ նոյն խնդրոյ վրայ , անոնց ձգելով միշտ առաջնութեան պատիւը , որչափ ալ անկախաբար ես ինքս

* Աստ առ ի քաջալեր կը յիշեմ որ գերմանական լեզուին ես ծանօթ չլինելով՝ այս համեմատութիւնը կատարուեցաւ օժանդակութեամբ որդւոյս Միհրդատ խանի որ յիշեալ լեզուի, ինչպէս նաև հայ և պարսիկ և անգլիականին մէջ բաւական հմտացած լինելով և բանասիրականին ոչ անճաշակ , թէ՛ այս և թէ այլ պարագաներուն ինձ մեծապէս օգտակար եղաւ ։

ալ միեւնոյն հայեացքին հասած լինէի ։ Ա՛յս էր պարկեշտութեան պահանջը ։

Գալով իմ սեփական հայեացքներուն ճշտութեան կամ անճշտութեան՝ դա՛ մի առանձին խնդիր է եւ ինձ չվերաբերիր անշուշտ անոնց մասին դատաւոր կանգնիլ ։ Այսչափը միայն կրնամ , խղճի կատարեալ անդորրութեամբ , յայտարարել որ դժուարութեան՝ յոգնութեան՝ աշխատութեան , ըսեմ նաեւ , զոհողութեան առջեւ բնաւ չընկրկեցայ . ամէն բան ուձամբ եւ անընդմիջաբար եւ ինքս քննեցի ճշտեցի եւ ստուգեցի համբերատար ոգւով , այնչափ անշուշտ , որչափ իմ կարողութիւնս եւ ոյժերս կը ներէին ինձ ։ Այսու ամենայնիւ , յաւակնութիւն եւ ապահովութիւն չունիմ կարծելու թէ ամէն բան գտած եւ անթերի գրած եմ ։

Գիտեմ թէ ո՛ր է եւ որչափ մեծ է այն վտանգը որ այս կարգի աշխատութեանց մէջ ամէն քայլափոխին ընդ առաջ կ'ելլէ . — բանագողութիւնը — որմէ ամենէն լուրջ՝ ամենէն ծանր հեղինակներն իսկ , շատ անգամ , չեն կրցած խուսափիլ ։ Հրահրուած երեւակայութիւնը , յօժար տրամադրութիւնը , խաբուսիկ երեւոյթները կ'առնեն կը տանին անզգալապէս մարդը այն սահմաններուն ուր չէր պարտ կոխել ։ Պատրանքը՝ հրապոյրը ո՛րչափ մեծ եւ անդիմադրելի է շատ անգամ որ ամենափոքր անզգուշութիւնը կը բաւէ տանել սայթաքելու ։

Թէեւ յամենայն զօրութեամբ ջանացած եմ չիյնալու այդ վտանգին մէջ , սակայն չեմ գիտեր ինչ աստիճան կրցած եմ յաջողիլ . ինչ որ քննադատութիւնը պիտի ցուցնէ ։

Հեղինակաց մէջ սովորութիւն է , երբեմն , յառաջ գործոյն կամ ի վերջոյ , իրենց ընթերցողաց ներողամտութեանը կը դիմեն յակամայից սպրդած թերութեանց կամ սխալանաց համար , առաջքն առնելով գործոյն ընծայած դժուարութիւնները , անաջող՝ աննպաստ պարագաները , այլովքն հանդերձ ։

Եթէ ներողամտութիւն հայցելու պարագաներ թուել հարկ լինէր եւ առաջի դնէի այն ամէն կարգի դժուարութիւնները որոց դէմ մաքառիլ հարկադրուած եմ այս գոյգն արդիւնքը ձեռք բերելու համար , վստահ եմ որ ներողամտութիւնն արդէն շնորհուած էր ինձ ամէն բարեմիտ եւ փորձառու ընթերցողին կողմանէ ։ Ա՛յն պարագայն լոկ թէ սա առաջին փորձն է թարգմանութեան որ կը կատարուի ի պանյալէ ի հայ , բաւ էր արդէն իւր բազում թերութեանց աչք գոցել տալու ։

Սակայն գործին բնութիւնն ա՛յնպէս է որ ես չեմ կրնար եւ չպարտիմ ներողամտութիւն խնդրել . ընդ հակառակը՝ քննադատութիւն պէտք է ես

հայցեմ եւ հրաւիրեմ։ Քննադատութեան միայն պէտք չափի գործը եւ ոչ անձը գովելով։

Եւ քննադատութեամբ կ'իմանամ ես այն բանաւոր (raisonné), հիմնաւոր եւ լուրջ դիտողութիւնները որ ուսեալ եւ ողջամիտ անձանց կողմանէ կ'ուղղուին բարեկրթութեամբ եւ պատշաճից սահմանին մէջ։

Կեղծ համեստութիւնները եւ գձուձ ամբարտաւանութիւնները, երկուքն չեմ ախորժած ես. ուստի կատարեալ անկեղծութեամբ կը յայտարարեմ որ յիշեալ պայմաններով արտայայտուած կարծիքները, որչափ ալ խիստ լինին, ամենայն սիրով եւ շնորհակալութեամբ պիտի ընդունիմ եւ պիտի վիճեմ։ Եթէ ակար եւ անզօր են, պիտի ջանամ ցրել. իսկ եթէ զօրաւոր եւ համոզկեր, պիտի ուղղեմ սրբագրեմ իմ հայեացքներս։

Ամենամեծ ուրախութիւն պիտի լինի ինձ համար տեսնել որ հայ բանասիրութիւնը կը հետաքրքրուի այս էական եւ, ինձ համար, ամենակարեւոր հարցով։ Գործը եւ ոչ գործողը։ Այս է եւ այս պէտք է մնայ միշտ գերագոյն նպատակը։



# ԿԱՐՆԱՄԱԿ*

## ԱՐՏԱՇԻՐԻ ԲԱԲԱԿԱՆԻ[1]

Յանուն եւ զօրութեամբ եւ օգնականութեամբ Դատարարին[2] Որմզդի[3] . Լուսոյ եւ պայծառութեան**:

Առողջութիւն եւ երկայնակեցութի՛ւն համայն բարի արանց եւ բարեգործաց:

Եւ յանուն մանաւանդ Անոր*** որոյ վրայ այս կը գրուի****:

---

* [illegible] = کارنامه (Պատմութիւն անցից):

** Որպէս թէ ասէր
«Որ լոյսն է և աղբիւր լուսոյ»:

*** Արտաշիր կ'ակնարկուի:

**** Մեր այս յառաջաբանը մի քիչ կը տարբերի Nöldekeինէն որ ունի պարզապէս. «Յանուն Ստեղծողին Որմզդի, լուսաւորին և վեհափառին:»

## Ա.

Բաբակ երազին մէջ Սասանը կը տեսնէ եւ իր դուստրը անոր կուտայ ։

1. Արտաշիրի[4] Բաբականի պատմութեանը մէջ այսպէս[5] գրուած է որ․ յետ մահուան Աղեքսանդրի Հռոմայ[6], Արեաց[7] աշխարհին վրայ երկու հարիւր քառասուն տանուտեարք[8] կ'իշխէին ։

2. Սպահան եւ Փարս եւ շրջակայք[9] Արտաւան Սարդարին ձեռաց տակն էին ։

3. Բաբակ Փարսի մարզպան եւ շահապետն[10] էր եւ Արտաւանի գումարտակէն[11] էր ։

4. Արտաւան Ստահր[12] կը նստէր ։

5. Եւ Բաբակը իր անունը կրող զաւակ չունէր ։

6. Եւ Սասան Բաբակի հովիւն էր եւ միշտ ոչխարաց հետ կը համալարէր[13] եւ Դարեհեան Դարեհի տոհմէն[14] էր ․ եւ Աղեքսանդրի դժպետութեան[15] ատենը փախած եւ թաքցած էր եւ Քուրդ խաշնարածներու հետ կը կենցաղավարէր ։

7. Բաբակ չէր գիտեր որ Սասան՝ Դարեհեան Դարեհի տոհմէն սերած[16] է ։

8. Բաբակ գիշեր մը երազին մէջ այսպէս տեսաւ որ արեգակը Սասանին գլխուն վերեւէն կը ծագէր եւ համակ աշխարհը կը լուսաւորէր[17] ։

9. Ուրիշ գիշեր մը այնպէս տեսաւ որ Սասան զարդարուն սպիտակ փղի մը վրայ նստած էր եւ բոլոր այն կողմերու մարդիկը Սասանին շուրջը ժողվուած, անոր երկրպագութիւն կ'ընէին եւ կը փառաբանէին զայն ։

10. Մի երրորդ գիշեր այնպէս* տեսաւ որ Ատր - Հրուքա, (Ատր)-Քուշասպ եւ Բուրզին - Միհր[18] Սասանայ տանը մէջ կը ցոլային եւ բոլոր աշխարհը կը լուսաւորէին ։

11. Բաբակ երբոր ասոնք այսպէս** տեսաւ, զարմացաւ մնաց ։

---

* Բնագիրը «համգունակ այգուն» կը դնէ, իբր հոմանիշ եւ համազօր expression մը։ Եւ որովհետեւ «գոյն»ին վրայ յեցած կը տեսնենք առաջին եզրը, անտրամաբանական չէ մտածելը թէ նոյն այն եզրն է նաեւ երկրորդին հաստատուն մասը կազմողը, տառի մը (գ) բացակայութեամբ։ Այս երկու բառերուն այս մտօք և այս բարդութեամբ գործածութիւնը նոր ապացոյց մ'ալ կը յաւելու մեր նախընթաց տեսութեան «այգուն»ի առթիւ։

** Բն. «այնինակ», որ կը յիշեցնէ մեր «այսանակ»ը կամ նոյն կազմութեամբ

**12**. Եւ մոգերը եւ երազահանները տաճարը բերել տալով, այն երեք գիշերուան երազները, ինչպէս որ տեսած էր, անոնց պատմեց։

**13**. Երազագէտներն ըսին թէ — «Այն որու վրայ այս երազները տեսար, կամ ինքը կամ թէ անոր սերունդէն մէկը աշխարհի թագաւորութեան կը հասնի. քանզի արեգակ եւ զարդարուն սպիտակ փիղ՝ զօրութեան եւ կարողութեան եւ յաղթութեան նշանակ են. եւ Ատր-Հըրուբա՝ մեծ մարդկանց եւ մոգուց գիտնականութեան*, եւ Ատր-Կուշասպ՝ սպառազինութեան[19] եւ առաջնորդութեան եւ Ադր-Բուրզին-Միհր՝ գիւղատնտեսութեան եւ երկրագործութեան նշանակ են։ Եւ այս ամէնը կա՛մ այն մարդուն եւ կա՛մ նորա սերնդէն մէկուն թագաւորութեան հասնիլը կը ցուցանեն։

**14**. Երբ Բաբակ այս խօսքը իմացաւ, մարդ ղրկեց եւ Սասանը տաճարը կանչել տուաւ եւ հարցուց թէ «Դու ո՛ր տոհմէ եւ գերդաստանէ[20] ես. քո հայրդ եւ նախնեացդ մէջ մէկը եղա՞ծ է թագաւոր կամ սարդար»։

**15**. Սասան Բաբակէն ապահովութիւն խնդրեց որ — «ինծ չարիք եւ վնաս մի՛ հասցներ[21]»։

**16**. Բաբակ խօսք տուաւ եւ Սասան իւր գաղտնիքը, ինչպէս որ էր, Բաբակին մերկացաւ։

**17**. Բաբակ ուրախացաւ** եւ հրամայեց որ վրան գլուխը մաքրեն[22].

**18**. Եւ ձեռք մը իշխանավայել պատմուճան[23] բերին եւ տուին Սասանին որ հագնի[24]. եւ նա այնպէս ըրաւ։ Եւ Բաբակ Սասանին հրամայեց որ քանի մ'օր լաւ եւ արժանավայել խորտիկներ ուտէ, եւ ապա իւր դուստրը անոր կնութեան տուաւ։

Բ.

Ծնունդ Արտաշրի Բաբականի եւ դէպք որ Նորա եւ Արտաւանայ մէջ, որսի ժամանակ, տեղի ունեցաւ։

**1**. Եւ ինչպէս նախասահմանուած էր, նոյնժամային աղջիկը յղի մընաց եւ Արտաշիր անկէ ծնաւ։

---

«այնանակ» մը։ Մեր արեւմտեայ աշխարհօրէնի մէջ գործածուած «անանկ», «սանկ»ը չեմ կարծեր թէ ուրիշ աղբիւր ունեցած լինին։

* կրօնական ուսմունք և գիտութիւն։

** Բն. «շատ եղաւ» այսինքն գոհ (satisfait)։

2 · Բաբակ տեսնելով Արտաշիրին գիտակցութիւնը և կայտառութիւնը՝ խելամուտ եղաւ որ այն երազը որ ես տեսայ* ճիշդ եղաւ ։

3 · Որդեգրեց Արտաշիրը և պատուով կը պահէր զայն և կը մեծցնէր և երբ հրահանգի** տարիքին հասաւ, գրութեան և ձիավարութեան25 և այլ հրահանգաց մէջ այնպէս քաջավարժ հանդիսացաւ որ Փարսի կողմերը անուն հանեց ։

4 · Երբ Արտաշիր տասնուհինգ տարեկան եղաւ, Արտաւանին ականջը հասաւ որ Բաբակը որդի մ'ունի որ ասպավորական մարզից մէջ քաջ և կատարեալ է ։

5 · Նա (Արտաւան) նամակ26 մը գրեց Բաբակին թէ — «Մենք այսպէս լսեցինք որ դու որդի մ'ունիս կարի արժանաւոր և ձիարշաւի հրահանգաց մէջ յոյժ յաջողակ ·

6 · Իմ կամքս է*** որ զայն մեր Դուռն ուղարկես27, մեր մօտը, որպէս զի մեր որդւոց**** և վասպուրականաց28 հետ լինի և վարձատրել29 հրամայենք նորա քաջավարժութիւնն ի հրահանգս »։

7 · Բաբակ, քանզի Արտաւան մեծ կամ-կարթար էր, նորանից զատ–թարուել և հրամանին սպուժել31 չէր ուժան ։

8 · Իսկոյն Արտաշիրը յարդարեց32 (պատրաստեց) և տասն ծառայի հետ, բազում ընտիր և արժանաւոր ընծաներով Արտաւանին մօտ ուղարկեց ։

9 · Արտաւան զոհ մնաց տեսնելով Արտաշիրը և մեծարեց զայն և հրամայեց որ ամէն օր իւր որդւոց և վասպուրականաց***** հետ որսի† և ճոկանի33 երթայ ։

10 · Եւ Արտաշիր համգունակ (այնպէս) ըրաւ ։ Օգնականութեամբն Աստուծոյ, ճոկանի և ձիավարութեան, ճատրակի և նարտի34 և այլ հրահանգաց մէջ ամենէն գերազանց35 գտնուեցաւ ։

---

* Տես ծան. 21 ։

** Բն. [illegible] (փրահանգ-հրահանկ) նպ. فرهنك ։

*** [illegible] (կա՛մակ)=کامه=կամք ։

**** Այս ընթերցուածը Nöldekeինէն կը տարբերի ։ Նա կը դնէ. «մեր ասպետաց (վասպուրականաց) որդւոց հետ» · մինչ մեր թէ՛ բնագիրը և թէ՛ թարգմանութիւնը բացարձակապէս կ'որոշեն «մեր որդւոց և վասպուրականաց» ։ Մեր ընթերցուածը ինձ ուղղագոյն կ'երևի, քանզի մի քիչ ստորև պիտի տեսնուի որ Nöldekeի օրինակն ալ կը ձայնակցի մերինին ։

***** Nöldekeին օրինակը այս տեղ կը համաձայնի մերինին ։

† Բն. նախճիր ։

Օր մը Արտաւան Արտաշիրի եւ հեծելազունդին հետ նախճիր (որս) գնացած էր ։

**12**․ Դաշտին երեսէն ցիռ (վայրի էշ = گور) մ'անցաւ եւ Արտաշիր եւ Արտաւանայ մեծ որդին նոյն ցռին ետեւէն պնդեցան ։ Արտաշիր հասաւ անոր եւ նետ մը ա՛յնպէս անոր դիպեցուց որ նետը մինչեւ փետուրի մօտ խրեցաւ անոր փորին մէջ եւ միւս կողմ անցաւ ծայրը ․ եւ ցիռը տեղն ի տեղը մեռաւ ։

**13**․ Արտաւան եւ հեծեալք36 վրայ հասան եւ տեսնելով այսպիսի հարուած մը զարմացաւ եւ հարցուց թէ — « Ո՞վ զարկաւ » ։

— Արտաշիրն ըսաւ — « Ես » ։

**14**․ — Արտաւանայ որդին ըսաւ ․

— « Ոչ ․ այլ ես » ։

**15**․ Արտաշիր սրդողեցաւ եւ Արտաւանայ որդւոյն ըսաւ ․

— «(իմ) Հնարը (هنر) եւ քաջութիւնը ․ տմարդութեամբ*, անամօթութեամբ**, ստախօսութեամբ եւ անիրաւութեամբ ․ քեզ սեփականել կարելի չէ ․ ահա լաւ դաշտ եւ ցիռ այստեղ շատ ․ ես եւ դու ուրիշ մրցանքի ելլենք եւ (մեր) լաւութիւնը եւ վատութիւնը եւ ճարպկութիւնը*** հանդէս ածենք ։

**16**․ Արտաւան զժուարեցաւ 37 եւ այնուհետեւ թոյլ չտուաւ որ Արտաշիր ձի38 հեծնէ ։

**17**․ Կենդանեաց**** ախոռը խրկեց Արտաշիրը եւ հրամայեց որ — « Զգոյշ լե՛ր ․ գիշեր ցերեկ կենդանեաց քովէն չհեռանաս եւ նախճիր եւ ճօկան եւ այլ հանդիսավայրեր***** չերթաս » ։

**18**․ Արտաշիր հասկցաւ որ դժակնութենէն39 եւ վատակամութենէն40 կ'ըսէ ։

**19**․ Ինքն ալ փութանակի եղելութիւնը41, ինչպէս որ (անցեր էր), նամակաւ Բաբակին ծանոյց ։

---

* Nöldeke Tyrannei (բռնութիւն, ظلم) կը դնէ. մեր «տմարդակ» բառը ճիշտ բնագրինն է ։

** Բն. դուշ-շարմի — دش شرمی — դժամօթութիւն ։

*** Nöldeke իրաւամբ դիտել կուտայ թէ բառ մը կը պակսի այստեղ հակադրելու ճարպկութեան, ինչպէս վատութիւնը դէմ հանուեցաւ լաւութեան ։

**** ستور բառը որ կայ բնագրին մէջ՝ առ հասարակ չորքոտանի կը նշանակէ ․ մանաւանդ ձի եւ ջորի ։

***** Բն․ فرهنکستان ։

**20.** Բաբակ, երբոր նամակը տեսաւ՝ տխրեցաւ* ։

**21**․ Եւ Արտաշիրին պատասխան** գրեց որ — «Դու խոհեմութեամբ չվարուեցար. Բանի մը համար որ քեզ անկէ բնաւ վնաս*** մը չէր հաս-նէր, վզրկայ**** հետ ոգորելու ելար եւ անոր կոշտ կերպով խօսեցար, եւ այժմ քոյծ խնդրելը պայման անգար է42 ։

«Քանզի իմաստունք ըսած են թէ․ «Թշնամի թշնամիի չկրնար ընել ինչ որ անզգոյշ մարդ ինքն իրեն կ՚ընէ իր ձեռքով (արարքով)» ։

**23**․ «Նաեւ ըսած են թէ, —«Մի՛ գանգատիր այն մարդէն որ ան-կէ զատ քամակ (ապաւէն) չունիս ։

**24**․ «Եւ դու ինքդ գիտես որ Արտաւան իմ ալ քու ալ եւ երկրի վրայ դեռ ուրիշ շատերու ալ բացարձակ տէրն***** է (թէ՛) մարմնոց, (թէ՛) հոգւոց եւ (թէ) ընչից եւ գոյից ։

**25**․ «Արդ՝ իմ անդարձ† քեզ խրատս այս է․ մտերմութիւն ըրէ՛ (աչքը մտիր) եւ հնազանդ եղի՛ր եւ քու գիրքդ վտանգի43 մի՛ դը-ներ»†† ։

Գ․

Արտաւանայ հարճին ընտանութիւնն Արտաշրի հետ եւ նորա փախուստն ի Փարս ։

**1**․ Արտաւան գեղանի հարճ մ՚ունէր որ ուրիշներէն աւելի յարգի էր նմա եւ Արտաւանին ամէն տեսակ գործերը (նա) կը կատարէր††† ։

**2**․ Օր մը Արտաշիր ախոռատունը նստած նուագարան կ՚ածէր ,

---

* Բն. անդոհգին (اندوهگین) ։

** » պատասխան — նպ. پاسخ ։

*** » թէ՛ զէն եւ թէ զեան կը կարդացուի ։

**** » Nöldeke եղակի կը կարդայ․ բայց մեր օրինակին մէջ յայտնապէս յոգնակի է (վզուրկան) . Թէպէտեւ երկուքն ալ անպատշաճ չեն ։

***** Բն. կամկարթայ (مکارتر)

† » اندرز (խրատ) ։

†† » մի՛ «ապապար»եր (مسپار) ։

††† Այսինքն «և նա միայն պաշտէր զնա» (پرستش) ։

կ՚երթէր եւ կը զուարճանար․ աղջիկը գիտեց զայն եւ սիրտը կարեկ-ցաւ անոր համար այնուհետեւ։ Մանկութիւն՝ սէր եւ համաձայնութիւն պատուաստեցաւ անոնց մէջ. եւ ամէն գիշեր, մինչ տարաբախտն Ար-տաւան կը ննջէր, աղջիկը գաղտագողի Արտաշիրին մօտը կու գար եւ մին-չեւ բամ (լոյս) այն տեղ կը մնար․ յետոյ Արտաւանին քովը կը դառնար։

**4**․ Օր մը Արտաւան Դրան գէտերը եւ աստղաբաշխները առջեւը բերել տուաւ եւ հարցուց թէ — «Ինչ կը տեսնէք եւթներց* եւ երկո-տասանից** հանգամանքէն եւ աստեղաց դիրքէն եւ ընթացքէն։ Եւ քա-ղաքաց քաղաքաց տէրերու ժամանակի մասին եւ աշխարհի մարդոց եւ իմ իսկ եւ որդւոցս եւ մարդոցս համար ինչ կը գուշակէք44»։

**5**․ Ախտարհամարաց սարդարն (պետ) ի պատասխանի ըսաւ․ — «Երկոտասանք ինկած են (ի վայր խոնարհեալ)45, եւ Որմզդի աստղը դարձեալ բարձր է եւ Վահրամ եւ Անահիտ դէպի Եւթնարջին կոյս46*** եւ յԱռիւծ կը դիմեն եւ Որմզդի օգնութեան փութալ կը թուին։

**6**․ Մեկնութիւնն այսպէս կը ցուցնէ որ նոր տէր եւ թագաւոր մը պիտի երեւնայ եւ շատ տիրապետներ պիտի մեռցնէ եւ աշխարհ վերըս-տին մէկ միահեծան պետի մը ձեռք պիտի անցնի»։

**7**․ Անոնց մէջէն ուրիշ գլխաւոր մը յառաջ եկաւ ու ըսաւ․ «Այս-պէս կ՚երեւի որ ծառայ մարդ մը, եթէ, աս երեք օրուան մէջ, իւր տէ-րոջմէն ապստամբելով փախչի, վզրկութեան եւ իշխանութեան կը հաս-նի, եւ իր տիրոջը վրայ իշխան եւ յաղթական կը լինի»։

**8**․ Աղջիկը այս խօսքը, ինչպէս որ Արտաւանին ըսած էին, երբ գիշերը Արտաշիրին քովը եկաւ, անոր հաղորդեց։

**9**․ Արտաշիր այս լուրը իմացածին պէս, միտքը դրաւ փախչիլ անկէ․

**10**․ եւ աղջկան ըսաւ․ «Եթէ քո սիրտդ ուղիղ եւ անկեղծ է, ե՛կ, աս երեք օրը չանցուցած, քանի որ ախտարաց գլխաւորը իւր տիրոջմէն վտարանջողին մեծութիւն եւ թագաւորութիւն գուշակեց, փախչինք այս տեղաց եւ երթանք մինչեւ աշխարհի տիրենք։ Եւ եթէ Աստուած եւ Ար-եաց աշխարհին բախտը**** զօրութիւն լինին մեզ որ ազատինք եւ բարձր դիրքի մը հասնինք, այնպէս ընեմ որ աշխարհիս մէջ քենէ աւելի բա-րեբաստիկ մէկը չգտնուի»։

**11**․ Համաձայնեցաւ աղջիկը եւ ըսաւ․ — «Ազատէ՛ զիս եւ ինչ որ հրամայես՝ կը կատարեմ47»։

---

* Մեծ արջ։ — ** 12 համաստեղութիւնք։

*** Բն. «կուսա-ակ»։

**** Nöldekeին մէջ այս կտորը չկայ։

**12**. (Լուսաբացին) նոյն աղջիկը վերստին իր տեղը՝ Արտաւանին քովը դարձաւ եւ գիշերը, մինչդեռ Արտաւանը քնացած էր, նորա գանձարանէն հնդիկ սուր եւ ոսկի թամբ եւ կամար* մեծասար48, եւ թագ ոսկի եւ բաժակ ոսկի՝ լի ակամբք, եւ դրամ ու գինար49 բազում յոյժ եւ զրահ եւ շքեղ սապազէնք եւ այլ շատ բաներ վերցնելով Արտաշիրին բերաւ։

**13**. Արտաշիր, Արտաւանի նժոյգներէն, որը ութանասուն հրասանգ ճամբայ կտրող երկու ձի50 թամբեց. մէկուն վրայ ինք նստաւ եւ միւսոյն վրայ աղջիկը հեծցուց եւ Փարսիստանի ճամբան բռնեցին եւ շտապաւ** կ'երթային։

**14**. Այսպէս կը պատմեն որ գիշերը գիւղի մը վրայ*** հասան։

**15**. Արտաշիրը վախցաւ որ մի՛ գուցէ, եթէ51 գիւղին մարդիկը տեսնեն՝ ճանաչեն զինքը եւ արգիլեն, գիւղը չմտաւ. այլ մի՛ այլ կողմ**** խոտորեցաւ.

**16**. Եւ այն տեղ երկու կին նստած տեսաւ. այն կիներն ձայն բարձին որ. — «Մի՛ վախնար, Մե՛ծդ***** Արտաշիր-Բաբականն, Սասանեանց եւ Դարեհ արքայի տոհմէն, քանզի ամէն չարիքէ ազատեցար եւ ոչ ոք կարող է քեզ բռնել. եւ քեզ սահմանուած է բազում տարիներ Արեաց աշխարհին վրայ թագաւորել։ Շտապէ՛ մինչեւ ծով, եւ երբոր ծովը աչքովդ տեսնես՝ մի՛ կենար. քանզի Զերահը որ աչքդ տեսաւ52, այլ եւս թշնամիէ վախ չունիս»։

**18**. Շատ ուրախացաւ Արտաշիր եւ շտապաւ մեկնեցաւ անկէ։

Դ.

Արտաւան կ'իմանայ Արտաշիրին փախուստը աղջկան հետ միասին՝ եւ անոնց ետեւէն կը պնդի։

**1**. Երբոր լոյսը բացուեցաւ, Արտաւան փնտռեց աղջիկը եւ աղջիկը տեղը չէր։

---

* Գօտի։

** Բն. [illegible] (հուշտապ) = شتاب։

*** » فراز։

**** Բն. «կուստ-ակ»։

***** Բն. کی (քէյ, կայ, կաւ). Nöldekeին մէկ կը պակսի։

**2-3**. Ախտադէտը եկաւ եւ Արտաւանին ըսաւ որ. — «Արտաշիր եւ ձեր երկու նժոյգները իրենց տեղը չկան»։ Արտաւան հասկցաւ որ «Իմ հարճս* Արտաշրի հետ փախած են». եւ երբ գանձատան զէնքն ալ իմացաւ՝ սիրտը կոտրեցաւ։

**4**. Աստղաճանաչից մեծը կանչել տուաւ ու ըսաւ. — «Շուտ ըրէ՛, տե՛ս այն մեղապարտը**, այն վատաշուէր լիրբին*** հետ ո՛ւր տեղ գնաց եւ ե՞րբ կարող ենք բռնել»։

**5**. Բուղէմպետը**** գործիքով զննութիւն մը ըրաւ53, ի պատասխանի Արտաւանին ըսաւ. — «Լուսինը***** Բէյլամէն† եւ Վահրամէն†† կը հեռանայ եւ Որմզդին††† եւ Տիրին†††† կը պատուաստի (մերձենայ), եւ կենդանակամարին մէջ տեղի ատեղաստան տանուտէրը Միհրին (Արեգական) շողին տակը կը մնէ54։

**6**. Այսպէս կը յուշակուի որ Արտաշիրը փախաւ եւ ի Փարս-կոյս դէմ դրած կ'երթայ. եւ եթէ մինչեւ երեք օր չբռնուի, ա՛լ այնուհետեւ բռնել կարելի չէ»։

**7**. Արտաւան խոկոյն չորս հազար զօրք սպառազինեց եւ ի Փարս. Արտաշրի ետեւէն պնդեցաւ. եւ երբ կէսօր եղաւ, տեղ մը հասան որ Փարսի ճամբան անկէ կ'անցնէր։

**8**. Հարցուց թէ — «Այն երկու ձիաւորները որ ասկէ գնացին ո՛ր ատեն անցան»։

**9**. Մարդիկը պատասխանեցին. — «Առաւօտուն կանուխ երբ արեգակը կը ճառագայթէր (տէգ (تیغ) արձակէր), նոքա իբր հողմ արտայ†††††55 անցան. անոնց ետեւէն ալ գիրուկ խոյ56 մը կը վազէր որ անկէ գեղեցիկը չէ կարելի երեւակայել (լինել)։ Գիտենք որ մինչեւ հիմա բազում փարսախ տեղ կտրած են, զանոնք բռնել կարելի չէ»։

---

* Տես ծան. 21։

** Բն. «վնասկար» = کناهکار։

*** » «Չահ-ի-ռոսպիկ» = աներես բոզ։

**** » «ախտարմար» = ախտար համար։

***** Nöldekeին օրինակը, երեւի, խոյ ունի որ այնպէս թարգմանած է։

† Երեւակ = زحل = Saturne։

†† Հրատ = مریخ = Mars։

††† Լուսնթագ = مشتری = Jupiter։

†††† Փայլածու = عطارد = Mercure։

††††† Բն. այդուն ջիգոն վադ-ի-արդավ = այդգոյն զիգոն հողմ արդայ (ի վերջնատառ հնչելի)։

**10**. Արտաւան չկեցաւ. յառաջ քշեց։

**11**. Երբ ուրիշ տեղ մը եկան, մարդոցմէ հարցուց թէ — «Այն երկու ձիաւորները ո՛ր պահուն անկէ անցան»։

**12**. Նոքա ըսին թէ. — «Կէսօրին սաստիկ հովմոյ նման սլացան եւ խոյ մ'ալ անոնց հետը* կ'երթար։

**13**. Արտաւան զարմանքի մէջ մնաց եւ ըսաւ. «Անդարէ՛** որ այն երկու ձիաւորները գիտենք. սակայն այն խո՞յն ինչ պիտի լինի» եւ հարցուց Դաստիարէն57։

**14**. Դաստիարն ըսաւ. — «Նա իշխանական փառքն58 է որ տակաւին անոր հասած չէ. ուրեմն պէտք է շտապենք որ փառքն անոր չը հասած թերեւս կարողանանք բռնել զայն»։

**15**. Արտաւան ձիաւորներու հետ փութով պնդութեամբ ճեպեց։

**16**. Միւս օրը եւթանասուն հրասանգ կտրած էին երբ կարաւանի գրոհ*** մը դէմերնին ելաւ։

**17**. Արտաւան անոնցմէ հարցուց թէ. — «Այն երկու ձիաւորները ձեզի ո՛ր տեղ հանդիպեցան»։

**18**. Նոքա պատասխանեցին թէ. «Ձեր եւ անոնց մէջ տեղը քսան եւ մէկ**** փարսանգ խորոց կայ եւ մեզ այնպէս երեւցաւ որ այն ձիաւորներէն միոյն հետը գէր եւ ճապուկ խոյ մըն ալ ձիուն վրայ էր նստած»։

**19**. Արտաւանը Դաստիարէն հարցուց թէ. — «Ի՞նչ կը նշանակէ այն խոյն որ անոր հետ ձիուն վրայ նստած է»։

**20**. Դաստիարն ըսաւ թէ. — «Ցուխտան կեցցիք59 Գայեանց60 փառքն Արտաշիրին հասած է. այլ եւս զայն բռնելու ճար չկայ. ի զուր ձեզ եւ այրուձիոյն նեղութիւն մի՛ տաք եւ ձիանը մի՛ յոգնեցնէք եւ մի՛ պակսեցնէք։ Արտաշիրին ճարը ուրիշ կողմէ փնտռեցէք»։

---

* Բն. համվար։

** Համարէ (انکار – انکاشتن)։

*** Բնագիրն ալ ճիշտ այդպէս։

**** Nöldeke 20 կը դնէ։

## Ե.

Արտաւան իւր որդին Փարս կ'ուղարկէ զօրքով. Արտաշիրը բռնելու։

1. Արտաւան երբոր ասոնք այսպէս լսեց, ետ դարձաւ եւ վերստին իւր տեղը գնաց։

2. Ետ այնորիկ գունդ մը կազմեց եւ իւր որդւոյն հետ Փարս ուղարկեց Արտաշիրը բռնելու։

3. Իսկ Արտաշիր ծովեզերքի ճամբան բռնեց։

4. Եւ մինչդեռ այսպէս կը յառաջանար, Փարսի մարզիկներէն մի քանի հոգի որ Արտաւանէն զզուած էին, իրենց բոլոր ունեցածները եւ իրենց անձերը Արտաշիրին առջեւը դրին եւ անոր հնազանդութիւն եւ ծառայութիւն յայտնեցին։

## Զ.

Բանակ 61 օգնութեան կը հասնի Արտաշիրին։ Սա կը պատերազմի Արտաւանի հետ եւ անոր դուստրը կնութեան կ'առնէ։

1. Երբ Ռամեշն-Արտաշիր ըսուած տեղը հասաւ Արտաշիր, Բանակ անուն մեծիմաստ մարդ մը որ Արտաւանի ձեռքէն փախչող սպաներէն մին 62 էր եւ այն տեղ բնակութիւն* հաստատած էր, եկաւ յարեցաւ Արտաշիրին, իւր վեց որդւոցը եւ բազում քաջ 63 սպայից հետ։

2. Արտաշիր կասկածած էր նորա մասին թէ՛ մի գուցէ Արտաւանի կողմէն զինք բռնելու ապադրուած** լինի։

3. Յետոյ Բանակ Արտաշիրին քովը եկաւ, երդում ըրաւ եւ ապագումանութիւն տուաւ որ — «Ծորչափ կենդանի եմ, ես եւ որդիքս՝ քո հրամանէն դուրս չենք ելլեր»։

4. Ուրախացաւ Արտաշիր եւ հրամայեց որ այն տեղ աւան մը շինուի որ Ռամեշն-Արտաշիր կոչուեցաւ (անդորրավայր)։

---

* Բն. բունակ = بنه ։

** » ավէապարէդ (سپارد)։

**5**. Բանակը այրուձիոյն հետ այն տեղ թողուց եւ ինք դէպի ծովեզր փութաց։

**6**. Երբոր ծովը աչքովը տեսաւ՝ Աստուծոյ փառք տուաւ եւ տեղն մը հիմնեց Արտաշխուռա64 անունով եւ տասը Վռամական կրակ65 ծովու մօտերն հրամայեց հաստատել եւ անկէ բանակին եւ այրուձիոյն մօտը եկաւ եւ զօրք գումարելով Աստ-Հրուբայ մեհեանը ուխտի գնաց եւ անկէ յաջողութիւն խնդրեց եւ Արտաւանի դէմ պատերազմի եկաւ.

**7**. Եւ Արտաւանի բոլոր զօրքը ջարդելով, գանձ՝ հարստութիւն՝ անասուն՝ կահ կարասի աւարեցին եւ ինք Ստահր նստաւ։

**8**. Եւ Կրմանէն66 եւ Մակրիստանէն67 եւ ի կողմանց կողմանց Փարսի* անհամար զօրք ժողվեց եւ պատերազմի խրկեց Արտաւանի վրայ։

**9**. Չորս ամիս ամէն օր մարտ եւ ջարդ կար անոնց։

**10-11**. Արտաւան ի կուսից կուսից, ինչպէս ի Հռայեւէ68, Դումբաւանդէ69, Դայլամանէ70 եւ Բադաշխարգարէ** զօրք եւ ձի*** ուղեց։ Եւ որովհետեւ Կայեանց փառքը Արտաշիրի հետն էր. Արտաշիր յաղթող եկաւ։

**12**. Արտաւանը սպաննեց եւ նորա բոլոր ինչքը եւ հարստութիւնը Արտաշիրին ձեռքը անցաւ եւ Արտաւանին դուստրը կին առաւ եւ դարձեալ Փարս եկաւ եւ Արտաշիր-Խորայ71 քաղաք շահաստանը շինեց։ Մօտերը մեծ վիր72 (գուբ, հոր, վիհ) մը փորել տուաւ եւ չորս առուի ջուր անկէ վիժեցուց եւ (Վռամական)**** կրակն այն տեղ հաստատեց (նստեցուց) եւ սապայր***** լեռ մը պեղել տալով մայրուի ջուր անկէ յորդեցուց եւ բազում գիւղեր եւ դաստակերտներ† շինեց եւ շատ Վռամական մեհեաններ հրամայեց անդ հիմնել։

---

* Այժմու Ֆարսիստան։

** پدشوارکر զոր Մազանդարան կը կարծէ Nöldeke։

*** Բն. «ախուռ» կը դնէ։

**** Բնագրին մէջ կը պակսի այս բառը, ինչպէս նաեւ Nöldekeի օրինակին մէջ, բայց տեղէն եւ նման օրինակներէն յայտնի է որ Վռամականն է։

***** Բն. «սապայր» = վիթխարի, հաստ, յաղթ, ամուր։

† Բն. ידמנ (ետմոն) սեմական բառ է զոր դաստակերտ ընթեռնուլ կ'առաջարկէ Nöldeke, دس (ձեռք)ը «դաստ»ին փոխանակելով անշուշտ։

## Է.

### Արտաշիրին Կուրդուաց73 հետ պատերազմելը եւ նեղը մտնելը ։

**1**. * Ետ այնորիկ բազում զօրս Զաւուլիստանէն74** ժողովելով Կուրդուաց Մադիկ75 թագաւորին դէմ պատերազմի ելաւ. բազում ճակատամարտ եւ արիւնհեղութիւն եղաւ եւ Արտաշիրի զօրքը պարտուեցաւ ։

**2**. Արտաշիր իւր զօրքէն նիազ*** ինկաւ եւ գիշերով անապատ տեղ մը հասաւ ուր բնաւ ջուր եւ խորտիկ չկար ։ Ինք իւր ընկերներէն եւ ձիանէն զատուած, անօթի ծարաւ մնաց76 · յանկարծ հեռուէն77 հովուական կրակ մը նշմարեց ։

**3**. Այն տեղ վազեց Արտաշիր · ծերուկ մը տեսաւ հոն որ իւր ոչխարաց հետ լեռը դաշտը 78 կ'ապրէր ։

**4**. Արտաշիր այն գիշեր այն տեղ մնաց եւ հետեւեալ օրը անկէ ճամբայ հարցուց ։

**5**. Նա ասաց որ — «Անկէց երեք փարսախ ( հեռուն ) գիւղ մը կայ շատ ապատ ( շէն ) եւ բազմամարդ եւ շատ ուտելիք կայ ( հոն )79 ։

**6**. Արտաշիր այն գիւղը փութաց · մարդ ուղարկեց եւ իւր համայն ասպատուորները**** իր քովը կանչեց ։

**7**. Եւ Մատեկանի զօրքերը այնպէս կարծեցին թէ — Մենք Արտաշիրէն աներկիւղ եղանք ,(քանզի) նա յուսահատ, նորէն Փարս դարձած է ։

## Ը.

### Գիշերայն կը յարձակի Արտաշիր Կուրդուաց վրայ եւ ջարդ կուտայ անոնց ։

**1**. Արտաշիր չորս հազար մարդ սպառազինեց եւ գիշերայն յարձակեցաւ անոնց վրայ եւ քրդերէն հազար մարդ ջարդեց եւ միւս յոդ-

* Մեր փարսի Դաստուրը կը ծանօթագրէ որ ասկէ ետքի մի քանի նամակներուն մէջ ինչ ինչ յաւելուածներ կան զորս գրքին վերջը ձգեցինք ملحقه (կցորդ) վերնագրի տակ ։

** Nöldekeի մէջ չկայ ։

*** Բն. نیازان بود = մեկնած բաժանուած էր (égaré) ։

**** » «սպարաները համայն» ։

Նամնիրը գերի վարեց եւ Կորդուաց Թագաւորին եւ որդիներին եւ եղբայրներին եւ արքայազուններին բազում գանձ եւ հարստութիւն առնելով Փարս ուղարկեց։

## Թ.

### Արտաշրի ռազմը Հեփթանբուխտի80 հետ եւ յաղթուիլը։

**1**. Ճանապարհին Որդունի81 ՀեԹանբուխտի զօրքը յարձակում գործեցին եւ համայն գանձ՝ հարստութիւն եւ կարասի Արտաշրի հեծելազնդին ձեռքէն Թափելով Գուլալեանց82 ամրոցը տարին որ Գուլալին դաստակերտն էր, ուր եւ Որդը կը գտնուէր։

**2**. Արտաշիր այն մաքի վրայ էր որ Արմենիստան եւ Ատրպատական անցնիմ. քանզի Շահրզուրք83 Եզդանկերտը բազում սպահագունդի հետ միասին իրեն հնազանդութիւն յայտներ էին։

**3**. Բայց երբոր Արտաշիր՝ ՀեԹանբուխտի որդւոց իւր զօրքին ըրած ստամբակութիւնը (ظلم) եւ վնասակարութիւնը84 լսեց, որոշեց, նախ Փարսի գործերը կարգադրել, Թշնամիներէ անկասկած լինել եւ ապա ուրիշ անդերով զբաղել։

**4-5**. Այժմ այս Գուլալեանց անաստուածը որ ա՛յնչափ գեր* եւ ստահակ եղած է, պէտք է անոր վրայ խրկել այն հինգ հազար զօրքը որ դէպ ի աջ, ի կողմս կողմս**, Սինդի եւ Մակուրանայ կողմերը եւ ծովեզերք ուղարկած էր։ Արտաշիր այն կուսերէն սպահագունդ նորէն Արտաշիր-Խորայ ուղարկեց։

**6**. ՀեԹանբուխտն ալ իր համայն զօրքը նորէն Դուռը կանչեց***։

**7**. Արտաշիր իւր քաջավարժ զօրքը, սպահապետաց առաջնորդութեամբ, Որդին վրայ պատերազմի խրկեց։

**8**. Որդին պահապանները իրենց բոլոր գանձը՝ հարստութիւնը՝ Թանկագին իրերը Գուլալի ամրոցին ետեւը Թաք դնելով իրենք լեռները եւ առապար տեղերը դարանեցան։

---

* Բն. جير = զօրաւոր, գեր ի վերոյ։

** Այսինքն՝ ի կողմանս կողմանս։

*** Այս բոլոր տունը անորոշ է եւ Nöldeke ալ մի ուրիշ կերպ կ'իմանայ։ Ոչ ան եւ ոչ ես հաստատութիւն մ'ունինք։

**9**. Արտաշրի մարդիկը, անզիտաբար, Գողթայ ամրոցին բունը (պարիսպներուն տակը) եկան եւ ամրոցը պաշարեցին։

**10**. Եւ երբոր գիշեր եղաւ, Որդունիք յանկարծ յարձակեցան անոնց վրայ եւ Արտաշրի զօրաց մեծ մասը ջարդեցին եւ ձի եւ ապազէն* եւ կահ եւ կազմած եւ գանձ եւ հարստութիւն աւար առնելով, զանոնք գլխիկոր ու մերկ նորէն Արտաշրին քովը դարձուցին։

**11**. Արտաշիր երբոր աս այսպէս տեսաւ, կորսնցեր խոցեցաւ եւ ի քաղաքաց քաղաքաց եւ ի տեղեաց տեղեաց** զօրք հաւաքելով, բազում սպայիւք (سپاه) Որդունեաց դէմ պատերազմի եկաւ. եւ երբոր Գողթայ ամրոցը եկաւ, Որդունիք համախմբեալ նստած էին ամրոցին մէջ։

**12**. Արտաշիր ամրոցը պաշարեց։

**13**. Որդունի Ներթանուրուխտը եւթ որդի ունէր, Իւրաքանչիւրը հազարական մարդով այլ եւ այլ քաղաքներ զումարտակած (ուղարկած) էր։

**15**. Այն պահուն, այն տղան որ Արտաքիա էր, բազում Տաճիկ*** եւ Միջնիկ**** զօրաց հետ ձիով եկաւ եւ Արտաշրի հետ ճակատեցաւ. եւ այն զօրքը որ ամրոցին մէջն էր՝ միահաղոյն դուրս թափեցաւ եւ Արտաշրի մարդոց հետ ոտք ի բռին մարտնչել եւ չահատակել սկսաւ եւ երկու կողմէն բազում արիւն հոսեց։

**16**. Որդունեաց զօրքը որ դուրս եկաւ, անցքերը այնպէս բռնեց որ Արտաշրի զօրքէն ոչ ոք կարողացաւ դուրս ելլել եւ իր անձին եւ անասնոց կեր հայթայթել. երկու համարէն***** ալ համանգամայն սկսան նիազել (նուազել) եւ անճրկել (آچارکی)։

---

* Թն. Սուսխա-զէյն (ձիազէն)։

** « Մին շաղուր շաղուր վէ ջինակ ջինակ ( از شهر شهر و جای جای )։

*** Պարսիկներ Արաբացիները Տաճիկ կամ Թաջիկ կը կոչեն եւ հեռի չէ որ تازی յառաջեկաւ ձայնն ալ սորա մի աղաւաղութիւնը լինի։

**** Միջինիկան=Եգիպտացիք։

***** Թն. «երկու համար» = deux classes = Թէ՛ մարդ եւ թէ անասուն։

## Ժ.

### Միհրակ - Անուշազատին մեծ - դժուրիւնը* հանդէպ Արտաշրի։

1. Միհրակ-Անուշազատն** ալ Փարսէն լսելով Արտաշրին՝ Որդունեաց վրայ յարձակիլ եւ չկրնալ յաղթելը. քաջամարտիկ գունդ մը յարդարելով Արտաշրին վրայ վազեց եւ համայն կառ եւ կազմած, գանձ եւ հարստութիւն աւար տարաւ։

2. ... Երբ Արտաշիր Միհրակայ եւ այլ Փարսիստանեայց Միհր-դրժութիւնն այսպէս տեսաւ, նոյն ժամայն միտքը դրաւ որ Որդունեաց գործը փութով վերջացնելու եւ յետոյ Միհրակին հետ չափուիլ նայելու է։

3. Վերստին համայն զօրքը դուռը կանչեց եւ սպարապետաց հետ խորհրդակցելով թէ՛ իր եւ թէ՛ զօրաց փրկութեան ճարը փնտռեց եւ յետ այնորիկ ճաշի նստաւ։

4. Ցանկարծ ամրոցէն փայտեայ*** նետ մը թռաւ գաց եւ խանին (մեծ ափսէ) վրայ դրուած գառան**** փորին մէջ մինչեւ փետուրը խրեցաւ։

5. Նետին վրայ գրուած էր որ. «Այս նետը Պերճաւետին85 Որդունեաց քաջավարժ մարդիկն արձակեցին. նետաձիգը պատշաճ չտեսաւ որ ձեզի պէս քաջ մարդ մը զարնուի, ինչպէս զարկաւ նաեւ այդ գառնուկը»։

## ԺԱ.

### Արտաշրին՝ Որդունեաց դէպքը իմանալ եւ Որդին ճարը մտածելը։

1. Երբ գործերն այսպէս տեսաւ Արտաշիր, զօրքը անկէ ետ քաշեց եւ մեկնեցաւ.

2. Եւ Որդի զօրքը Արտաշրին ետեւէն շտապեց եւ այնպիսի թանկ

---

* Ուխտազանցութիւն։

** Բն. «Անուշակ-զատան», իբր Անուշածին կամ Անուշեան։

*** Nöld. ի մէջ կը պակսի։

**** Nöld. աս ալ bélier կը թարգմանէ, մինչդեռ աւելի յարմար է «գառ» դնել, քանի որ սովորաբար գառ կ'ուտուի եւ גרי (վարակ)ը տարակոյս չձգեր որ բառը օյ կարդալ եւ իմանալու է, քանի որ այժմու լեզուին մէջ ալ օյ կ'ըսուի գառը։

(նեղ) տեղ մը ձգեց զայն որ անցնիլ հնար չէր. Արտաշիր ինք միայնակ ծովեզերքը հասաւ։

**3**. Այնպէս կը պատմեն որ Գայիանց փառքը (Ոգին) որ հետոն[86] ցած էր՝ Արտաշիրին առջեւը անցաւ եւ յուշիկ յուշիկ կը քալէր. մինչեւ որ Արտաշիր այն գմնդակ[87] տեղէն եւ Թշնամեաց ձեռքէն ազատ*[88] դուրս ելաւ եւ Մանակ[89] բռուած գիւղ մը հասաւ։

**4**. Գիշերը մտաւ տուն մը որ երկու եղբարց էր. մէկուն անունը Բուրզ եւ միւսոյն՝ Բուրզատր։

**5**. Եւ անոնց ըսաւ. «Ես Արտաշիրի այրուձիէն եմ. Որդի ճակատամարտէն մազապուր, ինձ այժմ ապաստանութիւն չնորհեցէք մինչեւ որ լուր մը հասնի Արտաշիրի զօրքէն թէ ո՛ւր իջած են»։

**6**. Եւ նոքա, յոյժ զգածեալ՝ ըսին. «Անիծեալ լինի այն երկնավնաս[90] մոլորեցուցիչը որ այս չարատուածը[91] գէր (جير) եւ պարգեւքս կացոյց եւ աշխարհաց համայն մարդիկը Որմզդի եւ ամշասպանդաց[92] զենէն ուծացուց եւ Արտաշիրի պէս մեծ իշխան մարդ մը եւ իւր զօրքը. բոլորը, այն նենգամէտ կռապաշտ թշնամեաց առջեւ նկուն ըրաւ։

**7**. Եւ նոքա Արտաշիրի ձին բռնեցին տունը տարին եւ ախոռը կապեցին եւ գարիով եւ յարդով եւ առուոյտով** կազդուրեցին եւ Արտաշիր պատրաստուած վայելուչ տեղ մը նստաւ։

**8** Կարի անդոհգին*** էր Արտաշիր եւ կ'անդամձէր**** չատ։

**9**. Նոքա սեղան յաչտեցին[93] եւ Արտաշիրէն խնդրեցին որ բաժ[94] ա՛ռ եւ կերակուր կե՛ր. մի՛ մտատանջ լինիր, քանզի Որմիզդ եւ ամշասպանդք այս մարդոց ճարը կը տեսնեն եւ այս պատուհարը (աղէտ)***** այսպէս չեն ձգեր։

**10**. «Ինչպէս որ Դահակայ[95] եւ Դուրանեան Ֆրասիաբայ[96] եւ Աղեքսանդրի Հոռոմայ ամբարչտութեանց պատճառաւ Աստուած անոնցմէ զո՛հ չմնալով, վերջապէս, իրենց փառքով եւ պերճանքով[97] զանոնք ա՛յնպէս անտես՝ անյայտ ըրաւ, ինչպէս աշխարհի յայտնի է[98]»։

---

* Անվնաս։

** կամ սորա նման մի այլ խոտ, զօ. այն որ «էսպրիս» կը կոչեն այժմ որ ձայնիւ մերձ ալ է բնագրին «ասպեստ»ին զոր Nöld. lucerne կը թարգմանէ։

*** Բն. էնտուհքին։

**** » էնաիշիտէն։

***** » בדירק «պատիարակ» կարդալով پتیاره կը հանէ Փ. Թ. ը։ Թէեւ այս ընթերցուածն և իմաստն ալ հակառակ չեն մեր բառին, սակայն աւելի ճիշտ պիտի լինէր մեզ հետ «պատահարք» կարդալ։ Ըստ մեզ մի եւ նոյն բառն է որ մին այս և մին այն ձեւի տակ պահուած է երկու լեզուաց մէջ։

**11**․ Արտաշիր այս խօսքին վրայ հրճուեցաւ եւ բաժ առնելով կե-րակուր կերաւ։

**12**․ Գինի չունէին․ չամիչ99 բերին աղանդեր՝ եւ դոհացան։

**13**․ Արտաշիր անոնց բարեպաշտութեանը՝ կրօնասիրութեանը՝ մը-տերմութեանը եւ պատրաստականութեանը վրայ անգուման* լինելով

**14**․ Իւր գաղտնիքը Բուրզի եւ Բուրզ-Ատրի տուաւ եւ ըսաւ․ «Ես ինքս եմ Արտաշիր․ այժմ նայեցէք որ այս Որդը եւ նորա մարդիկը սատ-կեցնելու ճարն ի՛նչ է»։

**15**․ Նոքա ․ ի պատասխանի ․ ըսին թէ․ «Մենք մեր մարմինը եւ հոգին եւ ինչք ու ստացուածքը եւ կանայքը եւ որդիքը ձեզ՝ Արեաց աշ-խարհի տիրելու համար ․ ապապարել (զոհել) եթէ հարկ է ․ պատրաստ ենք․

**16**․ «Սակայն մենք այնպէս կը կարծենք որ այս դրուժանին ճա-րը սապէս տեսնել լաւ է․ Դու․ օտարականի կերպարանք առնելով ամբո-ցին կը մտնես եւ ինք զինքդ նորա (Որդին) ծառայութեան եւ պաշ-տաման կը նուիրես․ եւ երկու** գենակոհ*** հաւատարիմ100 (ապաստաւոր) ալ հետդ առնելով ․ անոնց հետ Աստուծոյ եւ Հրեշտակապետաց յազ101 եւ ողբայիս102 (պաշտօն) կը կատարես եւ երբոր Որդին կերակուր ուտե-լու ժամանակը կուգայ ․ ա՛յնպէս կ՚ընես որ հալած արոյրը**** (որ հետ վերցուցած պէտք է լինիս) այն դրուժանին բերանը թափես մինչեւ սատկի։

«Այն երկնադրուժը յազելով եւ ողբայելով պէտք է սատկեցնել եւ այն դրուժան մեհեն աշտարակը հալած արոյրով պէտք է փճացնել»։

**17**․ Արտաշիր հաւանեցաւ այս խօսքին եւ բարի համարեց եւ Բուրզին եւ Բուրզ-Ատրին ըսաւ․ «Ես այս գործը մի միայն ձեր աջա-կցութեամբ կարող եմ ի գլուխ հանել»։

**18**․ Նոքա ըսին․ «Ամէն ինչ որ դուք կը հրամայէք ․ մենք ․ մար-մին եւ հոգի ․ պատրաստ ենք ապապարելու (զոհելու)»։

---

* Բն. ավիգուման։
** Nöld. մէկ միայն կ՚ըսէ։
*** Բն. «դենակաս» = դենգէտ = կրօնագէտ։
**** » րուայ։

ԺԲ.

## Արտաշիր կ'սպանէ Միհրակ-Անուշազադը. կ'սպանէ նաեւ Որդը եւ Նուշանբուխտը. խորհրդակցութեամբ Բուրզի եւ Բուրզ-Աէրի։

1. Արտաշիր անկէ նորէն Արտաշիր-Խորայ եկաւ եւ Միհրակ-Անուշազադի հետ պատերազմի բռնուեցաւ. զարկաւ Միհրակը եւ քաղաք եւ տեղ եւ գանձ եւ հարստութիւն ամէնը իրեն սեփականեց եւ մարդիկը Որդին հետ պատերազմելու խրկեց։ Բուրզ եւ Բուրզ-Աէրը իրեն կանչեց, անոնց հետ խորհուրդ ըրաւ եւ բազում դրամ ու դինար (ոսկի արծաթ) եւ պատմուճան տուաւ եւ ինք Խորասանցիի վերմակ 103 հագնելով (կերպարանքը մանելով) Բուրզի եւ Բուրզ-Աէրի ընկերակցութեամբ Գուլալ ամրոցին առջեւը եկաւ եւ ըսաւ. «Ես Խորասանցի մարդ եմ եւ այս պերճափառ Տիրոջմէն թոյլտուութիւն կը խնդրեմ որ իր Դուռը գամ եւ զինքը պաշտեմ»։

2. Եւ այն կատարիչները Արտաշիրը այն երկու մարդոց հետ ներս ընկալան եւ Որդի տան մէջ բնակութիւն տուին։

3. Արտաշիր երեք օր Որդին պաշտաման եւ սպասարկութեան պատրաստուեցաւ եւ այն դրամն ու դինարը եւ ճամուկը* պաշտօնէից ընծայ տուաւ. այնպէս ըրաւ (որ) ամէն անոնք որ ամրոցին մէջն էին՝ զարմանքի մէջ մնացին եւ զովաբանել սկսան։

4. Յետոյ Արտաշիրն ըսաւ թէ. «Այնպէս կը փափաքիմ որ երեք օր Որդին կերակուրը ես իմ ձեռքովս տամ»։

5. Պաշտօնեայք եւ գործակալք համաձայնեցան։

6. Արտաշիր մարդ խրկեց եւ չորս հարիւր հնարիմաց** եւ կենսատար 104 զինուոր այն անդուոյն պարոյրը 105 (չուրջը) սարաւանդ եւ դըժուարին վայրեր պարանակալ լինել հրամայեց։

7. Հրամայեց նաեւ որ — «Երկնից օրը***, երբ Որդ-ամրոցէն ծուխ տեսնէք, արիութիւն (مردانگی) եւ հնարաւանդութիւն**** ըրէք, ամրոցին բուռը դիմեցէք»։

---

* Բն. «ճամակ»=պրս. ճ ա մ է = զգեստ։

** » «հունարումէտ» = պրս. հ ո ւ ն ա ր մ է ն տ։

*** Ամսուան 27րդ օրն է որ Երկնից նուիրեալ է։

**** Բն. հ ո ւ ն ա ր ա վ ա ն դ ի հ։

**8**. Եւ ինքը նոյն օրը հալած արոյր հետն առաւ եւ Բուրզ եւ Բուրզ-Ատր յաղելով եւ ողբալելով Եզդանի պաշտօն կը կատարէին։

**9**. Երբ կերակուրի ժամանակն եկաւ, Որդը, ամէն օրուան պէս, սկսաւ գոռալ։

**10**. Արտաշիր այն (չ)աստուածպարիշաններէն եւ գործակալներէն (չատերը) ճաշի ժամանակ արբեցուցած եւ ապափոյթ (ափիոնով) ըրած էր եւ ինք իր օգնականներուն հետ Որդին քովը վազեց եւ այն կովու եւ ոչխարի արիւնը, ինչպէս որ ամէն օր կուտար, Որդին առջեւը տարաւ։

**11**. Երբոր Որդը բերանը բացաւ որ արիւնը խմէ, Արտաշիր հալած արոյրը բերնին մէջ թափեց։

**12**. Որդը, երբոր արոյրը փորը հասաւ, երկուքի չկտրեցաւ106 (բաժնուեցաւ), ա՛յնպիսի ահեղ գոռում մը փրցուց որ ամրոցին մարդիկը միահաղոյն թափեցան այն տեղ եւ ամրոցին մէջ աղշոպ107 մըն է ինկաւ։

**13**. Արտաշիր ասպար եւ սուր առաւ ձեռքը եւ մեծ ջարդ ու կոտոր տուաւ ամրոցին մէջ եւ հրամայեց որ կրակ վառեն որպէս զի ծուխը այն ասպատորայ երեւնայ։

**14**. Ծառաններն այնպէս ըրին. եւ լեռան վրայի այրուձին, երբ ամրոցէն ծուխը տեսան, թազելով*, ամրոցին դուռը, Արտաշիրին օգնելու եկան եւ ամրոցին վրայ ինկան եւ գոչեցին.

«Յաղթո՛ղ, յաղթո՛ղ լինի Արքայից արքայ, Արտաշիր Բաբականն.» եւ սուրն ի հանդէս եկաւ։

**15**. Եւ ամրոցին մարդիկներէն ոմանք շփոթութեան ժամանակ շտապաւ եւ փութով ամրոցէն փախան եւ այլք շնորհ խնդրեցին եւ հընազանդութիւն յայտնեցին։

**16**. Արտաշիր քանդել եւ աւերել** հրամայեց այն ամրոցն եւ Գուլալանը կերտեց այն տեղ եւ եւ թը Վահրամական կրակ այն տեղ հրամայեց հաստատել. եւ այն ամրոցին մէջ գտնուած գանձն ու հարստութիւնը եւ ոսկին եւ արծաթը, հազար ուղտու բեռ (بار) արքունի (գանձարանը) ուղարկեց։ Եւ Բուրզը եւ Բուրզ-Ատրը, իրենց ցուցուած կենապարութեան փոխարէն, մեծապէս վարձատրեց*** եւ այն տեղերուն սարդարութիւնը եւ իշխանութիւնը անոնց յանձնեց։

---

* Բն. تاختن որոյ 2րդ բայարմատն ունինք մենք تاز = «թազ», եւս է ի «վազ» անտա-րակոյս։

** Բն. «աւերան»։

*** » պատուհասեց (Տես ծան. 29)։

17. Արտաշիր այն Որդը սատկեցնելէն յետոյ վերստին արքունիք դարձաւ.

18. Եւ գործը Կրման կոչս Բաղդանոնց դէմ պատերազմի ուղարկեց* :

## ԺԳ.

### Թէ ի՛նչպէս էր Արտաշիր Արտաւանեայ դուստր հետ եւ թէ ինչպէս սա թոյն տուաւ անոր :

1. Արտաւանայ որդւոց երկուքը (Արտաշիր) իւր քովը պահած էր. երկուքը Քաբուլի Թագաւորին մօտ փախած էին : (2.) Անոնք իրենց քրոջը որ Արտաշրի կինն էր՝ նամ(ակ) գրեցին, պատգամ յղեցին որ. — «Ճիշդ է այն (ինչ որ) ձեզ կանանց համար կ՚ըսեն թէ** ... Դու քո անձիդ փրկութեանը*** համար, քո այն ազգականներդ որ այն Մեծապատկար թշնամին-Աստուծոյ՝ անպարտաբար մեռուց՝ մոռացար : (3.) Եւ դու բնաւ սէր եւ գութ (չունեցար) այն խեղճ եղբայրներուդ համար որ նեղութեամբ եւ դժնդակութեամբ, անօթի եւ դողով եւ ամօթով կապպաչաններու մօտ Քաբուլ քաղաքին մէջ կը տուայտին :

« Եւ (ոչ ալ) այն երկու վատբախտ եղբայրներուդ համար զոր այն մինչ-դրուժը (ուխտազանց) զնդանի բանտերուն (կապանք) մէջ կը պատուհասէ (չարչարէ), որք մահու համակ անձկանօք կը ցանկան : Դու այս ամէնը սրտէդ հանեցիր :

4. « Դու այն մինչ-դրուժին հետ համաձայնեցար եւ քեզ, անոնց եւ մեր մասին, բնաւ անհոգ եւ փոյթ չէ :

5. « Մա՛հ այն մարդուն որ, այս օրուանէ յետոյ, աշխարհիս մէջ, ո՛ եւ է կնոջան ապաստանման վստահութիւն ունենայ :

6. « Հիմա, եթէ դու դէպ ի մեզ սէր եւ գութ ունիս, մեր ճարը տե՛ս. եւ հօրդ եւ այն ազգականներուդ քէնը (վրէժ) մի՛ մոռնար. եւ այս ժահրը**** որ մենք մեր ապագումն (վստահելի) մարդուն հետ ահա քեզ խրկեցինք, ա՛ռ, եւ երբոր կրնաս, կերակուրէն առաջ այն մեծապատկա-

* Մեր օրինակն այստեղ խառն է. Nöldekeի հետեւեցանք :
** Թէ՛ մեր և թէ Nöldekeի օրինակին մէջ թերի է խօսքը :
*** Բն. «Դու քս մահ» կ՚ըսէ, այսինքն «Դու քո մահէդ վախնալուդ» :
**** » «զահար» = թոյն :

րին եւ միհր-դրուժին տո՛ւր որ նոյն ժամային սատկի · եւ այն երկու կապեալ եղբայրներդ արձակէ՛ եւ մենք ալ դարձեալ մեր քաղաքը եւ տուն ու տեղը գանք · եւ քո հօրին արքայութեան (արժանի լինի)· յաւիտենական108 անուն մը քեզ ըրած լինիս · եւ քո այս բարի գործով աշխարհի ուրիշ կանանցմէ աւելի անուանի եւ յարգելի լինիս109 » :

**7** · Արտաւանայ դուստրը երբ այս նամակին այսպէս տեսաւ այն թոյնին հետ որ բերին խրկած էին , անդաճեց որ համբուռնակ պէտք է ընել [եւ այն չորս վատաբախտ եղբայրները բանտէն ազատել]* :

**8** · Օր մը Արտաշիր նախճիրէն (որս) նօթի եւ ծարաւ տուն դարձաւ :

**9** · Ճաշ տաւ · (յայնժամ) աղջիկը այն ժահրը բարակ ալիւրի110 եւ շաքարի հետ խառնեց եւ Արտաշրին ձեռքը տուաւ (ըսելով) · «Հրամմէ՛, ուրիշ կերակուրներէն առաջ այս կասկէն111 կեր · ջերմի (շոգ) եւ յոգնութեան համար լաւ է » :

**10** · Առաւ Արտաշիր եւ կամեցաւ** ուտել :

**11** · Այդգոյն (ایدون) կը պատմեն որ ոսկեճաճանգն Ատր - Հրուրա , մինչ յաղթող , այդգոյն գիգոն*** կարմիր աքաղաղ****, թռաւ եւ թեւը զարկաւ այն պատառին եւ այն պատառալիր սկահը Արտաշրին ձեռքէն գետինն ինկաւ :

**12** · Արտաշիր եւ կինը112 աս որ այսպէս (այնանակ) տեսան , սոսկացին · եւ կատուն եւ շունը որ այն տանը մէջ կը գտնուէին , այն կերակուրը կերան եւ իսկոյն սատկեցան :

**13** · Արտաշիր հասկցաւ որ այն թոյն էր որ զիս մեռցնելու համար պատրաստած էին :

**14** · Նոյնժամայն մոգպետաց մոգպետը իւր մօտը կանչել տուաւ · հարցուց որ · «Հե՛ յրպետ , մէկը որ իր տիրոջը կենացը դաւաճանէ , ի՞նչ է կարծիքդ անոր աս գործին համար »:

**15** · (Մոգպետաց) մոգպետն ըսաւ · «Ցաւե՛րդ կեցջիք եւ կամակար

---

* փակագծեալ մասը Nöld.ի մէջ չկայ :

** բն. کامست :

*** » ایدون چکون :

**** Nöldeke «արծիւ» կը թարգմանէ · մեր օրինակին մէջ յայտնապէս خروس سرخ է :

լինիք. այն որ իւր ախրոջ կենաց կը պատճառէ՝ մահարժան է113. պէտք է սպաննել»։

**16**. Արտաշիր հրամայեց որ.—«Շուտով այն չարը114, ջատուկը115, դրուանդը116 եւ ապականեալ ծնունդը117 ապախորը118 տար եւ հրաման տուր սպաննեն։»

**17**. Մովպետան մովպետը կնոջ ձեռքէն բռնեց եւ դուրս եկան։

**18**. Կինն ըսաւ որ. «Ես այսօր եօթն ամիս է որ յղի եմ. Արտաշըրին ակա՛հ (իմաց) տուր. քանզի եթէ ես մահարժան եմ, այս պտուղը որ գերեզմանիս119 մէջն է, օրէ՞ն է (զայն ալ) մահարժան համարել»։

**19**. Մովպետան մովպետը երբ այս խօսքը իմացաւ, վերստին Արտաշըրին քովը դարձաւ ու ըսաւ. «Կենդանի՛ լերո՛, ք. այդ կինը յղի է. գոնէ մինչեւ որ ծնանի, չէ արժան սպաննել. քանզի եթէ ինք արժանի մահու է, այն երեխան որ ձեր տոհմէն (սերմ) անոր արգանդին մէջն է, զայն ալ մահարժան դատել եւ սպաննել չէ արժան։

**20**. Արտաշիր սաստիկ բարկացած էր, ըսաւ. «Բնաւ վայրկեան մի՛ կենար, սպաննէ՛»։

**21**. Մոգպետաց մոգպետը տեսաւ որ Արտաշիր չափազանց զայրացած է, բայց յետոյ պիտի զղջայ.

**22**. այն կինը չմեռուց, (այլ) իւր տունը տարաւ եւ թաքցուց.

**23**. եւ իւր կնոջն ըսաւ թէ. «Այս կինը պատուով պահէ՛ եւ մարդու բան մի՛ ըսեր»։

ԺԴ.

Շահպուհրի (Շապուհ) ծնունդն Արտաւանի դստեր, եւ եւթ տարի յետոյ Արտաշըրին ակահ լինել եւ զայն ճանաչելը։

**1**. Երբոր ծննդեան ժամանակը հասաւ, նա (կինը) շատ կայտառ երեխայ մը ծնաւ։

**2**. Նորա անունը Շապուհար դրաւ եւ համակ մեծցուց զայն մինչեւ որ եւթ տարեկան հասակին եկաւ։

**3** Արտաշիր օր մը նախճիր գնաց եւ ձին վայրի մատակ էշի մի ետեւէն քշեց. արուն յայտնուեցաւ Արտաշըրին նետին դէմը կեցաւ եւ այն մատակը ազատեց եւ իր անձը մահու ենթարկեց։

**4**. Արտաշիր այն ցիռը ձգեց եւ ձին ձագուկին վրայ քշեց։

**5**. Մատակ ցիռը երբ տեսաւ որ ձիաւորը ձին ձագուկին վրայ ուղ-

ղեց. (իսկոյն վազեց) եկաւ ձագուկն ագռաւից. ինք ալ ինչ մահու (վտանգին) ենթարկելով.

6. Արտաշիր երբոր զայս այնպիսի տեսաւ՝ սիրտը շարժեցաւ եւ ձին ետ դարձուց ու անզամեց* թէ. «Վա՛յ մարդոց որ այս անխելք չորքոտանիք իրենց անգիտութեամբ եւ անբանութեամբ ո՛րչափ սէր եւ խանդաղատանք ունին իրարու որ մինչեւ անգամ իրենց անձը իրենց կանանց եւ որդւոց վրայ կը դնեն (կ'ապաքարեն)»։

7. Եւ այն (կինը) եւ այն երեխան որ նորա արգանդին (փորանին) մէջն էր Արտաշիրին միտքն ինկան եւ ձիուն զաւակին վրայ այնպէս անշարժ մնաց եւ սկսաւ բարձր հեկեկանօք լալ։

8. Եւ սպասաւորք եւ մեծերք եւ պատանիք եւ վասպուրականք երբոր աս այնպիսի տեսան՝ յապուշ կրթեցան եւ ամէնքը մոմերոտան մոմերոն գինեցին (եւ ըսին). «Այս ի՞նչ պիտի լինի որ Արտաշիր, մեծ զաւ ժամանակը այսպէս կուլայ. ի՞նչ մի՞շտ** ի՞նչ անզատ կրնայ պատահած լինել իրեն»։

9. Մոգպետաց մոգպետը, Արեաց սպահապետը*** եւ փուշտիպանաց սարդարը121 եւ աւագ դպիրը**** եւ վասպուրականաց դերանիկրձապետը122 Արտաշիրին առջեւը եկան եւ գետնամած երկրպագութիւն ըրին եւ ըսին.

«Յաւիտեա՛ն կեցցի՛ք. աս ամենեան անզօրելին մի՛ լինիք եւ մի՛ զգածուիք. եթէ բան մը պատահած է որ մարդկօրէն կարելի է ճարը գտանել, շնորհ ըրէք մեզ ալ ակահ ընել եւ մենք պատրաստ ենք, մարմին՝ հոգի՝ ինչք՝ գանձ՝ կին՝ զաւակ ձեզ համար զոհել։ Իսկ եթէ վնասն այն կարգէ է որ դարմանել հնար չլինի, դուք զՁեզ եւ զմեզ, աշխարհաց բոլոր այս մարդիկը, կարեւէր եւ սրտաբեկ մի՛ ընէք»։

10. Արտաշիր ի պատասխանի ըսաւ թէ. «Ինձ ոչինչ չարիք մը պատահած չէ, այլ այսօր որսաշարի մէջ այն անխօսուն՝ անասուն եւ անբան123 չորքոտանին որ այս կերպ տեսայ, այն կինը եւ այն ապաւինաա*****

---

* Սկսաւ խորհել։

** Բն. پیش, զնդ. դբաէշա, մնակ. վիշտ (Հիւբշմ.)։

*** » Արիէն սպահպետ։

**** Դպերան մեհիստ։

***** Բն. «ավի վէնաս», որ ծայրատուելով եւ տառաշրջուելով «ափ կունաս»ի յանգեր է։

*երեխան որ նորա արգանդին մէջն էր, նորէն միայն ինկան եւ անոնց սպանման վրայ շատ անդամճատար (اندیشدار) եւ սարսափած եմ, որ հոգւոյս մեծ վնաս (մեղք) պիտի համարուի»։*

*Մոլպետան մոլպետը, երբ տեսաւ որ Արտաշիր սարսափած է այն գործէն, երեսի վրայ ինկաւ եւ ըսաւ.*

**12**. *«Կենդանի՛ մնաք, հրաման ըրէ՛ք որ վնասակարաց (մեղապարտից) եւ մահարժանից, տիրանստատից*[124] *պատուհասը (պատիժը) թողած էք ինձ*»։*

**13**. *Արտաշիր (ըսաւ) — «Ի՞նչ կը խօսիս ինձ այդպէս. քենէ ի՞նչ վնաս տեսնուած է որ»։*

**14**. *Մոգպետաց մոլպետն ըսաւ. «Այն կինը եւ այն երեխան որ դուք մեռցնել հրամայած էիք, չմեռցուցի եւ տղայ մը ծնաւ որ բոլոր մեծամեծներու նորածին մանուկներէն գեղեցիկ եւ առողջ է»։*

**15**. *Արտաշիրն ըսաւ. — «Ի՞նչ կ'ըսես»։*

**16**. *Մոլպետան մոլպետն ըսաւ. «Կենդանի մնաք, համբունակ (այդպէս) է որդոն ըսի»։*

**17**. *Արտաշիր հրամայեց որ Մոլպետան մոլպետին բերանը կարմիր յակինթ (یاکند) եւ ընտիր մարգարիտ* مروارید *եւ գոհար (گوهر) լեցնեն։*

**18**. *Մի եւ նոյն ատեն մէկը վազեց եւ Շահպուհրը այն տեղ բերաւ։*

**19**. *Արտաշիր երբ իւր որդին Շահպուհրը տեսաւ, երեսի վրայ ինկաւ եւ Անհումայրին (Որմիզդ) Աստուծոյ եւ Ամշասպանդաց (գերագոյն ոգւոց) եւ Կայեանց Փառքին եւ Ատրան-Շահին** անպարտելիոյն՝ գոհաբանական սպաս (سپاس) մատոյց*[125] *եւ ըսաւ.*

**20**. *«Այն որ ինձ պատահեցաւ, ոչ մէկ իշխանի կամ դեհապետի*** պատահած է Սիուշանսի հազարեակէն եւ յարութենէն եւ մարմնոց նորոգութենէն առաջ*[126] *որ այսպիսի շնորհալի զաւակ մը ի մեռելոց ետ դարձաւ (յարութիւն առաւ)»։*

---

* Nöld. «Թող սահմանուի ինձ» կ'ըսէ. Թերեւս ուղիղ լինի, քանզի բայը երկումաքի ալ կը զարնէ։ Մենք փ. ի. ին հետեւեցանք։

** Ատր-Կուշասպ։

*** Բն. դեհիուպետ=հպ. دهیوبد=նպ. ده سردار որ «կուսակալ» ըսել է։

Եւ այն տեղը շահաստան մը հրամայեց շինել «Վաղար-Շապուհ»* անուամբ եւ աստ** Վռամական կրակ այն տեղ հաստատեց եւ բազում գանձ եւ հարստութիւն Ատրան-Շահի*** մեհեանը ուղարկեց եւ բազում բարեգործութիւններ հրամայեց ընել։

**21**. Յետ այնորիկ այլ եւ այլ կողմեր**** գնաց Արտաշիր եւ բազում պատերազմներ մղեց Արեաց աշխարհի տէրապետներու դէմ. եւ միշտ, երբ մէկ կողմը կը խաղաղացնէր, միւս կողմէն անհնազանդութիւն եւ ապստամբութիւն մը կը ծագէր։

ԺԵ.

Արտաշիր պատգամ կ'ուղարկէ Հնդկաց Գէտին127, անկէ իմանալու համար թէ ի՛նչ պիտի ըլլայ իր թագաւորութեան128 վախճանը. եւ անկէ առած պատասխանը։

**1**. Այս ատեն շնորհապարտութենէն ետքը (ակամայ) ստահոգ լինել (Արտաշիր) թէ «Մի՛ գուցէ ճակատագրէն129 սահմանուած չլինի որ Արեաց աշխարհը միայնակ մէկ տիրոջ ձեռք անցնի։

**2**. Խորհեցաւ որ գիտուններէ՝ իմաստուններէ եւ դէտերէ ու գուշակներէ130 հարցնել պէտք է. եթէ այնպէս է որ Արեաց աշխարհի իշխանութիւնը իմ ձեռքս անցնելու չէ, գոհ եւ հանգիստ լինելու է. ձգելու է այս պատերազմները եւ այս արիւնհեղութիւնը եւ անձս այս նեղութիւններէ ու հոգերէ ազատելու է։»

**3**. Իր թիկնապահներէն մին Հնդկաց Գէտին խրկեց հարցնելու թէ «Արեաց աշխարհը մէկ տիրոջ պիտի լինի՞ թէ ոչ»։

**4**. Արտաշիրին մարդը երբ Հնդկաց Գէտին առջեւը եկաւ, Գէտը՝ մարդը տեսածին պէս, սա դեռ չխօսած, ինքը մարդուն ըսաւ թէ — «Քեզ Պարսից արքայն այս գործին համար ղրկած է իմանալու թէ "Արեաց աշխարհի տէրապետութիւնը մէկ մարդու, իմ ձեռքս պիտի անցնի՛ թէ ոչ"։

---

* Բն. յայտնապէս «Վալաշ-Շահպուհր» է, որ ولاش شاپور որոյ հայացի ձեւը կը լինի «Վաղարշ-Շապուհ», կամ ամփոփմամբ «Վաղարշապատ», ինչպէս դրինք։ Nöld. «Բուտ-Շահբուհր» կը դնէ եւ բնագիրը խանգարեալ կը համարի։

** Բոլոր այն տեղուանքն ուր մեր օրինակը այսքան կամ այնքան կրակ կը համրէ. N. մի՛ միայն կը դնէ։

*** Նոյն Ատր-կուշասպ։

**** Բն. «կուստակ-կուստակ» (կոյս կոյս)։

Այժմ, ետ դարձիր եւ այս իմ պատասխանս իրեն տո՛ւր որ "Այս թագաւորութիւնը երկու տոհմէ սերեալ մէկու մը ձեռք պիտի անցնի, քեզմէ եւ Միհրակ-Անուշաւանէ. Ուրիշ կերպ կարելի չէ,,»:

5. Մարդը վերստին Արտաշիրին քովը դարձաւ եւ Հնդիկ Պէտին գուշակութիւնը Արտաշիրին հաղորդեց:

6. Արտաշիր, երբ այս խօսքը իմացաւ՝ գոչեց. «Չլինի՛ այն օրը որ յածոզի Միհրակայ տոհմէն մէկը Արեաց աշխարհին վրայ կամակար (کامکار) լինի. վասն զի Միհրակայ թանձր* եւ կորստական** տոհմը իմ թշնամին եղած է եւ անոր սերունդն ալ իմ եւ իմ սերունդիս թշնամի պիտի լինին. եւ եթէ իշխանութեան հասնին եւ իրենց հօրը վրէժը լուծել ուզեն, ազգատոհմիս ադետաբեր պիտի լինին»:

7. Արտաշիր ցասմամբ եւ քինու (վառեալ) Միհրակայ բնակավայրը վազեց եւ համայն Միհրակայ սերունդը հրամայեց ջարդել:

8. Միհրակայ դուստրը երեք տարեկան էր. գիւղականները131 գաղտնի դուրս փախուցին զայն եւ երկրագործի մը խնամոց յանձնեցին որ մեծցնէ եւ զգուշութեամբ պահպանէ զայն (ամէն) չարէ:

9. Երկրագործը համբուռակ ըրաւ եւ խնամով մեծցուց աղջիկը:

10. Երբոր քանի մը տարի անցաւ, աղջիկը արբունքի հասաւ եւ մարմնոյ տեսլեամբ եւ գեղով եւ ճապկութեամբ*** եւ ուժով եւ զօրութեամբ բոլոր կանայքը գերազանցեց:

## ԺԶ.

Շապուհի նախճիր երթալը. Միհրակ-Անուշաւանին դուստրը տեսնել եւ զայն կնութեան առնելը:

1. Ըստ նախասահմանութեան, օր մը Շապուհ Արտաշիրեան այն քաղաքէն անցաւ եւ նախճիր գնաց եւ նախճիրէն ետքը, ինը ձիաւորով, այն գիւղը եկաւ ուր էր աղջիկը:

2. Այնպէս գրուած էր (յերկնից) որ աղջիկը ջրհորի մը գլուխն էր եւ ջուր կը քաշէր եւ պաճարներուն**** ջուր կուտար:

* Բն. گران تخم ։

** » هلاك تخم ։

*** » ճապուկի (چابکی) = կայտառութիւն՝ թեթեւութիւն՝ դիւրաշարժութիւն.

**** Բն. չահար-փայ = չորքոտանի:

**3** · Երկրագործը գործով մը հեռացած էր ։

**4** · Աղջիկը երբ Շապուհը եւ այրուձին տեսաւ, ոտքի ելաւ, երկրպագութիւն ըրաւ եւ ըսաւ · «Առողջութի՛ւն, գեղեցկութի՛ւն եւ խաղաղութի՛ւն. հրամեցէ՛ք. նստեցէ՛ք. քանզի տեղս զուարճալի է եւ ծառերուն շուքը զով եւ եղանակը ջերմ (چر = չոգ). մինչեւ որ ես ջուր քաշեմ եւ դուք եւ անասուններդ խմէք ։»

**5** · Շապուհը յոգնութենէն, անօթութենէն եւ ծարաւէն սաստիկ դառնացած, աղջկան ըսաւ · «(Կօրի՛ր) չար Րիմէն (Ահրիման), քո ջուրը պէտք չէ մեզ» ։

**6** · Աղջիկը չփոթած՝ քաշուեցաւ նստաւ մեկուսի ։

**7** · Շապուհը ձիաւորներուն ըսաւ · «Դոյլը հորը իջուցէ՛ք եւ ջուր քաշեցէ՛ք մինչեւ որ մենք բաժ առնենք* եւ անասնոց ջուր տուէ՛ք» ։

**8** · Ձիաւորներն համկունակ ըրին եւ դոյլը հորը իջուցին եւ լեցաւ · բայց քանզի շատ մեծ էր, չէին կրնար վեր քաշել ։

**9** · Աղջիկը հեռուէն կը դիտէր ։

**10** · Շապուհ երբ տեսաւ որ ձիաւորները չկարացին դոյլը հորէն վեր քաշել, բարկացաւ, վազեց հորին գլուխը եւ թշնամանելով (دشنام) ձիաւորներն՝ ըսաւ · «Ամօ՛թ, նախատի՛նք ձեզի որ քան կին անզօր եւ վատահնար** (անճարակ) եղաք» ։

**11** · Առաւ առասանը*** անոնց ձեռքէն եւ ուժով մը դոյլը հորէն դուրս քաշեց ։

**12** · Շապուհին զօրին (زور = ոյժ) եւ հնարին (هنر) եւ ճարպկութեանը զարմացաւ աղջիկը, երբոր տեսաւ որ ուժով՝ հնարով եւ պէտք եղած ճարպկութեամբ որ ունէր, ինքը (Շապուհը) դոյլը հորէն քաշեց հանեց. վազելով Շապուհին մօտ եկաւ, երեսի վրայ ինկաւ, դրուատեց (درود) եւ ըսաւ ·

**13**. «Կեցցե՛ս****, Շապուհդ Արտաշիրեան, ընտի՛րդ արի արանց» ։

**14** · Շապուհը խնդաց եւ աղջկան ըսաւ թէ «Դու ուստի՞ գիտես թէ ես Շապուհն եմ» ։

**15** · Աղջիկն ըսաւ · «Ես շատերէն իմացած եմ որ Արեաց աշխարհին մէջ չկայ ձիաւոր մը զօրութեամբ՝ կորովով՝ մարմնով՝ վայելչու-

---

* Այսինքն — աղօթք ըսենք և կերակուր ուտելու պատրաստուինք ։

** Բն. «վատ-հունար» ։

*** » «Առասն» ։

**** » Անուշակ լերուք ։

թեամբ եւ ոտքով եւ ճարպկութեամբ , Ձեզ՝ Արտաշիրեան Շապուհին պէտ» :

16 . Շապուհը աղջկան ըսաւ . — «Շիտակն ըսէ՛ , դու որո՞ւ զաւակներէն ես» :

17. Աղջիկն ըսաւ . «Ես այն երկրագործին որ այս գիւղիս մէջ կը բնակի՝ աղջիկն եմ» :

18 . Շապուհն ըսաւ . «Շիտա՛կ չխօսեցար , վասնզի երկրագործի աղջիկը այս հնարամտութիւնը՝ կորովը եւ ոտքը եւ այս շնորհը որ դու ունիս՝ չունենար . հիմա , մինչեւ որ շիտակը չըսես՝ քեզմէ գոհ չեմ մնար» :

19 . Աղջիկն ըսաւ . «Եթէ ապահովութիւն տաս որ չվնասես անձիս եւ կեանքիս՝ շիտակն ըսեմ» :

20 . Շապուհն ըսաւ . «Ապահո՛վ , մի՛ վախնար» :

21 . Աղջիկն ըսաւ . « Ես Միհրակ-Անուշզադափ դուստրն եմ եւ Արտաշիրի երկիւղէն այս տեղ բերուած եմ. Միհրակին եւթ զաւակներէն ինէ զատ մէկը չմնաց» :

22 . Շապուհ երկրագործը կանչել տուաւ եւ աղջիկը կին առաւ եւ այն գիշեր իրեն միացաւ :

## ԺԷ .

Շապուհեան Որմզդին՝ Միհրակայ աղջիկէն ծնիլը եւ Արտաշիրին խնամալը :

1 . Եղաւ որ* նոյն գիշերը (աղջիկը) Շապուհեան Անհումայով (Որմիզդ) յղի մնաց :

2 . Շապուհ յարգանօք եւ մեծարանօք կը վարուէր աղջկան հետ եւ Շապուհեան Որմիզդն անկէ ծնաւ :

3 . Շապուհ՝ Որմիզդը՝ իւր հօրմէն ծածուկ պահեց մինչեւ որ եւթ տարեկան եղաւ :

4 . Օր մը, Արտաշիրի արքայազանց եւ վասպուրականաց հետ Որմիզդ ասպարէս** ելաւ եւ ճոկան խաղաց :

* Բառացի՝ «Ըստ նախատահմանութեան (երկնից)» :

** Ձիարշաւ :

**5**· Արտաշիր, մովպետան մովպետի, արդնուորաց սարդարի132 եւ բազում ազատանւոյ եւ վզրկաց հետ, այն տեղ նստած էր, եւ խաղը կը դիտէր։

**6**· Որմիզդը, ձիավարութեան մէջ, այն ազատերամէն գեր հանդիսացաւ։

**7**· Բախտին անօրէնութեամբը անոնցմէ մէկը ճոկանը գնտակին զարկաւ եւ գնտակը Արտաշիրին մօտը ինկաւ։

**8**· Արտաշիր չտեսնելու զարկաւ եւ մանկունքը չփոթած մնացին եւ Արտաշիրին չուքէն ոչ ոք համարձակեցաւ մօտ երթալ։

**9**· Որմիզդ վստահաբար* վազեց, վստահաբար առաւ գնդակը, զարկաւ եւ ձայնեց։

**10**· Արտաշիր անոնցմէ (հանդիսականներէն) հարցուց թէ — «Այդ տղեկը ո՞վ է»։

**11**· Նոքա ըսին· «Յաւերժ կեցջի՛ք**, մենք չենք ճանչնար այդ տըղեկը»։

**12**· Արտաշիր մարդ ուղարկեց եւ առջեւը բերել տուաւ մանկիկն ու ըսաւ· «Դու. որի՞ն տղան ես»։

**13**· Որմիզդն ըսաւ· «Ես Շապուհին տղան եմ»։

**14**· (Արտաշիր) նոյնժամայն մարդ ուղարկեց Շապուհը բերել տըւաւ ու ըսաւ. «Այս տղան որո՞ւ է»։

**15**· Շապուհ ապահովութեան խոստում խնդրեց։

**16**. Արտաշիր ժպտեցաւ եւ խօսք տուաւ։

**17**· Շապուհն ըսաւ· «Յաւիտեան կեցջի՛ք· դա իմ տղաս է որ քանի մը տարիէ ի վեր ձեզմէ թաքուցած էի»։

**18**· Արտաշիրն ըսաւ. «Այս ի՞նչ անընտանութիւն133 է որ դու եւթ տարի է այսպիսի չնորհալի զաւակ մը ինէ գաղտնի պահեցիր»։

**19-20**. Ողջագուրեց Որմիզդը եւ բազում պարգեւներ եւ պատմուճաններ անոր տուաւ եւ գոհութիւն մատոյց Աստուծոյ եւ ըսաւ· «Կատարուեցաւ ինչ որ Հնդիկ Գէտն ըսած էր»։

**21**· Յետ այնորիկ, երբ Որմիզդ իշխանութեան հասաւ, համայն Արեաց աշխարհը դարձեալ մի տիրապետութեան կրցաւ բերել եւ կողմանց

* Բն. Վստահ։

** Nöld. ի մէջ չկայ։

կողմանց տիրագլուխները* հնազանդութեան տակ առաւ ։

**22**. Հոռոմէն[134] եւ Հնդիկէն սակ եւ բաժ** պահանջեց եւ Իրանը աւելի բարգաւաճ, աւելի հզօր եւ անուանի ըրաւ եւ Հոռոմոց կայսրը Տանրիար եւ...*** Քաբուլ եւ Հնդկաց արքայն, եւ Թրքաց Խաքանը եւ այլ կողմանց կողմանց իշխանները սիրով եւ քաղցրութեամբ այցելութեան եկան (իրեն)[135] ։

## ԺԸ.

### Սար-Ճամակ[136]

**1**. Վերջացաւ գոհութեամբ՝ բերկրութեամբ եւ խաղաղութեամբ ։ Յաւերժացի՛ն հոգիքն (**2**.) Արքայից Արքային Արտաշրի Բաբական, եւ Արքայից Արքային Շապհոյ Արտաշիրեան, եւ Արքայից Արքային Որմզդի Շապուհեան ։

**3**. Այսպէս եղիցի եւ եւս քան զայս ։

**4**. Յաւերժացի՛ հոգին Ռոստոմայ Միհրաւանայ որ զայս քաղուածօրէն համառօտագրեց ։

**5**. Այդգոյն եղիցի[137] ։

* Բն. ուէր խօստեան ։

** » սակ մէ բաժ ։

*** » մէջ תאבן գրուած է զոր անկարելի է այլապէս քան Tabû կարդալ ։ Nöld. առ ընթերցուածին հետ Kabû մըն ալ կը դնէ ( ? )ով ։ Յամենայն դէպս յայտնի չէ թէ ինչ է այս titreը ։

## Կցորդ[138]

1· Ցեառոյ (Արտաշիր) Արտաւանայ գահը նստաւ եւ արդարութիւն գործեց* եւ զօրաց մեծերը եւ պզտիկները եւ մովպետան մովպետը յոտս գահոյից բերել տալով ըսաւ·

« Ես (փոխարէն) այս մեծ թագաւորութեան որ Աստուած ինծ պարգեւեց , պէտք է բարիք ընեմ եւ ուղղութիւն գործեմ եւ վեհ-դենը մաքուր[139] յարդարեմ եւ աշխարհիկներն ալ յատուկ օրգւոցս պէս պահպանեմ եւ դատար(ար)ին՝ ապարթարին[140] (բարձրելոյն) եւ ամենակալին փառք եւ գոհութիւն մատուցանեմ որ համակ իշխանութիւն եւ դատ (իրաւունք)· եւս եւ եւթն բաժնից հրամատարութիւնն ինձ ապապարեց (յանձնեց) , եւ ինչպէս վայել էր արժանը տնօրինեց ·

2· « Եւ դուք , երբ գոհ լինիք , բարի եւ հաւատարիմ[141] եղի՛ք ինձ: եւ ես ալ ձեզ համար բարի խորհիմ եւ արդարութիւն ընել աշխատիմ եւ սակ ու բաժը որ ձեզմէ պիտի ստասանորդեմ, անով զօրաց պէտքը հոգամ որպէս զի ժողովրդին պահպանութեանը հսկեն եւ ամէն տեսակ ... հարիւր դենարին վեց դենարը (տէրութեան լինի)· եւ այս կերպով դատ եւ իրաւունք ընենք եւ շահագիտութիւն (առ ու տուր) չընենք եւ Աստուծոյ փառք տանք որ ինձ այս տէրութիւնը շնորհեց եւ բարեգործութիւն ընենք եւ դժխոհութենէ եւ (դժ)խօսութենէ եւ (դժ)գործութենէ[143] շատ զգուշանանք , որպէս զի խաղաղ՝ ուրախ՝ տուրք՝ յաղթող եւ կամակար լինինք » ։

3· Ցաւերժացի՛ հոգին Արքայից Արքային Արտաշիրի Բաբակայ որ այս անդարձը խօսեցաւ ։

## ՎԵՐՋ

* Այն ժամանակի ծանօթ աշխարհը եւթն բաժին որոշած էին հին աշխարհագիրք ։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Այս բառը արդի պարսկերէնի մէջ بابکان կ՚ուղղագրուի, միա-կէտ բով. بابك անունէն եւ կ՚արտասանուի բաբէկ, բաբէկան (արեւելեայց հնչմամբ) կամ պապէք, պապէքան (ըստ արեւմտեայց)։

Մենք մեր հայ մատենագրութեան մէջ շատ մը անուններ ունինք տարբեր տարբեր ուղղագրութեամբ որք, կարծեմ ամէնն ալ, մի եւ նոյն կոչման կը յանգին։ Խորենացւոյ մէջ «Փափագ» կը կարդանք որոյ յատուկ անուն եւ այս իսկ լինելն այսօր այլ եւս տարակոյս չվերցներ, ինչպէս հաստատած է Գ. Պատկանեան։ Ղազար Փարպեցւոյ մէջ յիշուած «Փափագ»ին ալ մի եւ նոյն լինելը գրուած է Ն. Բիւզանդացիէն*։

Եղիշէն, բանտարկեալ նախարարաց կարգին մէջ, կը յիշէ Բաբգէն, Բաբէկ, Փաբակ, եւ յետնոց մէջ մինչեւ անգամ Պապէք գրողներ կան**։

Արդ՝ ո՞րն է ընտրելին։

Եթէ բառին բուն պահլաւական ուղղագրութիւնը նայինք՝ Պ եւ Բ հնչումները սխալ համարելի են, քանզի Pով է פפאק (Papak) եւ פפאקן (Papakan) որ Արտաքացւոց բերնին մէջ, այս, միակէտ پ ի դարձած է։

Այս պարագային, մեր Փ-ը պէտք է պատասխանէ պ՚ի, پին, որով Խորենեան գրչութիւնը նախապատուութիւն կ՚առնու։ Բայց Խորենացւոյն մէջ «Բաբիկ» ալ կայ «Բաբկայ» եւ «Բաբկան» սեռականով. եւ, ինչպէս տեսանք, կան ուրիշ ձեւեր ալ Եղիշէի մէջ եւ հաւանականաբար ուրիշ տեղեր ալ որ այժմ առձեռն պատրաստ չունինք։

---

* Խոր. աշխ. Թրգմ. Խ. Սոեփ ծան. 449, եր. 207-8։

** Անդ։

Մանաւանդ «Բաբգէն» ձեւը մեզ շատ կը փորձէ, իբրեւ աւելի յաճախեալ եւ աւելի ծանօթ։ Ունինք նաեւ «պապ» եւ «բաբ» որք նոյնպէս ազգային հնագոյն հեղինակութեամբք վաւերական են։

Բայց մենք «Բաբակ» եւ «Բաբական» կոչումներն ընտրեցինք. ոչ թէ իբր աւելի ուղիղ, այլ աւելի յաճախեալ առ մեզ եւ աւելի համապատասխան եւրոպականին (Papakan)։

Եթէ ուզէինք քուն հայացի ձեւ մը պահել, պիտի ըսէինք «Բաբակեան», քանզի ան՝ զէնդ եւ փէհլէվիի մէջ հայրանունական մասնիկ մ'է, ինչպէս եան առ մեզ. զօ.

ספיתאמאן (Çpitâmân = Սպիտաման) = որդի Սպիտամայ. Սպիտամեան։

כואתאן (kavâtân=Կաւատան)=որդի Կաւատայ, Կաւատեան, եւն*։

2. Բնագրին մէջ תאדאר(դա՛տա՛ր) է, դատ (داد) արմատէն եւ կը նշանակէ դատ՝ իրաւունք եւ արդարութիւն ընող, այսինքն՝ արդարադատ, դատաւոր, դատարար։ Մենք այս վերջին ձայնը պահեցինք նմանողութեան աղագաւ։

3. Բնագրին אנהמא բառը «անհումա» կը կարդան Փարսիները, որոնց հետ նաեւ եւրոպացի գիտունները ոմանք. իսկ այլք, ընդ որս Տարմըսթեթեր եւ Նէօլտէքէ, «աուհրմազդ» կը կարդան որ է «Որմիզդ»։ Երկու կողմի ընթերցուածն ալ կրնայ ըսուիլ թէ ճիշդ է. քանզի բառը, պհլ. ալփաբետին առաձգութեան պատճառաւ, բազում կերպով կրնայ կարդացուիլ։ Մենք «անհումա»ին բաւական հիմ եւ հաւանականութիւն չգտնելով՝ «Աւրամազդ» կամ աւելի «Որմիզդ» ընթերցուածին պիտի հետեւինք. ինչպէս Խոստաւար Շահրիար՝ մեր փարսի առաջնորդն ալ՝ կը տեսնենք որ اورمزد կը թարգմանէ, անհուման կարդալով հանդերձ**։

4. Դիտեցինք որ այս անունը, պհլ. բնագրին մէջ, միշտ «Արտախշատր» կը գրուի ի գլուխ գրոց, իսկ ի մէջն՝ «Արտախշիր»։

Նէօլտէքէ կ'ըսէ թէ*** ארתחשתר (արտխշտր) ձեւն աւելի հընագոյն է եւ արձանագրութեանց եւ ձեռագրաց մէջ յաճախեալ. իսկ Սասանեանց ժամանակը ת գիրն արդէն ինկած էր գործածութենէ։ Եւ ארדשיר

* Darmesteter — Etudes iraniennes — I. 226։

** Յիշեալ հեղինակին հետ մեր անձամբ տեսակցութեան միջոցին, 1905, ի Շիրազ, յուզեցինք այս խնդիրը եւ մեծ բաւականութեամբ տեսանք որ նա ալ «աուհրմազդ» ընթերցուածն ուղիղ կը համարի, եւ խերեա օրքադրէ ալ իւր նոր տպագրութեան մէջ։

*** Երես 35, ծան. 2։

(Արտաշիր) ընթերցուածը տարբա-արաբական կը համարի։ Իսկ Ֆիրդուսիի اردشير ը որ արդի պրս· ուղղագրութեան հիմ բռնուած է, պարզապէս ի պէտս յանգի եւ չափու ձեւացած կը կարծէ։

Մենք. որովհետեւ մեր հին մատենագրութեանց համատատութիւն ունինք ארתשיר (Արտաշիր) ձեւին, նոյն նուիրագործեալ ուղղագրութեան պիտի հետեւինք անշուշտ։

**5**. Այս բառը պհլ. բնագրին մէջ אידונ կամ אידון (ایدون=այդպէս) գրուած է որ. ըստ J. Darmesteterի*, յօրինուած է aêta ցուցականէն եւ un ածանցէ մը որ ինքն ալ aôna աւելի նախնական ձեւէ մը ամփոփուած կ'երեւի։ Որով բառը կը ներկայանայ aêta-aôna տարածման եւ êtun ազման։

C. de Harlez** ալ տարբ գրեթէ կը ձայնակցի, արմատ ընդունելով aît յորմէ նմանապէս un ածանցով կը բաղադրէ êdûn։

Արդ՝ թէ aêta, ait եւ edը մեր «այդ»ը կամ ամփոփ «էդ»ը լինի՝ տարր տարակոյս չկայ· կը մնայ բառին երկրորդ մասը (ոն. աօ՛նա) որուն համար կը կարծենք թէ աւելի կայ այլապէս մտածելու։

Կարելի չէ՞ արդարեւ ենթադրել թէ սա փոխանակ «աօ՛նա» անիմաստ ածանց մը լինելու, զէնդ «գաօ՛նա» նշանական բառը լինի որ ամփոփմամբ «գոնա՛» (گونه) եւ «գոն» (گون) եւ վերջապէս ի մերումս «գոյն» եղած լինի. «գ»ը պհլ. ի մէջ ինկած եւ սա մեզ պահուած մնալով։

Օրինակներ չեն պակսիր ցուցնելու թէ այսպիսի բաղադրութեանց մէջ «գ» տառը երբեմն պահուած է· զօ· چكون (چه گون)· երբեմն փոխուած աւելի մեղմ տառի մը· զօ· زريون որ էր زرگون եւ երբեմն ալ բոլորովին ջնջուած, զօ. چون որ յայտնի չէ چه گون է խառնուած։ Եւ այս چكون ալ մեր յետին գրերու եւ անկեալ հեղինակներու «ո՛րգոն»ը չ՞յիշեցներ արդեօք։ Ասոնք իրենք չ՞նարեցին անշուշտ ուրգոն. ուրգան եւ այլ այսպիսի բացատրութիւնները որ այժմ չենք յիշեր, այլ լեզուի մէջ գտան, թէեւ ոչ այն հին եւ ընտիր մատենագրութեան մէջ զոր ոսկեդար կը կոչենք։

Այս առթիւ ըսենք որ մենք, ընդունելով հանդերձ Վիեննական Դըպրոցին մատնանիշ ըրած զանազանութիւնը նախնեաց մատենագրութեան մէջ, բառերու ընտրութեան եւ ոճոյ ողորկութեան եւ կանոնաւորութեան մասին, իրողութիւն որ ակն յանդիման է, չենք կարծեր, մեւս

* Études iraniennes — I. 161 եւ 280։

** Manuel du Pehlevi, 212։

կողմէն, որ առաջին եւ լաւիր թարգմանիչք լեզուին բոլոր բովանդակ գանձը գործածած սպառած լինելին մինչեւ բառ մը՝ նշանախեց մ'իսկ ար-տաքս չմնալով։ Շատ հաւանական է որ շատ մը բառեր եւ դարձուածներ կա՛մ պատեհութիւն ունեցած չլինելին գործածելու, կամ իրենց հին բըռնած բարբառին մէջ չկար եւ կամ արհամարհած լինելին իբր անարժան ի-րենց ՚ի բրացելոյ ճաշակին, եւ կամ մեզ այժմ անյայտ ուրիշ պատճառներով։

Ո՛րչափ ցանկալին պիտի լինէր հայ լեզուի համար եթէ ստոյգ հը-նութեան դրոշմը կրող մի խումբ հայ բառեր գտնէինք որ, թէեւ գրաւոր լեզուի չանցած, այլ՝ անտարակուսելի վաւերականութեամբ աւան-դաբար ժողովրդեան բերնին մէջ պահուած եւ մինչեւ մեզ հասած լինէին։ Միանգամ եւս կը շեշտուի ասով գաւառաբարբառներու խորամուխ ուսու-մնասիրութիւնը, զանի որ շատ անակնկալներ կը խոստանայ ան-տարակոյս։

Այս ըմբռնողութեամբ ուրեմն կը յայտարարենք որ մեր այս աշխա-տութեան մէջ, լեզուին հարթութեան ողորկութեան եւ քերականական կանոնաւորութեան, վերջապէս ոսկեդարեան հանգամանաց չպիտի կա-պուինք մենք. մեզ համար բաւական է որ բառ մը՝ ստուգութիւն մը, հնու-թեան եւ հարազատութեան կնիքը կրէ. լինի նա յառաջնոյ ի բուն եւ յանվրէպ նախնեաց ի գործ ածեալ, լինի ի յետնոց եւ յաննշանից։

Ասով ի հարկէ «բաղհիւսեմ, բաղխոհական, ներտրամադրութիւն, ներհուն, ներկուռ, ներհակ, տրամաբաշխ»ի պէս կազմութեանց չենք ակ-նարկեր որոնց ծագումն եւ աղբիւրն յայտնի են. այլ այն ձեւերուն եւ ձայներուն որք հնութեան եւ իսկատիպ հարազատութեան ամէն անկաս-կածելի նշաններն ունին։

6. Բնագրի «Աղեքսանդր-ի Առոմա». զի Արեւելեայք մինչեւ ցայժմ اسكندر رومى սովոր են կոչել զՄակեդոնացի աշխարհակալն։

7. Բն. «Արիան շադուր» (איריאנ שדור) որ ايران شهر է. քան-զի արդի պ. ի մէջ ճ հնչուած ձայնը պհլ. ի մէջ շատ անգամ դ կը տես-նենք։ Ուստի «շադուր»ը իսկապէս «շահուր» կամ «շահր» է յորմէ այժմու شهر ը։

8. Բն. «Քատակ-խոդա» որ ամփոփուելով եղեր է كدخدا ։ Զնդ. «քատ, քատա» — պհլ. «քատակ» կը նշանակեն՝ տուն. իսկ խոդա՛ տէր, մեծ, իշխան, նահապետ։ Որով كدخدا ճշտիւ կը պատասխանէ մեր

«տանուտէր»ին ։ Այս տեղ խօսքին բերումը կը պահանջէ՝ «մանր մունր անկախ իշխաններ ի միջեւ Արեաց աշխարհի» ինչպէս Nöldeke ալ Localherrn կը թարգմանէ (տեղական իշխաններ), ճիշդ մեր առմամբ ։

**9**․ Բն․ «Կուստիհա», ի բառէն «կուստի» որ կողմ եւ կոյս կը նշանակէ, հմմ․ کسته ։ Զայնի մօտաւորութեան եւ նշանակութեան նայելով մեր կոյս բառը անշուշտ օտար չէ «կուստի» ձայնին, այլ թէ ի՛նչ օրինօք, յետոյ պիտի տեսնենք ։

**10**․ Բն․ «շատուրիար» որ بشهريار է = շահապետ ։

**11**․ Nöld․ այս բառին համար Statthalter կ'ըսէ որ տեղի մը կառավարիչ կամ կուսակալը կը նշանակէ եւ ճիշդ է ։ Բայց որովհետեւ բընագրին մէջ գործածուած גמרדק (գումարտակ) բուն բառն ունինք մենք հարկ չզգացինք ուրիշ մերձիմաստ բառերու դիմելու, թէպէտեւ մեր «գումարտակ»ը աւելի պատերազմական առմամբ գործածուած է, բուն նախնական իմաստէն մի քիչ հեռանալով ։ Փէհլէվի գումարտակը արդի լեզուի մէջ کاره է եւ կ'ելլէ کاشتن բայէն որ գործի դնել, պաշտօն յանձնել, եւն կը նշանակէ ։ Կ'ըսուի, զօ․ Այս ինչ մարդը = از کاشتکان فلان کس است այն ինչ մարդու պաշտօնեաներէն կամ գործակալներէն է* ։

**12**․ Բն․ «Ստախար» استخر զոր Ստահր կը կարդանք մերայնոց մէջ եւ է հինն Պերսեպոլիս, 7-8 փարսախաւ միայն հեռի յայժմեան Շիրազէ, հիակերտն, հրաշարուեստն, անզուգականն զոր երկիցս անձամբ տեսնելու բախտն ունեցանք 1905ին, երբ ի Շիրազ կը գտնուէինք բարձրապատիւ Արքայորդւոյն՝ Շօա-էս-Սալթանա, Մէլիք-Մանսուր-Միրզայի հետ ։

**13**․ Բնագիրն ալ ճիշդ «համվար» هموار է որ բնակակից՝ կենակից կը նշանակէ ։

**14**․ Բն․ «տոխմակ» = تخمه որ յայտնապէս մեր «տոհմ»ն է, զնդ․ «տաօ՛խմա» ։

**15**․ Մենք մեզի երբէք չենք ներեր թէեւ նոր բառեր կերտելու ձեռներէցութիւնը որով բազումք կը զեղծանին, սակայն, ինչպէս յառաջա-

* Հիւպշմանն ալ ճիշդ այսպէս ըմբռնած եւ բացատրած է (Armenische Gramm.)

բանին մէջ ազդեցինք. կան պարագաներ որ կը բանադատեն յայս ։

Բնագրին մէջ գործածուած «դժ-խոդայի» բառը, զօ. մեզ ա՛յնչափ գե-ղեցիկ՝ ամփոփ եւ իմաստալից երեւցաւ որ համարձակեցանք յեղուլ ի հայ, ա՛մենեւին նոյն պահելով կազմը եւ իմաստը ։ Այս բարդութիւնը սոյն կոկ եւ ողորկ ամփոփմամբ եւ լայն եւ ծաւալուն իմաստով բնաւ ուրիշ լեզուաց մէջ չկայ, կարծեմ ։

«Դշ» կամ «դուշ-խոդայի» կը նշանակէ պետութիւն՝ իշխանութիւն մը որ դժնդակ եւ աղիտաբեր եղած է ժողովրդոց = règne néfaste, funeste ։

Պհլ. «դշ. դուշ» մասնիկին ակներեւ է ի մեր «դժ» որ միշտ ի հակա-ռակն կը միտեցնէ բառին իմաստը ։ Բարդելով ուրեմն զաս՝ պետութիւն բառին հետ, ինչպէս կազմուած են արդէն

դժկամ(ակ)ութիւն, դժպատեհութիւն

դժխեմութիւն, դժգունութիւն, եւն.,

կ՚ունենանք՝ դժպետութիւն որ պիտի նշանակէ ոչ միայն իշխանութիւնը այլ եւ սորա դժնդակութիւնը եւ չարաղէտութիւնը ։

**16**. Բնագիրը «վերհունդ» կը դնէ որոյ մէջ անհնար է չնշմարել մեր «սերունդ»ը. վեր = սեր, հունդ = ունդ որ եւ հունդ* ։

**17**. Բն. «ռո՛շան»= լոյս, պայծառութիւն։ Թէեւ մենք ալ ունինք «ռոշնական ռոշնութիւն» սակայն բայը չունենալնուս՝ զանց ըրինք. Թէ-պէտեւ մարթ էր նոյն ռոշն հայացեալ արմատէն՝ ռոշնել կամ ռոշանել կամ ռոշնայել ձեւ մ՚ընդունիլ ։

**18**. Ատոնք երեք կրակարանց անուններն են այն եւթն գլխաւոր կրակներէն զոր ի յարգի ունէին հին Պարսիկք, ըստ թուոյ եւթն մոլորակաց ։ Այս կրակատունները, կամ մեհրայնոց բառով՝ ատրուշան-ները հետեւեալներն էին .

| | | |
|---|---|---|
| 1. Ատր-Միհր | = | آذر مهر |
| 2. Ատր-Նուշ** | = | آذر نوش |
| 3. Ատր-Վահրամ | = | آذر بهرام |
| 4. Ատր-Այն | = | آذر آئين |
| 5. Ատր-Խրին | = | آذر خرين |

* Հիւպշմանի մէջ չգտանք այս բառը։

** Ըստ ոմանց՝ Ատր-խորդատ = آذر خرداد զոր հայացի՝ Ատր-Հրադատ կրնանք ընթեռնուլ ։

6. Ատր-Բուրզին = اذر برزین

7. Ատր Զրադաշտ = آذر زردهشت

Աւելի հին տաճարները, այսինքն այն դարուն յորում, ըստ աւանդութեան (légende), կ'ապրէր Մահ-Աբադ որ եւ Ազր-Հուշանկ, զոր առաջին մարդ եւ առաքեալ եւ մարգարէ կ'ընդունէին հին Պարսիկք, նոյնպէս եւթը կրակատուն կար, եւթը մոլորակաց անուան նուիրեալ, ինչպէս կը կարդանք دبستان ի* մէջ, եւ էին հետեւեալքն.

1. Կայվան-Ատր = Ատր-Կայվան, = کیوان آذر
2. Որմիզդ-Ատր = Ատր-Որմիզդ, = هرمز اذر
3. Վահրամ-Ատր = Ատր-Վռամ, = بهرام آذر
4. Հուր-Ատր = Ատրահուր**, = هور آذر
5. Անահիտ-Ատր = Ատր-Անահիտ, = ناهید اذر
6. Տիր-Ատր***, — تیر آذر
7. Մահ-Ատր = Ատրամահ։ = ماه آذر

Արդ՝ «Ատր-Հրուբադ»ը որ մեր այս համարին մէջ կը յիշուի, ըստ ամենայն հաւանականութեան, Հrաs կամ Հrադաs (خرداد) կամ Աsrահուr կրնանք կոչել եւ «Ատր-Կուշասպ»ը՝ Աsr-վշնասպ**** որ տիրապէս յայտնի չէ թէ ո՛րն է։ Իսկ «Բուրզին-Միհր»ը նոյն «Ատր-Բուրզին»ն է որ յիշուեցաւ։

Այս երազը Ֆիրտուսին քիչ մը տարբեր կերպիւ կը պատմէ։ Ահաւասիկ իւր տողերը.

چنان دید در خواب کاتش پرست
سه آتش فروزان بردی بدست
چو آذر کشسب و چو خراد و مهر

* Սա մի հռչակաւոր գիրք է որ աւելի 250 տարուայ չափ յառաջ Քաշմիրցի Շէյխ-Մէհէմմէտ-Մոհսին, մականուանեալն Ֆանի՝ գրած է, հին Պարսից, նախ քան գՋրադաշտն, ունեցած 12 կրօնքներու մասին. թէ՛, ինչպէս կը կարծուի, հին պահլաւ ձեռագիրներէ քաղելով եւ թէ՛ նոյն այն հին աղանդաւորներէն մինչեւ իւր ժամանակը մնացած մի քանի անձանց հետ տեսնուելով։

** Եթէ «Հրատ» կամ «Հրահատ» (فرهاد) չէ։

*** Մեր տիրատուռը կրնա՞նք արդեօք, որչափ ալ հրապուրիչ երեւնայ իւր արդի քրիստոնէական լուծումը (տէր. տուր), աւելի բարձր հնութեան մը հանելով «Տիր-Ատր» համարել, իբր Տիր աստուծոյ տուրք։

**** Հիւպշմանն ալ այսպէս ընդունած է (Gr. I. 85)։

همه پیش ساسان فروزان بدی
بهر آتشی عود سوزان بدی

Այսինքն․

«Երազին մէջ այնպէս տեսաւ որ կրակապաշտ մը
Իր ձեռաց մէջ երեք հուր ունէր բոցավառ․
Որք էին Ատր-Գուշասպ, Խորտատ եւ Միհր*
Բոլորը Սասանայ առջեւ կը վառէին
Եւ ամենուն մէջ հալուէ ի ծուխ կայր»։

J. Mohl, Ֆիրտուսիի ֆրանսացի թարգմանիչը, բնագրէն բառական կը հեռանայ ըսելով․

« Il eut un nouveau songe dans lequel des adorateurs du feu apportèrent dans leurs mains trois feux qui tous brûlèrent devant Sasan, brillants comme le feu des temples d' Adergouschasp et de Khordad Mihr, étincelants comme le eiel qui tourne et nourris avec du bois d'aloès: »

**19.** Բն. «Արտիշտար»ը սպասալար գրինք հետեւելով Մեր Փ. Թ. ին**, սակայն բառին վերլուծական իմաստին չկրցանք տիրել թէ ինչո՛վ կը տարբերի սպասալարէ ապահապետէն զօր առընթեր կը դնէ բնագիրը։ Եւ ոչ ալ եւրոպացի հեղինակներէն կրցինք լոյս մ'առնել այս մասին։ Sir John Malcolm իւր ընդարձակ «Պարսից պատմութեան»ը մէջ*** «առքայից եւ զօրաց անուն» կը թարգմանէ «արտիշտար»ը, իսկ Nöldeke պատերազմիկ (Krieger) կը դնէ պարզապէս։

Մեր «արդ(ն)» արմատը կրնա՞նք արդեօք հետ բանել եւ կարծել թէ արդնակիր, արդնաւոր, արդնընկէց, զեղարդակիր, վերջապէս տիգաւոր զօրաց վրայ է խօսքը։ Հրապուրիչ լինելու չափ հաւանական կ'երեւայ մեզ այս ենթադրութիւնը։

**20.** Բն․ «տուսակ» = اوجاق որ խիկարէս ծուխ, ծխան (օջախ) կը նշանակէ եւ լայնաբար՝ ազգ, ազգատոհմ, տուն, երդ․ որով կը հաստատուի թէ ո՛րչափ ճիշդ առմամբ կը գործածենք մեր քաղաքացիք ծուխ բառը, տուն եւ ընտանիք նշանակելու համար։ Այլ մենք նախընտրեցինք գերդաստանը որպէս զի շփոթութեան տեղի չտայ։

* Վերի «Միհր»ը Միհրական, Մերհեան, Միհեան կամ Մեհենական այն է «Միհր» գից բագինը կ'ակնարկէ, ինչպէս նաեւ նախընթաց բառերը. իսկ վարինը՝ նոյն դիքը այն է երկնային լուսատուները։

** Փարսի թարգմանչին։

*** Որոյ Փր. թարգմանութիւնն ունեցանք ի ձեռին։

**21.** Փոխանակ երրորդ դէմքով պատմութիւնը շարունակելու, յանկարծ առաջին դէմքին փոխելը, պահլաւ լեզուի մէջ սովորական է, ինչպէս մեր ընտիր մատենագրաց մէջ ալ յաճախ կը տեսնենք, զօ.

« Զի եւ Զրուանն իսկ մարդ եղեալ է, այլ մի քաջ առ Տիտանօքն, եւ որպէս սովոր են Յոյնք եւ Արիք եւ ամենայն ազգք հեթանոսաց՝ զքաջս առ դիւցազունս ունել, հայեցեալ ընդ այն քէշակարկատին Պարսից՝ թէ որովհետեւ մարդիկ աշխարհին զնա առ Աստուածն ունին; եւ զերկնից իսկ եւ զերկրի եւ զամենայն արարածոց արարչութիւնն ի նմանէ կարծեցուցին:» Եղնիկ ։

«Բանզի յոյժ սիրելի էր նմա խաղութիւն, արհնահեղութիւն, վասն այնորիկ յանձն իւր տարաբերէր թէ յո՞ բարեքից զդատնութիւն թիւնից, կամ ո՛ւր բացայտեցից զթողութիւն նորից ։» Եղիշէ ։

**22.** Ցերուսին կ'ըսէ —«բաղնիք խրկեցին» որ աւելի ճահաւոր է ։

**23.** Բն. «Պատմուճան» կամ -զան զոր պատմուզան կը կարդայ եւ يوشاق (օթոց, արկանելի) կը թարգմանէ մեր Փ. առաջնորդը ։
Կրնայ մտածուիլ որ հայերէն «պատմուճան»ը «պատմուզան» եղած ըլլայ ի սկզբան, քանի որ տող մը վերջ «պատմուզ» հրամայական մ'ալ կայ որ بادموزيدن աներեւոյթ մը կ'օրինաւորէ. կամ մեր «ճան» ընթերցուածն է ուղիղը, քանի որ պահուած է լեզուին մէջ եւ Փարսիք աւելի հնացած ձեւ մը չունենին պէտ. դիրը զ մանաւանդ քան թէ ճ կարդալու ։

**24.** Բնագրին մէջ հագնիլն ալ պատմուզ արմատէն է, ինչպէս ակնարկեցինք ։ Մենք որովհետեւ չունինք այս բայը, հաւանականութիւնը կը տայ بادموزيدن ն بادموزان ընթերցուածին ։

**25.** Բն. «աստպարի»=փ. اسوباری զոր Փ. Թ. Ն ի լուսանցս կը մեկնէ اسب سواری որ եթէ սխալ ալ չէ, գոնէ աւելորդ կրկնաբանութիւն է. քանզի اسوباری արդէն سواری է եւ سواری ին մէջ اسپ բառը եւ իմաստը կայ. մնա թէ ինչպէս.
Հարկաւոր է յուշի ունենալ միշտ թէ ձայնաւորները, բառաքննութեան մէջ, գրեթէ նշանակութիւն չունին. ուստի اسوبار ին ա սկզբնական գիրն ալ ի հաշիւ չառնել, օրինակները ո՛չ ինչպէս չատ եւ սովորական են որ չարժեր մանրամասնել, ուրեմն կ'ունենանք سوارى ։ եւ որովհետեւ ب եւ و լծորդ են, փոխանակելով մին ընդ միւսոյն՝ կ'ելլէ سوارى ։

Վերջին ի ձայնը իբր գոյականակերտ եւ وار կամ بار մասնիկն, իբր ածանց, ձգելով՝ կ'ունենանք պարզապէս سو որոյ մէջ անհնարին է չտեսնել, փոքր ինչ յեղանակութեամբ, մեր ձին*։ Յետագայ տողերուն մէջ առիթ պիտի ունենանք աւելի բացայայտ ձեւերը տեսնելու (ծան. 38)։

Ուստի պահլաւիկ اسوبار եւ նպ. سوار** կը պատասխանեն ուղղակի մեր ձիաւոր կամ ձիավար բառերուն։

Վասն որոյ, միշտ միեւնոյն ձայնը չկրկնելու համար, երբեմն ձիավարութիւն կամ — վարզութիւն, կամ — վարժութիւն որ նոյն են, երբեմն ուլասպ արմատէն ասպավարութիւն պիտի թարգմանենք այսուհետեւ سوارى բառն ուր ուրեք որ հանդիպի։

26. Բն. «նամակ»։ Դիտելի է, մի անգամ ընդ միշտ թէ կը սխալին անոնք որ մեր լեզուի բառերուն համապատասխանողներ կը փնտռեն արդի պարսկերէնի ծեքեալ եւ աղաւաղեալ ձեւերուն մէջ։ Մեր՝ թէ՛ ուղղագրութիւնը եւ թէ՛ թաւ եւ կորովի չեչալը գտնելու համար աւելի վեր, այսինքն՝ բուն աղբիւրին ելլելու է, պահլաւին եւ զէնդին որոց շատ անգամ ոյժ եւ հաստատութիւն կուտայ նաեւ սանսկրիտը։

Չեմ կրնար ըմբռնել թէ ի՛նչպէս, Էմինի պէս լուրջ գիտնական մը կրցեր է ըսել թէ «Հայոց լեզուի ուսումնասիրութեան գործին չեն օգնել ոչ զենդը, ոչ պահլաւիկը, ոչ սանսկրիտը եւ ոչ յոյն ու լատինը. բոլոր գործը կը վերջանայ միայն նորանով որ դուք կը սովորէք Հայոց լեզուում եւս գտնել Accusativus cum Infinitivo, Nominativus cum Infinitivo, Ablativus absolutus կրկին հայցականներ եւ այլն, որից ոչինչ չի դուրս գալ***։

Երեւի, սա, մի նեղսրտութեան պարագային որ յաճախ կը պատահի եղեր հանգուցելոյն, ինչպէս կ'իմացնէ կենսագրողը, յանխորհուրդ եւ յակամայս արձակուած մի խստաբանութիւն (boutade) էր քան դատողական անցած լուրջ եւ ծանր մի վճիռ։ Հակառակ դէպքին, շատ հե-

* Հիւպշմանի մէջ չգտանք այս վերլուծութիւնը։

** Նէօլտէքէն ալ իր ծանօթութեանը մէջ اسوبار և سوارը իրաւամբ նոյն ըմբռնած է։

*** Լումայ Հանդէսի 1900 տարւոյ Յունուար ամսոյ տ. Գրքին մէջ, Երուանդ Շահազիզեանի կենսագրութիւնը Էմինի վրայ։

տաքրքրական պիտի լինէր իմանալ թէ ի՛նչ փաստերու վրայ յեցած հանգուցեալ գիտնականը այս եզրակացութեան յանգեր է ։ Կամ բնաւ․ տեղեկութիւն չունէր Արիական լեզուներէն, յայնժամ իւր արձակած վճիռն իբր չեղեալ համարելի է, եւ կամ թէ ունէր եւ գիտակցութեամբ ըսաւ, չենք տեսներ թէ հաստատուն կռուան մ՚ունեցած լինի ։

**27.** «Յղել, ուղարկել» նշանակող բառերը պհլ. ի մէջ միշտ ֆրեստակ (փ. եւ նպ. فرست) ձեւն է որուն կը պատասխանէ մեր «հրեշտակ եմ»ը, այլ այս բառը, գէթ բայի ձեւով, մեր մէջ գործածական չլինելուն, մեզ աւելի ընտել ուրիշ բառերով տուինք իմաստը ։

**28.** Բն. «վասպուրական» = Փ. Թ. واسپورکان յորում յայտնի կը տեսնուի մեր «վասպուրական»ը ։

Երկու որոշ արմատներէ բաղդուած է այս բառը․ վասէ եւ պուրէ ։ «Վաս» (փակ ասով) զենդ եւ փէհլէվի լեզուաց մէջ կը նշանակէ մեծ, իշխան, արքայազն եւ կը պատասխանէ մեր վեհին․ զի, ինչպէս ուրիշ առիթներով ալ ըսած ենք, Հ ձայնը ի հնումն Ս էր, ինչպէս ակաս որ եղած է آگاه, եւն․ ։ Իսկ հայերէնի մէջ նոյն Ս ու Հ տառաշրջութեամբ անցած կը տեսնենք բազում անգամ, այլ երբեմն ալ անփոփոխ պահուած որոյ օրինակներն այլուր տուած ենք ։ Այս կարգէն է նաեւ այս վասպուրականը ։

Գալով երկրորդ տարրին (պուր پور), սա՛ հին լեզուի մէջ որդի կը նշանակէ․ ինչպէս քաջ կ՚առուգանէ Խորենացին «Շապուհ»ի առթիւ որ ուղիղ Շապհոյ ըսել է զոր բոլոր պարսիկ եւ օտար մատենագիրք Շահ-պուր* شاهپور =Sapor կը գրեն ։

Ուրեմն «Վասպուրական» կը նշանակէ ազատազգիք, ազատազնեայք, վեհազունք եւ այլ սոցին նման բարձր դիրքեր եւ տիտղոսներ**, եւ հեռի չէ որ մեր Վասպուրական աշխարհի անունն ալ նոյն միտք եւ առմամբ դըրուած լինի, իբր վեհից եւ վեհազնեայց բնակավայր․ բայց թէ ե՛րբ եւ ի՛նչ պարագայից մէջ, որոշ տեղեկութիւն մը չկայ ։

* Մեր «Շապուհ»ը սորա մի աղաւաղեալ ձեւն է ։

** Սոյնպէս կը մեկնաբանէ նաեւ Հիւպշման ։

**29**․ Բն․ «պատ-տաՀիշն» = پاداش որ առ մեզ պատիժ եղած է ։ Բառերուն՝ ընթացք զարուց, այլ եւ այլ Հանգամանքներէ ազդուելով՝ իրենց նախնական նշանակութենէն Հեռանալ կամ երբեմն ալ բոլորովին Հակառակ իմաստի յանգիլը՝ լեզուաբանութեան մէջ , նորանշան երեւոյթ մը չէ ։ Ո՞վ չգիտեր որ միեւնոյն լեզուի մէջ անգամ բառերը, ժամանակի շրջաններուն Համեմատ, իրենց առումները կը փոխեն կամ կը յեղանակեն (modifer)․ կամ թէ մի եւ նոյն բառը , մի եւ նոյն մայր արմատէ սերած լինելով Հանդերձ , արմատակից այլեւայլ ճիւղերու մէջ տարբեր առմամբ կ՚անցնի եւ կամ առկաւ եւ Հետզհետէ կը փոխէ իւր նախնի առումը ։ Ասոնց օրինակները շատ եւ Հանապազօրեայ են ։

Ուստի՝ բնաւ զարմանալու տեղի չկայ թէ ինչո՞ւ մի եւ նոյն բառը, լեզուաց մէկ ճիւղին մէջ լաւք՝ այսինքն վարձատրութիւն առմամբ անցած է , իսկ միւսին մէջ չար , այսինքն՝ պատիժ ։ Եթէ բուն նախնական իմաստին լաւ միտ դրուի, պիտի տեսնուի որ, իրօք, երկուքն ալ մի եւ նոյն միտքը կը յայտնեն, այն է՝ «Հատուցում» կամ «փոխարինութիւն»․ կ՚ուզէ ի բարին լինի, կ՚ուզէ ի չարն ։

Զենդ pàiti (փոխարէն) եւ dâ (տալ) արմատներէն առնուած են պհլ․ paddahishn, patdahashn, padashn որ Հուսկ ուրեմն յանգած է ի پاداش արդի ձեւին ։ Մեր «պատուհասն» ալ իհարկէ այս շարքին մէջն է․ բայց առոր Համար կրնանք աւելի մօտաւոր բառ մ՚ընդունիլ իբրեւ նախատիպ այն է՝ pâiti-fraça զենդ ձեւը յորմէ պհլ․ pât-frâç եւ պ․ پاد فراه եւ پاد افراه ձեւերը կ՚ելլեն ։ Արդ՝ pât-frâç էն «պատուհաս»ին գալու Համար , միայն fr խումբը Հ ով փոխանակելու է․ կամ ասոր մէջէն ալ միմիայն ֆ ձայնը որ զեղչենք թէ յաճախ կը փոխուի Հի․ ինչպէս է ի Փրաման , ՓրաՀանգ․ եւն․ ։ Խումբին մէջէն ր ի կորուստը նոյնպէս յաճախ տեսնուած դէպքերէն է ։ Դիւրին է նաեւ որ իմաստով ալ ուղիղ կը Համաձայնի «պատուՀաս»ը pat-fraç ին Հետ․ քանզի پادفراه ը պատժել պատուՀասելու մտօք կը գործածուի պարսկերէնի մէջ ալ ։

Ամփոփելով ուրեմն կը տեսնենք որ

պատ-տաՀիշ = պատիժ

պատ-Հ(ր)աս = պատուՀաս* ։

---

* «Պատիժ»ը չգտանք Հիւպշմանի մէջ․ իսկ «պատուՀաս»ը, ուրախ ենք որ, ճիշտ մեր իմացածին պէս մեկնած է ։

Ղազար Փարպեցիի մէջ յիշուած «պատչրաւ»ը որ մինչեւ հիմա բացատրուած չէ, ինձ համար ուրիշ առաւելագոյն աղբիւր կամ ծագում չունի քան մեր پادفراه -ը որ հատուցում կը նշանակէ։ Բաղդատութեան պէտք չկայ բառը իւր նախկին ձեւին վերածելու համար, ի տարբերութեան, ո՛վ գիտէ ի՛նչպիսի պատահմանց բերմամբ, ընդօրինակողաց գրչին տակ շի փոփոխեր եւ շաղանակուեր է։ Անցած բոլոր տառերը ճիշտ եւ իրենց տեղն են, որով կ'ելլէ «պատըփրաւ», թուացնելով ձայնի ը, որ, ինչպէս գիտենք, մեր այբուբենին մէջ որոշ եւ հաստատուն ձայն չունի. երբեմն ին կը զարնէ, երբեմն վի, երբեմն ֆի եւ երբեմն այ ուի։ Որով եւ կը ճշդուի ակնարկեալ համառին իմաստը, որպէս թէ ըսած լինէր.

« Բայց այժմ ինձ դիմ կամս առնես, եւ զիմ օրէնս ունիս, եւ պըղծական երկիր պղծանես, զլործ զայդ քեզ եւ քում ազգի եւ որում դու կամիս պատըփրաւ (այսինքն՝ փոխարէն կամ ի հատուցումն) տամ մինչեւ յաւիտեան»։ Բառին բուն իսկական աղբիւրը ծանօթ չլինելուն՝ բնական էր որ անդերձին եւ իմաստին մէջ գտնելով մի պատչաճութեան նշանակութիւն գուցէ բերէին Վենետիկեան Հայրք, ինչպէս որ ըրած են, «պատչիր» կամ «պատրչիր» բառ մը ենթադրելով որոյ գործիականը լինէր «պատչրաւ»ը։ Հայ պատմագրաց վերաքննութեամբ պարապող գիտնականաց ուշադրութեանը կը յանձնենք մեր այս տեսութիւնը։

Այս ալ աւելցնենք, այս գլուխը չփակած, որ գաղափարաց շղթայումը զարմանալի պատկերներ կը հանդիսացընէ բառերու միջոցաւ։ Ահա նոր շարք մ'ալ մեր միտքը կուգայ ճիշտ նոյն կաղապարի մէջ ձուլուած եւ մի եւ նոյն կէտէն (point de départ) մեկնած որ երանգի նրբութեամբ միայն կը պէսպիսանան, այն է՝ «պատահմամբ, պատահ, պատեհ, պատիւ» որ նոյն նախնական پادفراه եւ پاد دهش ծագումը կը մատնեն եւ կը լրացնեն շղթային օղակները։

Վերի բացատրութեանց նայելով, չկրնամ անցնիլ կա՛յ նորէն տարածուիլ եւ մանրամասնելու առնից փոխանցման կերպերն ու հանգամանքները։

Սաչափը բառ լինի ըսել, բուն մեկնակէտը գտնելու համար, որ dahishne (دهش =տուրք, տուչութիւն) հին մատենագրութեան մէջ (պհլ. ի եւ միջին պ. ի), baḫsh՝ ձախսագրի իմաստով կ'առնուի. եւ ամէն ու որ գործողութիւնը կամաց ողատ կիրառութեամբ այսինքն ինքնիշխանաբար անցնի ունեցած չէ այլ յակամայս, յանդէտս, յանակնկալս, զոր պիտի ըսէինք այսօր concours de circonstances fortuites կամ hasard, եւն., հիները վերին տուչութեան կամ նախախնամութեան կը վերա-

գրէին այս ամէնը ։ Ուստի դաձիշնը մարդկային կամքէ կամ ակնկալութենէ դուրս դիպուած մը կամ բուն բառը գործածելով պատահում մըն էր , վերին եւ գաղտնի ( occulte ) զօրութեանց արտայայտութիւն * ։

Պհլ . « պատ » ( զնդ . paiti ) նախադրութիւն մ'է որ շատ իմաստներով կը գործածուի , գլխաւորները , զօ . pro, ad , ab , միանալով dahishn ի հետ , ա՛յն գաղափարը կուտայ ինչ որ մենք պիտի ըսէինք , զօ . « ըստ բերման բախտի , ըստ վերին ակնարկութեան , ըստ նախասահմանելոյն , դէպ լինէր , դիպուածով , հասանէր , պատահէր , ըստ դէպն տալոյ կամ պատահման իրաց » եւ այլ այսպիսի բացատրութիւններ որ արտաքոյ կամաց դիպում մը կամ եղելութիւն մը կը յայտնեն ։

Ահա այս դիմումներն են ճիշտ մեր « պատահար պատահ( ում ) եւ պատեհ » բառերուն ալ յայտնածը , եւ շատ անգամ քով քովի եւ ձեռք ձեռքի տուած կ'երթան .

« Պատահար մի պատահելոց է » Ժողով . Բ . 14 .

« Պատահար պատահէ ամենեցուն նոցա » Ժող . Թ . 11 .

« Պատահար է յամենայնի » Անդ Թ . 2 .

« Եթէ պատահեսցի քեզ չնաս » Ա . Թագ . ԻԸ , 10 , եւ այլ բազում տեղեր ։

« Պատեհ » ին վրայ աւելորդ է խօսիլ . սա՝ « պատահ » ին մի հագիւ այլակերպեալ ձեւն է , թէ՛ չէնքով եւ թէ իմաստով ։

Իսկ « պատիւ » ը , թէեւ նշանակութեամբ մի քիչ հեռացած կ'երեւի , այլ ի խորն՝ դարձեալ նոյն պաsաւ( ruñ )ն է վերջին վանկի անկմամբ պաsւ կամ պաsաւ ** = պատիւ որ է վարձ կամ փոխարինութիւն ( բարձ՝ չուք՝ բարձրութիւն՝ եւայլն ) ։

« Խօսեցաւ Տէր ընդ Ահարոնի եւ ասէ . Ես ահաւասիկ ետու քեզ զպահեստ պտղոց իմոց . յամենայն նուիրելոցն ինձ յորդւոցն Իսրայէլի՝ քեզ ետու զայն ի պատիւ , եւ որդւոց քոց յետ քո » ։

Թիւք ԺԸ . 8 ։

Ուր յայտնի կ'երեւի « պատիւ »ին ի vard կամ ի փոխարէն նշանակութիւնը ։ Իսկ հետեւեալ համարին մէջ կը տեսնենք որ մեկնութիւնը իւր հետն է .

« Պատիւ ետուն ինձ վասն վարձուց » .

Տովբ . Բ . 22 ։

Նոյնպէս եւ հետագայ համարներուն մէջ .

* Ծնունդ , բաշխ , բաշխ բախտի , Հրաման ։
** Ասյս ամենուն մէջ ւ տառը ֆ ընթերցուածով ։

« Տուր նմա պատիւ ըստ արժանեաց »։

Սիրաք Ժ. 31։

« Որ բարւոք վերակացու լինին երիցունք՝ կրկին պատուոյ արժանի եղիցին. » Ա. Տիմ. Ե. 17։

Եւ ապացոյց որ իսկապէս վարձու կամ փոխարինութեան կ'ակնարկէ այս տեղ ալ « պատիւ »ը՝ երկու տող ստորեւ կ'աւելցնէ.

« Բանզի ասէ գիր.

— Մի՛ կապեսցես զդռուկ եզին կալոտւոյ, եւ՝ Արժանի է մշակն վարձու իւրոյ »։

Ուրեմն՝

մի գեղեցիկ եւ բազմանշան ընտանիք կամ խումբ մը կը կազմեն մեր

պատիժ

պատուհաս

պատասխան (ար, ում)

պատեհ

պատիւ

որոց ամենուն հիմն է « պասաշ » եւ « պասիրաւ* »։

**30**. Բնագիրը կը դնէ « մես կամկարթար » զոր հայապէս իմանալու համար պարտինք մի քանի յեղանակութեանց ենթարկել։ Հնագոյն չրջանի Ս-ն գիտենք որ միջին, այսինքն՝ պահլաւեան չրջանի մէջ Հ դարձած է, չատ փոքր բացառութեամբ. զօ.

տաս=դահ, գաս=գահ, ռաս=ռահ, եւն.։

Այսպիսի պարագայից մէջ, կը տեսնենք որ, հայերէնը մէկ չրջանի միայն կապուած չէ. այլ դարերու երկար տեւողութեան մէջ կատարուած ձայնաչրջութեան ամէն երեւոյթը եւ տարիքը կը յիչեցնէ, թէպէտեւ առաւելապէս Թոյլ՝ միջին (Սասանեանց վերջին) չրջանին կը պատասխանէ։ Այսպէս ուրեմն ունինք.

գաս = գահ,

ակաս = ական,

պաս = պահ**, եւն.։

Իսկ հինէն

տաս = տաս(ն) = տահ.

---

* Հ հնչմամբ։

** Նոյն « պաս »-ն է Թերեւս և « սպաս »-ը, եթէ « զպաս » (օր. զ-եղծ, զ-եռ, զ-չար-իմ, են ) յօրումն ս-ի փոխուած լինի զ։ Ցիրաւի՝ « սպաս »-ը ուրիշ նշանակութիւններովը

Վազ = Վազ* = կուժան.

Երբեմն ալ, փախանակ նոյնութեամբ պահելու Ս գիրը, ինչպէս կը ներէր մեր այբուբենը, բուն հայկական ծ, ձ տառերով փոխանակած են, ինչպէս.

Մաս = մեծ** = նոր. մեհ,

Սախ = դժի եւ ձի։

Գալով «կամկարթար»-ին, աս մեր «կամակար»-ն է (դամադիտ՝ ինքնիշխան՝ կարող՝ հզօր) որուն վրայ «թար» բաղդատական մասնիկ եկած է։ Մեր յիշածներէն «վատթար»-ը միայն կը տեսնենք սոյն համատիպ կազմութեամբ։

Եղիշէին «ապարթանեմ»-ին վրայ Արարատի մէջ*** մեր յօդուածը երեւնալէն յետոյ գիտնական Հիւպշմանին**** գրածը տեսանք մի եւ նոյն նիւթին վրայ։ Անկեղծութիւնը պարտք կը դնէ խոստովանիլ որ ոչ նուազ հիմնաւոր գտանք նաեւ նորա տեսութիւնները։

Մենք «ապարթարեմ»-ը առաջարկած էինք, առնելով «ապարթար» (بتر) բաղդատականէն որ յաճախ ամէն ուրեք կը տեսնուի. իսկ նա تر ձեւէն բերելով կ'ուզէ պահել «ապարթամ»-ը։

Երկու հայեացքներն ալ ունին իրենց պաշտպանելի կողմերը։ Մէկը تر-ը հակադրուելով بتر-ին, միւսը՝ ترن՝ فرون-ին։ Թէպէտ առաջինին,

---

հանդերձ, ունի նաեւ պահ-ելու՝ պահպանելու՝ խնամ տանելու՝ միտ դնելու պատուէրներն ալ։

«Պարտ և պատշաճ է այնոցիկ որ զօրէնսն ի ձեռին ունիցին՝ իրաւանցն ճշմարտիւ պահպանել։»

Ոսկ. Մեկն. Ես.
Հատ. ընթ. Հ. Թ. Վ.-ի Թոռնեան
Վիեննա, 1891. եր. 198։

Ուր յայտնի են միտ դնել, ուշ ունել կամ պահել պահպանել զիրաւունս իմաստները։

* Ցանցանքի մօօք, զօ. «Չգտանեմ ինչ վնաս յառնս յայսմիկ». Ղկ. ԻԳ. 4։ —— «Ո՞յր վնաս է. սորա՞ թէ հօր և մօր իւրոյ զի կոյր ծնցի»։ Յովհ. Թ. 9։ — «Բազում և ծանր վնասս դնէին» Գործ. ԻԵ. 7։

** Տես նաև Harlez (Manuel du Pehlevi) 282. և Darmest. Etudes Iraniennes Ա. 76։

Հիւպշմանի մէջ չգտանք։

*** Արարատ, 1903, Թգ. — Սեպտ., ը—թ Հ. եր. 725—6։

**** Armenische gramm. I. 105.

ինչպէս ըսինք․ աւելի հանգիստ ենք՝ քան վերջինին որ ապական կայ پازند-ի մէջ։ Լաւագոյն է ուրեմն պահել Եղիշէին բնագիրը, քանի որ սխալ չէ (Տես նախ. ծան. 140)։

**31**․ Բնագրին փարսի թարգմանութեան մէջ երկու բառ կը տեսնենք ուշադրութիւն հրաւիրող سپوختن եւ جدتر։

Զատ-թարին մէջ զատ-ը որ եւ զա°տ, տարակոյս չունիմ թէ մեր զատ-ն է (որից, անջատ) որոյ վրայ եկած է թար բաղդատա-գերադրականը, ինչպէս տեսանք ի «վատթար», «ապարթար», «կամկարթար»։ Սոյն յօրինուածով, եթէ ներելի ըլլար, պիտի ըսէինք «զատթար»։

Գանք سپوختن-ին որոյ բայարմատներն են سپوخت եւ سپوز կամ سپوز։

Մենք աստից համապատասխան ունինք (2-դ ձեւէն)՝ «զբօս» եւ «սպուժ», յորոց «զբօսնում» եւ «սպուժեմ»։ Արդ՝ եթէ լաւ մտադրուի այս երկու բայերն ալ մի եւ նոյն միտքը կը յայտնեն, առանց թեթեւ երանգաւորութեամբ մը։ «Սպուժեմ»-ը, յայտնի է որ, յամել՝ յապաղել՝ յուշանալ, կամ ամփոփ բառով՝ ցնցնալ ըսել է։ «Զբօսնում»-ն ալ որ divertissement (էյլէնմէք)-ի մօտ կը գործածենք այժմ, յանձուկ միտս, դարձեալ իւր նախնի նշանակութենէն ծագում առած եւ ընդարձակուած է, այն է՝ կասել յամել ուրեք եւ ժամանակ անցընել։

Մենք այս բառը, այս վերլուծութեամբ, չատ տարիներ առաջ, հոգելոյս Կ. Եպս. Նարպէյի հետ հակաճառութեան մ'առթիւ, մանկանց ըրած էինք․ արդ՝ մեծ բաւականութեամբ տեսանք որ գիտնականին Հիւպշման ալ նոյն լուծումը տուած է։

Հետաքրքրական է այստեղ հայերէնի յարմարութիւնը՝ նոյնութեամբ հանելու բնագիրը։ Ուստի դրինք գրեթէ բառ առ բառ, այնպէս ինչպէս որ էր պատմութեան մէջ որոյ ողորկ յստակ ոճով խօսատն է.

« Քանզի Արտաւան հզօրագոյն է (քան զմեզ), չէ մարթ անսաստել նմա եւ նորա հրամանէն դուրս ելլել »։

---

لاوه كريها خواهشن ام اژ اوي اورتر دادار اورمزد

« Ամենայն խնդրութեամբ կը հայցեմ այն ավարթար Դատար Որմիզդէն »։
Խորդա—Աւեստա — Գլ. փաթիթ (զղջում). — Փազէնդ. Թրգմ.։

**32**․ *Բն.* «*Արտադակ*» *'ի բայէն* «*արտադան(օ)*» *որ կը նշանակէ՝* šhkel šhkrtel, sazel sarfel, *կամ բուն բառը գործածելով՝* jarharel zarharel (*ի յարդ ի զարդ ածել*)․ *քանզի* «*արտադ*»*ին ալ արմատն է* «*արդ*», *կամ ամփոփմամբ՝* «*արդ*» *որ մեր* «*յարդարեմ*»*-ին ալ արմատն է․ ինչպէս որ* patrast *եւ* païrast-*ն ալ՝* «*պատրաստեմ*»*-ին որոյ նորագոյն ձեւն է* pirastan։

**33**․ *Գնտակ մը կը դնեն գետինը եւ ձիաւորները արարչաւ մօտէն անցնելով ճոկանով կը զարնեն եւ կը թոցնեն զայն շատ հեռուները․ Տեսակ մը* Cricket․

**34**. *Բնագրին մէջ այս բառը* «*Վին-Արտաշիր*» *գրուած է։ Որչափ ալ հետազօտեցինք՝ յաջող եւ որոշ եզրակացութեան մը չյանգեցանք թէ ի՛նչ է ստուգիւ այս* «*վին*»*-ը եւ թէ ինչո՛ւ Արտաշրի անունը կը կրէ․ Զգիտեմ* Nöldeke *ո՛ւրկից առնելով* Jagen (*որս*) *կը թարգմանէ․ իւր օրինա՞կն այնպէս ունի թէ ինք մի այսպիսի բացատրութիւն գտած է, եւ այս դէպքին՝ պէտք էր անշուշտ մի ծանօթութեամբ լուսաբանէր խնդիրը։ Մեր՝ Խօսաւար Փարսի առաջնորդը, յետ* «*Վին-Արտաշիր*» *դնելոյ ի թարգմանութեան՝ կը յաւելու ի լուսանցս․* «*Անուն է խաղի զոր* Čars *կը կոչեն եւ որոյ դիւտը կ'ընծայուի Աբու-Զարջամհարին*»*։

*Այս անձը՝ իւր դարուն մէջ դերահռչակեալ հանճարեղ եւ հնարիմաց մի* vezir *էր, խորհրդական Խօսրովու Անուշաւանայ Պարսից արքայի։*

*Հնդկաց Դեւսարիմ արքայն իւր Դրան իմաստուններէն մէկուն հետ շատրինջ խաղի լուծումն առաջարկած էր Անուշ-րուանին, պայմանաւ որ եթէ չկարողանայ մէջէն ելլել՝ բաժ եւ սակ վճարէ նմա (հարկատու լինի)***։

*Երբ ի տարակուսի կայր Անուշուան եւ շուարեալ էին խորհրդականք, յառաջ կանգնեցաւ Աբու-Զարջամհար եւ վստահ եւ խրոխտ չեչտով միամրտեցուց ամենն ալ թէ պայմանեալ ժամանակէն շատ առաջ կարող է ոչ միայն Հնդկաց արքային առեղծուածը լուծել, այլ մի նոր եւ ինքնահնար խաղ ալ ինք անոր առաջարկել ի լուծումն։ Արդարեւ ալ կէտ առ կէտ կատարեց իր խոստումը, շատրինջի առաջին ձեռնարկին* (partie) *մէջ՝ տարաւ (յաղթեց) Հնդկաց իմաստունը եւ իւրահնար խաղն ալ տուաւ անոր որ տանի Հնդկաստան։ Իւր առաջարկածն էր* «*Նարտ*»*-ը*

---

* *Մեր տեղեկութեան միջոցին ալ անկէց աւելի տեղեկութիւն մը չկրցանք քաղել խօսաւարէն։*

** *Հին ատենները, թագաւորաց մէջ, իբրեւ այսպիսի առեղծուածներ առաջարկել սովորութիւն էր։*

*զոր ի պատիւ առաջին Արքայից Արքայի Սասանեանց՝ « Վին-Արտաշիր » կոչեց ։*

*Այս է, այս խաղի մասին, Արեւելեայց մէջ հաստատուած զրոյցը* (légende) ։

**35**. *Բն. « ջիր վէ վարդակ » զոր Փ. Թ.ը* [illegible] *կը դնէ ։*

*Արդ՝ « ջիր »-ին համար տարակոյս չկայ թէ իսկապէս մեր « գեր »-ն է, ինչպէս ըսած ենք (Պատմ. եր. 16, ծան.) ։*

*Խնդիրը « վարդակ »-ին վրայ է թէ ի՛նչ է եւ թէ ինչո՛ւ « պանծ » թարգմանեցինք մենք, եւ միացնելով երկու որիշ եւ անջատ եզրները՝ « գերապանծ » գեղեցիկ բառը եյաւ հայերէն ։ Առանց մանրամասն բացատրութեան կարելի չէ ըմբռնել այս կէտը որ շատ կարեւորներէն է եւ կ՚ընծայէ մին այն յոյժ հետաքրքրական եւ հիանալի յեղաշրջութեանց որք ա՛յնչափ գեղեցիկ գոյներ՝ ձեւեր եւ պէսպիսութիւններ գիտեն տալ բառերու ։*

*Մի երկար շարք բառից ընդ առաջ կ՚ելլէ մեզ, այս առթիւ, որք, ի վերին երեսս, ո՛եւ է կապ եւ աղերս չունենալ կը թուին իրարու հետ. այլ ի մօտոյ շօշափելով զերերը՝ կը տեսնենք որ ա՛յնպիսի մութ եւ հազիւ նշմարելի կապերով եւ ա՛յնպէս սերտիւ իրարու հետ կապուած եւ աղխաղխուած են որ բա՛ւ է միայն առաջին օղակին բանալին ձեռք անցընել. միւսներն ինքնին կուգան իւրաքանչիւրն իր տեղը գրաւել անխտոր եւ լրացնել շղթայն ։*

*Փորձենք բացատրել, թէ եւ ոչ դիւրին ։*

*Մինչեւ հիմա տեսնուած օրինակներու եւ համգիտութեանց հետեւելով, « վարդակ »-ին համդէպ պէտք էր որ կամ նոյնը եւ կամ « բարդակ » ձեւ մ՚ունենայինք մենք ։*

*« Վարդակ »-ը նոյնութեամբ չունինք, այլ սակայն « բարտ » արմատ մը կրնանք նշմարել մի քանի չինուածոց մէջ ։*

*Առնենք, զօ. ամբարսակ-ը որոյ նշանակութիւնն յայտնի է (տեղի մարձր, բուրգ, աշտարակ, թումբ) ։ Թօթափենք առաջին եւ վերջին վանկերը, առաջինը՝ իբրեւ մասնիկ եկամուտ ամ որ եւ ան եւ իսկապէս համ որ իւր զուգորդ « համբարտակ »-ին վրայ յայտնի կը տեսնուի ։ Իսկ երկրորդը՝ իբրեւ պահլաւական ածանց (ակ) որ ամէն տեղ կը տեսնուի, ինչպէս են գումարսակ, հրովարսակ, վանդակ (բանտակ), ֆանդակ, եւն., եւն. ։ Որով կը մնայ պարզապէս « բարտ » ։*

*Արդ՝ ի՛նչ է այս « բարտ »-ը ։*

*Առաջնորդող թելը գտնելու համար. երկու իրարմէ անբաժան գաղափարներ պէտք ունինք այս տեղ ի մտի պահելու, մին կուտելու՝ դէ-*

դիզելու, շեղջելու, շտեմարանելու։ Միւսը՝ վերանալու՝ բարձրանալու՝ կանգնելու։

Այս երկու գաղափարները անկախաբար եւ համաժամանակեայ մի եւ նոյն գծի վրայ չեն, այլ ստորակարգութեամբ կապուած են միմեանց հետ. Բուն առաջին եւ իշխող գաղափարն է դիզելու կուտելու, իրարու վրայ դնելու գաղափարը. իսկ բարձրանալը նորա բնական հետեւանքն է. զի ինչ որ շեղջ շեղջ իրարու վրայ կը դիզուի՝ բնականաբար կը բարձրանայ։ Գաղափարաց այս վերլուծութիւնն է որ պիտի տայ ամբողջ խուզումի մը բանալին։

Յիշեալ «ամբարտակ» որմէ «բարտ»-ը զատեցինք, բեր ալ. ձեւին մէջ անցած է (որոյ պարսկերէնը կը լինի ճիշտ «ամբարտակ»), ի բայից انباردن եւ انباشتن որոց երկուքն ալ ժողովել՝ դիզել՝ լնուլ կը նշանակեն. կամ բուն բառը գործածելով ambârden hambârden (انبار)։

Նոյնն է նաեւ բարդել ը քանզի որայից շեղջին կ'ըսուի «բարդ»։

«Եւ այրեաց զօրանն. եւ զյառաջագոյն հնձեալն, ի բարդից մինչեւ ցկանգնաւորն»։ Դատ. ԺԵ. 5։

Յայտնի է որ բարդուելուն պիտի հետեւի բարձրանալը. ուստի «բարդ»-էն մեկնելով կը տեսնենք որ կատարելապէս կը լուսաբանուի ամբարտակին կազմութիւնը, այն է բարդ ի բարդ իրարու վրայ հաստատուելով բարձրացած մի ահագին շէնք։

Նոյնն է նաեւ «բերդ»-ը, մի ձայնի եւ եթ փոփոխութեամբ։

«Ամբարտակ»-ը կը մեկնէ նաեւ «ամբարտաւան»-ը՝ «ամբարհաւաճ»-ը զորս կ'իմանանք իբր ամ-բարտ-(հ)աւան եւ ամ-բար(ա)-հաւ(ա)ճ. այս տեղ իմաստը բարոյական բարձրութեան աւելի հակելով, իբր՝ հաւանեալ եւ հաճեալ ի բարձրութիւն (գոռոզ եւն.)։

Նոյն «բարտ» կեդրոնին վրայ կը դառնայ նաեւ «հպարտ»-ը, աւելադրութեամբ եւ լծորդափոխութեամբ տառից, ինչպէս Հիւպշմանն ալ կը յիշէ։

Այս շարքին մէջ կու գայ բնական կերպով կը զետեղի նաեւ «ամբառնամ»-ը որոյ երկրորդ բայարմատն է «ամբարձ» եւ պարզ եւ մերկ արմատ՝ «բարձ» որ կը մատնէ իսկոյն զ«բարձր»։

Ուրեմն ր-ի կարեւորութիւնը երկրորդական է. կրնայ ռ-ի փոխուիլ Ձ-է առաջ (ինչպէս հայերէնի մի օրէնքն է), եւ կամ իսպառ ալ անհետիլ

ինչպէս է 'ի բառս (վերամբառնալ, բարձունք, բարձր, հարթ, ևն։)* ։

Սոյն « բարձ »-ի մի այլազանութիւնն է նաև « պարծ »-ը, եւ տ-ւելի յառաջ մեկնով պիտի ըսենք, նաև՝ « պանծ »-ը, որոց բոլորը մի եւ նոյն լեզուի եւ մի եւ նոյն գաղափարի շուրջը կը դառնան ։

Հաւաքելով ուրեմն ընտանիքին ցիր ու ցան անդամները՝ կ'ունենանք հետեւեալ ամբողջ գերդաստանը.

(Հ) Ամբար (եմ)

(Հ) Ամբառ (նամ)

(Հ) Ամբարտ (ակ)

Ամբարտ (աւան)

Ամբար (հաւան)

Ամբարձ, բարձ, բերձ, բարձր, պարծ, պանծ,

Բարդ, բերդ**։

Ուրեմն բնագրին « ջեր-վարդակ »-ը « գերապանծ » հանելով ի հայ՝ բուն բառերը գործածեցինք ; ոչ թէ թարգմանել ։

**36.** Nöld. եզակի կ'իմանայ, եւ «քշեց վրայ հասաւ Արտաւան» քսելով՝ ձիաւորութեան գաղափարը Արտաւանի՛ն միայն կը յատկացնէ, Արտաւանին ընկերացող այրուձին չյիշելով բնաւ ։

Իսկ մեր առաջնորդը այրուձին ալ հետ առնելով բացայայտապէս կ'ըսէ « եւ Արտաւան եւ հեծեալք վրայ հասան (հասանին) »: բնագիրը կը դնէ ։ « եւ Արտաւան հեծեալ վրայ հասան »։

Թօմաճեանին հետ կրնայինք այսպէս եւ փոխել առնելով թէ բնագրին մէջ « եւ » շաղկապի բացակայութիւնը եզակին միացնել կը թուի

---

* Նշանակելի է որ պ. « բուրգ » բառ մ'ալ կայ, առ պուէտս յանձնուած, որ բարձր կը նշանակէ, մանաւանդ հատակի վրայ խօսելով, և որ « բերդա »-էն օտար չթուիր, նոյն ընտանիքէ է անշուշտ ; վերջին ձայնի միայն փոփոխութեամբ որ յաճախադէպ է։

** Ներեւս է « բուրդ »-ը, խճճուած՝ խառնուած՝ շեղջուած-ի գաղափարէն մեկնելով, զի « բերդ »-ը « բուրդ »ի իմաստով գործածուած կը տեսնենք Ոսկ.ի մէջ, եթէ ընթերցուածն ուղիղ է ։

« Իսկ եթէ լռիցեմք զկառաչ ուրուք՝ յորժամ կրկնօք բառնայցէ, և զայս ընդ երկինս ամբառնայցէ, և ի բերդղեղ շրջեսցի, և ցնցոտիս պատեալ, անգէտն փաղփաղակի խաբեսցէ, և գրթիչ և կեղծաւոր կոչիցես » (Ոսկ. Մեկն. Գաղ. — Հատ. Ընթ. եր. 184) զոր Հ. Թ. կը մեկնէ ի ծանօթութեան « Հերարձակ, մազերը երկայն ձգած » — ընենք տէրվիշ որոց մազերն ալ խճճուած թողուած են անփութօրէն ուսերն ի վար ։

Չգիտեմ ուրիշ տեղ ալ կա՞յ այս իմաստով ։

գործողութիւնը․ սակայն նա՝ վերջին «հումանդ» բառին յոգնակի ձայնն առարկելով պնդեց իւր թարգմանութեանը վրայ, կը տեսնենք որ երկու կերպերն ալ պաշտպանելի փաստեր ունին եւ նիւթն ասկէց աւելի կարեւորութիւն չունենալով, մենք մեր առաջնորդին հետեւեցանք պարզապէս, ենթադրելով, Փ. Թ.-ին հետ, թէ չաղկապը ինկած լինի։

**37.** Խոժոռել արտմտելու մօտ է այս «դժուարիլ»-ը․ եւ տե՛ս, ո՛րպիսի հարազատութեամբ, կամ ճիշտն ըսելով՝ նոյնութեամբ կը հանէ հայերէնն զբնագիրը որ ունի «դուշ-խար»։

Արդ՝ մօտէն վերլուծելով կը տեսնենք որ զնդ․ hu-ar, khuar որոյ սկզբնական ձեւն է hu-â-thra որ կը նշանակէ դուր, դիւրին, ախորժելի, հաճելի, տուած է մեր «ուար»-ը, Սորա վրայ գալով دش (դուժ*—դժ) եւ խ-ն իյնալով ձեւացած է պ․ دشوار հյ․ դժուար։ (Հիւպշմ․ Տարմստ․ եւ Հարլէզ)։

Սոյնպէս ձեւացած է նաեւ մեր «դժպհի»-ն որ կը լուծուի 'ի դժ եւ 'ի պհի որ է պեհ (պ̣) որ եւ վեհ, որով դժպհի կը լինի «ոչ-բարի»։

**38.** Այս տեղ բնագրին մէջ «առպ»ի յիշատակութիւն չկայ, այլ պարզապէս սուսխա կը գործածէ որուն մէջ, ձայնաւորները մի քիչ խառնելով, մեր «ձի» ձայնն յայտ ակներեւ է։ (Տան․ 25 եւ 50)։

**39-40.** Այս երկու բառերուն տեղ թէեւ աւելի ընտել եւ սովորականներ ունինք հայերէնի մէջ, զօ․ չարակնութիւն եւ դժկամակութիւն կամ չարակամութիւն․ այլ մենք, բնագրին հետ կարելի եղածին չափ նոյնութիւն պահելու համար, دش چشمی -ն «դժակնութիւն» եւ «վատակամակի»-ն՝ «վատկամութիւն» թարգմանեցինք։

**41.** Բնագիրը, փոխանակ դէպք՝ եղելութիւն եւն․ ըսելու, «դատաստան» բառը կը գործածէ․ դատաստան չիգոն (چه گون) էր․ այսինքն՝ «ինչ հրաման որ տուած էր» կամ «ինչ կարգադրութիւն որ հրամայուած էր»։ Փ․ թարգմանութեանն մէջ դատաստանի տեղ դատաստան կը կարդանք, որ նոյնին համառօտեալ մի ձեւն է։

Արդի լեզուի մէջ داستان բառը հին دادستان ին դատաստանական առումէն բաւական հեռացած է եւ մի՛ միայն դէպք՝ անցք՝ եղելութիւն իմաստով կը գործածուի այժմ․ այլ հինը իւր արմատական բուն իմաստը (դատաստան, վճիռ) միշտ պահած է եւ այն հիմը յիշեցնելով է միշտ որ

---

* Սոյն «դուժ» (դուշ)-ն է նաեւ մեր միւս «դուժ»-ն 'ի «խուժդուժ» որ եւ տաճկին ալ գործածուած կայ։

ինչպէս կուտայ այժմու իմաստն ալ։ Նաեւ دستان-ն ալ որ արեւելեայ քերթողականին մէջ մի առանձին պատկեր կը կազմէ, ոչ այլ ինչ է, եթէ ոչ դաստան-ին սեղմեալ մի ձեւը, քանզի երեւելի անցից կամ գիւղաց վրայ կը յածի միշտ دستان-ը։

Պարսկ. մի հին՝ խարխլած եւ պակաս ձեռագիր մը կայ մեր մօտ. Տէպթուրի մը նուէր, որ կրօնական խորհրդութեանց վրայ փուրսիշ եւ պատասխանով յօրինուած մի հաւաքածոյ է (casuistique), հաւանականաբար Վէնտիտատ* էն քաղուած, յորում. հետաքրքրական է հայու մը համար. ամէն հարցման վերջը տեսնել چه دادستان ? (դատաստանն ինչ է). وجر چون ? (վճիռն ինչ է).

Մենք ալ մեր տեսակէտով կը կրկնենք հարցումը թէ — վճիռ-ն ինչ է։

— Պահլաւերէնի մէջ «վճր» կը լսուի բառը, բաղաձայններուն ամէն ձայնական չափժում տալու կարելիութեամբ։ Ուրեմն մարթ է բառը փակ ա-ով վաճառ ալ կարդալ, վրճառ ալ, վրճիր ալ։ Հիւպշմանը կ'ըսէ թէ այս տեղ ռ-ի տեղ ր-ի կ'սպասէր։ — Այս բաղաձայններու փոխանակութեան մասին ալ, որչափ մենք տեսանք, հաստատուն օրէնք մը չկայ, այլ մեծ պէսպիսութիւն եւ զանազանութիւն կը տիրէ։ Մի եւ նոյն բառը, կը տեսնենք որ, մի եւ նոյն կամ մի քիչ տարբեր իմաստով՝ այլ եւ այլ մերձաւոր տառերով գրուած են։

«Գազ» արմատէն ունինք, զօ. ընտիր շարք մը բառից որ էապէս հիմնապէս նոյն մնալով հանդերձ նախնական նշանակութեան մէջ, գրի մը՝ ձայնի մը փոփոխութեամբ այլ եւ այլ հիանալի երանգներ առած են (եր. 176 — Ծան. 88)։ «Գազ»-էն ձեւացած է գէզ, գեզ, գիղ, (գզեմ). գիժ. կիժ. կիճ. կեզ (կիզ-ում)։ Եւ «գեղ» արմատէն մեկնելով ունինք գեղեց (իկ) որ անտարակոյս գեղց-ի տարածեալը պէտք է լինի, քանի որ ունինք գեղծ 'ի սգեղծ (այս. ագեղ, անշնորհք), եւ խեղծ 'ի սխեղծ։

Ինչպէս ունինք շտապ եւ ստէպ, դզի եւ ձի, ան՝ վախ՝ պախ եւ պակ եւ այլ այսպէս շատեր որ ուրիշ առթիւ պիտի տեսնենք։

---

* Ըստ փարսիներու աւանդութեան Աւեստայն 21 մասէ կը բաղկանար որոց երեքը միայն կայ այսօր. Վ ե ն դ ի դ ա դ, Վ ի ս պ ա ր ա տ և Ե ա ս ն ա որ և յ ա ս ն կամ յ ա զ ն (եսն, եզն, եզէշն)։ Ասոնց կարգին է նաեւ Խ ո ր տ ա ւ ե ս տ ա որ օրհներգութեանց բովանդակութիւն մ'է և մի քանի մեկնաբանականներ ալ փազենդ և փէհլեվի լեզուով, զոր. Դենկարտ, Դատաստան Դենի, Բունդահիշ, Արդա-Վիրաֆնամա, Շայաստ, վէ լա շայաստ, Նիրանգաստան. Անդարձ Ադրբադայ, Մայնուխրատ, են. որք բաւական հարուստ մատենագրութիւն մը կը կազմեն։

*Գալով « վճիռ »-ին, ասոր ալ ռ-ն հաստատուն չէ, քանզի կան բառեր որ ռ-ով ալ անցած են ր-ով ալ, զօ. ռաւմ եւ րաւմ, ռահ եւ րահ (ճամբայ, ապարահ), ռազմ եւ պատերազմ, եւ այլն։*

*Աւելի զգալի օրինակ մը տալու համար ըսենք թէ նոյն վճիռ-ին մի այլ ձեւ եւ ընթերցուածն է մեր վճար-ը որ իր յետոյ առած երանգները թօթափելով կ'երթայ կը նոյնանայ նշանակութեամբ ալ վճիռ-ին հետ։ Քանզի ի՞նչ է վճարելը. — Գործ մը ի գլուխ հանել՝ վերջացնել։ Ի՞նչ է վճիռը. — Գործի մը վրայ վերջին խօսքը ըսել ըստ որ անդին այլ եւս բան չկայ ակնկալելի*։*

**42.** — *Այսինքն՝ «Թողութիւն պէտք է խնդրես»։ Այս կտորը մեզ չափազանց յոգնեցուց մինչեւ որ վերի իմաստը պարզեցինք։* Nöldeke *կ'ըսէ. «արդ՝ քու թողութեանդ համար խօսէ՛ եւ զղջում զգա՛»* (nun sprich zu deiner Entschuldigung und zühle Reue»։ *Տեղւոյն եւ իմաստին շատ յարմար եւ պատշաճաւոր թարգմանութիւն։*

*Մեր օրինակը ա՛յնքան սեղմ եւ անպաճոյճ բառերով է որ մեր Փ. տպագրողն ալ անիրաւել չէ հասկացեր եւ մութ եւ շփոթ թարգմանութիւն մը տուեր է։ Սոյն գործոյն մէջ մեզ ընդ առաջ ելած այսպիսի հարիւրաւոր հոգեհանջ դժուարութեանց վրայ ընթերցողին մի աղօտ գաղափար տալու համար՝ մանրամասնենք քիչ մը այս կտորը։*

*Մեր բնագիրն ունի.*

*«Ինուշ» զոր Փ. Թ.-ը* كنون *(այժմ) կ'իմանայ, եւ է արդարեւ։*

*«Բուզիշն»** ներէլայութիւն՞մ = զոր «առաջին» կը թարգմանէ՝ Պատահարը որ չէ։ Հաւանականաբար* Nöld.*-ին իմացածին պէս, «արդ՝ խօսէ՛» պէտք է իմանալ։ Թէպէտ եւ առաջինն զէմք է բայը։*

*«Պատիկ-մանդկ»։ Ահա մեծ քար գայթակղութեանց զոր չհասկանալով Տէպթուրը կը գնէ* پدرانه *(հայրաբար). այլ կը փութայ ուղղամտաբար նշանակել վրան թէ տարակուսական է։ Այս իմացուածով խօսքը կը լինի.*

*«Եւ այժմ զարմանքն ըսեմ քեզ հայրաբար եւ մտիկ ըրէ՛»։*

*Բայց այս իմաստը յարմարողաբար է եւ ոչ բառերուն բուն հոգիէն բղխած։ Տեսանք որ* گوید *-ի* mode*-ը եւ դէմքը շատ հաստատ չէ.* پدرانه

---

* *«Ձի մի՛ կարծիցի ումէք չկարիցէ վճիռ իրացն առնել»։*

*Ոսկ. Մեկն. Ես. Հատ. ընթ. եր.* 238

** *Ի «բուզ» արմատէն որ է մեր բ ո յ ժ ը (դարման, թողութիւն), որ և բ ո յ ծ. եւ և անշուշտ բ ո յ ս։*

օխալ ընթերցուածի արդիւնք, եւ انكار -ը մտիկ ընել՝ խելամտել նշանակերու համար բռնաբարութեան պէտք ունի։

Այլ եթէ «պատիկ-մանակ»-ը որուն մէջ پدر -ի տարերքը բնաւ չկան, աւելի պարզ ձեւի մը վերածելով կարդանք «պատ-ման* (ակ)» որ «պայման»-ին նախնական ձեւն է, մնացած բոլորին իմաստը կը ճշտուի եւ կը չափուի. انكار ալ՝ յայնժամ իւր բնական «համարել» նշանակութեան կը դառնայ եւ խօսքը լրովին կը պատասխանէ Nöldeke-ին իմացուածին. այն է՝ «թողութիւն խնդրելը պայման համարէ՛ քեզ»։

Մեր հմուտ Տէսթուրը կատարելապէս համաձայնեցաւ մեզ այս մասին, երբ իրեն պարզեցինք մեր վերլուծութիւնը։

**43.** Բն. «ան-բին-բու դին» անտես լինել աչքէ, անհետանալ, չքանալ, զոր մենք, իմաստին աւելի ուշ դնելով վտանգ թարգմանեցինք։

**44.** Այս համարը Nöld. մի քիչ տարբեր կերպիւ կուտայ նա կ'ըսէ. «Ո՛րչափ պիտի տեւէ դեռ ժամանակն իշխանաց որք կը տիրեն այլ եւ այլ աշխարհներու վրայ։ Ի՞նձ արդեօք թէ իմ որդւոցս եւ կամ մեր ազգատոհմին վիճակեալ է հասնել աշխարհի միահեծան տէրութեան»։

**45.** Նոյն հեղինակը դարձեալ այս համարին մէջ գործածուած «երկոտասանք» բառին առթիւ գրել կուտայ թէ Duagdhn է (անծանօթ բառ) զոր ընդօրինակողք տառի մը աւելացրութեամբ دوازده բրած են եւ թէ, կ'ըսէ, անկարելի է որ երկոտասան աստղք** միահաղոյն վար իջնան։

Իրաւ է, սակայն հարցումը Եւթնից եւ Երկոտասանից վրայ լինելով՝ պէտք է որ պատասխանին մէջ ալ այս անուններ յիշուէին։ Ուստի բնական կ'երեւի ինձ որ այս բառը իսկապէս duazdehn լինի, ինչպէս մեր օրինակին մէջ ալ կը տեսնենք։ Եւ որովհետեւ պատճառ մը չունինք մեր օրինակը նուազ ուղիղ համարելու քան Nöldeke-ինը, շատ հաւանական է որ այս բառը նորա օրինակին մէջ խանգարում կրած լինի ընդօրինակողաց կողմէն։

Գալով աստեղագիտական ճշտութեանց, այսպիսի ախտարքական գրուածոց եւ քաղդէական լեզուի մէջ արդի գիտական ծանօթութիւններ որոնելը՝ աւելին եւ անկարելին պահանջել է անշուշտ։ Փոխանակ ու-

---

* Harlez տող. 223 և
Darmest. I. 67.

** Իմա՛ համաստեղութիւնք (Constellations)։

ընմէն գիտականօրէն ուղղել՝ ճշտել՝ բացատրել ջանալու, որ իմ նպատակէս դուրս ժամավաճառութիւն է. կը շատանամ ես տալ իմ բնագիրս ա՛յնպէս ինչպէս է, որ կը տեսնեմ թէ շատ մը կը տարբերի գերման գիտնականին օրինակէն։

Նա կը կարդայ, զ.

«Արամազդայ աստղը դարձեալ իւր փառաթնակէտը հասած է եւ Mars-ի եւ Venus-ի կողքին կը գտնուի. Haftôrang եւ Առիւծ նորա եզերքն են կեցած»։

Իսկ մերը բոլորովին ուրիշ կերպ. Երկուքն ալ միապէս մութ եւ ճապաղ։

Այս մթութեան դարմանելու համար մեր Փ. Թ.-ը ախտարական մեկնութիւն մ՚ալ իւր կողմէն կը յաւելու, ոչ նուազ մութ եւ անիմանալի զոր զանց կ՚ընենք։

**46**. Բնագիրն է هفتورنك զոր Խօսաեարըն իրմէն ստուգեցինք թէ Աւեստական «Հաւթօ-Իրինկա»-էն բարդուած է եւ Եւթն Արջ կը նշանակէ, ինչպէս Տարմսթեթերն ալ կը դնէ։

**47**. Nöldeke-ին մէջ աղջիկը քիչ մը à l'européenne կը խօսի. «Տատ աղնիւ կը նկատեմ այս (ըսածներդ), կատարենք ինչ որ կը հրամայես»։

**48**. Այս «մեծասար» բառը մին է այն հարազատ ապացուածներէն որ հիանալի կերպով ի լոյս կը դնեն հայ լեզուին տաւելութիւնը ոչ միայն թարգմանելու՝ այլ եւ ի վեր հանելու եւ ճշդելու բնագրին բուն իմաստը։

Ոչ ոք հասկցած է, յիրաւի, թէ ի՛նչ է այս բառը։ Խօսաեարը բնաւ չէ առեր իւր թարգմանութեան մէջ, եւ յետոյ, երբ առիթ ունեցանք պարզելու իրեն մեր հայեացքները՝ մեծաւ ուրախութեամբ ընդունեց եւ նշանակեց։ Հաւանական է որ ուղղէ իւր նոր տպագրութեան մէջ։ Իսկ Nöld., מםאבאר ընթերցուածը տալով հանդերձ՝ կը տարակուսի ճշտութեանը եւ անդիտութիւն կը խոստովանի։

Արդ՝ այս առթիւ, մենք մի անգամ եւս ի դէպ կը համարինք յիշել, այն բազմիցս յեղյեղեալ ճշմարտութիւնը թէ փեհլէվի բառի մը ընթերցուածին վրայ ոչ ոք կրնայ բացարձակապէս վստահ լինել շատ անգամ. ո՛չ ապաքէն բառի մը մինչեւ 648 տարբեր կերպով կարդացուած լինելը

գիտենք*։ Ընթերցուածոյն ճշտութեանը երաշխաւոր հանգամանքներն են. մէկ կողմէն տեղական իմաստին պահանջումը, միւս կողմէն աւանդութիւնը, հուսկ ապա եւ մանաւանդ՝ խնդրական բառին գոյութիւնը թէ՛ հին եւ թէ նպ.-ի եւ կամ կողմնակի ճիւղերուն միոյն մէջ։

Սոյն հիման վրայ յենելով կ'ըսենք ուրեմն թէ որովհետեւ բնագրին «մեստար»-ը հիանալի նոյնութեամբ ունինք մենք մեր «մեծաստար»-ին մէջ, թէ՛ իբր կազմութիւն եւ թէ իբր նշանակութիւն, ընթերցուածին վրայ այլ եւս տարակուսելու տեղի չմնար բնաւ մեզ։

Ցերաւի մեա-ին մեծ լինելը արդէն գիտենք. Գիտենք նաեւ թէ մեր սար-ն ալ, խնդրէ դուրս ուրիշ առումներով հանդերձ, կան՝ կարասի՝ կազմած՝ զարդ՝ գեմ նշանակութիւններն ալ ունի որ բուն մեր նիւթոյն կը կը պատասխանէ, քանզի աստ կը պահանջէ հոյազարդ՝ հրակերտ՝ մեծարուեստ բան մը. եւ այս իսկ է ճիշդ մեր բառին ալ այս տեղ տալիք իմաստը։

**49**. Բնագրին մէջ «ծօճան ու դենար» կ'ըսէ։ Ծօճանը կը կարծուի թէ ժամանակի ընթացիկ դրամն էր, բայց թէ ի՛նչ տարբերութիւն կար ասոր ու դենարի մէջ՝ յայտնի չէ։ Այսօր ալ սովորական ասացուած մ'է դրամ ու դեկար կ'ըսուի՛ անորոշաբար ոսկի արծաթ ըսելու համար։

Եղիշէի մէջ ալ կը հանդիպինք մի այսպիսի բացատրութեան «դրամ եւ դահեկան» որոյ նոյնպէս դժուար է իմանալ զանազանութիւնը։

Nöld.՝ քանզի իւր լեզուն չէր ընձեռեր այն նոյնատիպ հարազատութիւնը, «ոսկի եւ արծաթ փող» (Gold-und Silbermünzen) ըսեր անցեր է, մինչդեռ մենք, իմաստին հետ, բառերն ալ կարողացանք պահպանել։

**50**. Այս տեղ ալ կը կրկնուի այն դէպքը որուն ակնարկեցինք 25 եւ 38 համարներուն մէջ։ Այս անգամ ալ բնագրին մէջ պարզապէս «սուսիա» կը կարդանք եւ ոչ սապ կամ այլ ինչ. որ միանգամ եւս կը հաստատէ թէ նոյն «սուսիա» է ճիշդ համազօրը մեր «ձի»-ին։ Այս դէպքը կուտայ մեզ բանալին՝ նաեւ այն կարգ մը փոխանակութեանց յորս, ինչպէս ըսած ենք, մեր բուն հնչական տառերն (ծ, ձ, ց) ընդ առաջ կ'ելլեն օտար (ս, զ) ձայներու։ Արդ՝ ինչպէս գիտել տուինք արդէն, բառնալով ու ձայնականը սուսիա-էն՝ կ'ունենանք զուտ ասիա զոր ոչ միայն զարմանալի չէ, այլ եւ զուարճալի է տեսնել լուծեալ ի մերումս ի «գզի» եւ մանաւանդ ի «ձի»։

---

* Darmest. Et. I ran· II. 59.

**51**. Հոս ալ հայերէնի գերազանցութեան մի հիանալի դէպքը կը ներկայանայ։ Բնագրին մէջ գրուած է אלהת զոր իմ Փ. Թ.-իս հետ կը կարդամ «ալ հա°թ» (հաք-ին փակ ա-ը է-ի մոտեցնելով)։ Արդ՝ «ալ»-ը (Ŋ -ի շրջեալ ձեւ) յաճախ կը տեսնենք պհլ. մատենագրութեան մէջ, արգելական՝ գպուչական եւ տարակուսական պարագաներուն, «մի», «մի՛ թէ», «մի՛ գուցէ» նշանակութեամբ։ «Հաթ» կամ «հեթ»-ը ուրիշ քաղում տեղեր ալ հանդիպած եւ սորված ենք։ Իր «եթէ»-ն է պարզապէս որով ալ «հաթ»-ը կը պատասխանէ ճիշտ ու ճիշտ, ինչպէս դրինք. մեր «մի՛ գուցէ»-ին իսկ մեր «մի՛ թէ»-ին (միթէ) հետ բոլորովին կը նոյնանայ։ Nöld., հայերէնի այս առաջնորդութենէն զուրկ, մութի մէջ ձգեր է «հաթ»-ին նշանակութիւնը. اگ (եթէ) իմաստը զատած լինելով հանդերձ։

**52**. Մեր օրինակին մէջ կը կարդանք.

«Աչքդ որ Ջերահի վրայ ինկաւ»։ այսինքն «ծովը որ տեսար»։

Nöld.-ի մէջ այս Ջիրահի բնաւ յիշատակութիւն չկայ. նա պարզապէս կը դնէ «denn sobald dein Fuss? ins Meer hineingekommen», (ոտքդ ջուրը դրածիդ պէս)։ Բայց շատ վստահ չերեւիր այս ընթերցուածին վրայ, քանի որ հարցական նշանով մը կը վերջացնէ խօսքը։

Փալով թէ ի՛նչ է այս Ջերահը, կամ այս անուն լճի մը գոյութիւնն ընդունելու է Փարսի կողմերն յայնժամ երբ կը ճանապարհորդէր Արտաշիր եւ կամ թէ օյ ; -ով պարզապէս ծով հասկնալու է, ինչպէս բերանացի հաղորդեց մեզ Խոտաեալը. հաստատելով այն հիման վրայ թէ Աւեստական լեզուի մէջ ծով կը նշանակեն զայր, զարա, ձայր, ստրա, յորմէ անշուշտ دريا։

Արդ՝ Պարսկաստանի մէջ, գոնէ՛ հիմա, այս անունով ջուր չկայ. հին պատմութեանց մէջ յիշուած կը գտնենք օյ ; անուն լճի մը որ Քիրմանու եւ Խորասանի մէջ տեղուանքը. Աւգանստանի այժմու սահմանագլխին վրայ կը գտնուէր, Սիստանու նահանգին մէջ, որ այժմ ցամաքած է։ Բայց Արտաշիրը այն ջուրին եզերքը բերելու համար շատ շատ խոտորելու է ճանապարհէն. եւ երկա՛ր եւ մանուածոյ եւ անօգուտ պըտոյտներ ընել տալու է Ոէյէն Սպահան եւ անտի Ստահր հասցնելու համար։

Անորոշ կը մնայ այս ջուրը թէ ո՛ւր եւ ո՛րն էր. Հաւանական կը մնայ ուրեմն օյ ; -ով دريا կամ պարզապէս ջուր հասկնալ։

**53**. Բնագիրը «զաման անդախտ» կ'ըսէ. Ցայտնի չէ թէ ի՛նչ է այս դաւսանը, երեւի գնողական մի գործիք է, թերեւս astrolabe

ըմռուածը, ինչպէս կ՚ենթադրէ մեր Փ. Թ.-ը, Nöld.-ի մէջ այսպիսի յիշատակութիւն չկայ. նա պարզապէս «դիտողութիւն կատարեց» կ՚ըսէ. (stelte sofort Beobochtungen)։

**54**. Այս ախտարական մութ բացատրութեանց վրայ Nöld.-ի մէջ ալ լոյս մը չգտանք։ Մեր Փ. Թ.-ն ալ ոչ նուազ ախտարական մթութեամբ կը փորձէ պարզաբանել։

**55** Բն. «վատ ի արդակ» զոր باد اردا ماند կը դարձնէ մեր Փ. Թ.-ը։ Որչափ ալ հետապօտեցինք՝ չկարողացանք գոհացուցիչ մեկնութիւն մը գտնել այս բառին, ինչպէս ոչ ալ գերման գիտնականը։

Տեղւոյն բերմունքէն եւ Ֆերդուսիին چو باد دمان բացատրութիւնէն կը հասկցուի որ «արգա»՝ մի ուժգնութիւն եւ սաստկութիւն յայտնող բառ լինի։

Darmesteter-ի մէջ կը կարդանք այս մասին.

« Le vent *Artak* répond peut-être au *vâta dareschi çrira*, premier déguisement de Bahram . . ., ou peut-être miux, est-ce le vent rapide comme l'oiseau de proie *Arda* » (Bundehesh. p. 31, l. 11)։

Etudes Iran. II. 85.

Միւս կողմէն ալ զ. բառարանները արդա-ին համար կը նշանակեն խիզախ եւ ղազար յորմէ Արտաշիրին անունն ալ կ՚ստուգաբանեն խիզախ իշխան իբրեւ անիւծ. Մարթի ուրեմն մտածել թէ «արդակ» նախնական ձեւն արդա-ի կամ արդ-ի, քաջութեան՝ սաստկութեան՝ կատաղութեան յայտարար է, ինչպէս ի վեր ակնարկեցինք։

Կարծեմ թէ Շնորհալւոյն — «Սարափիլի հողմոյ նման»-ը ամենաճիշդ լուծարանութիւնն է այս մութ կէտին։

**56**. Խորենացին, որ բոլոր այս առասպելը իրեն յատուկ կուռ համառօտութեամբ կը յիշէ, մեր «խոյին» տեղ՝ «նոխազ» կը դնէ, զոր եւ Nöld.-ն կը յիշատակէ հարցման նշանով։

**57**. Մազդեզնական նուիրապետութեան մէջ դաստուր, մովպետ եւ հերպետ բառերուն նշանակութիւնը ճշտելը մեծ կարեւորութիւն ունի։

Հերպետը պաշտօնեայ էր հրոյ եւ պարտաւորութիւնն էր հանապազ խորհրդի մատուցանել ծախիչ սրբազան տարրին եւ միանգամայն հսկել նուիրական կանոնաց եւ ադաթուց եւ կանոնաւորութեան պաշտամանց։ Ըսենք լուսարար կամ սարկաւագ։

Մովպէտը բարձր էր քան զսա՝ աստիճանաւ, վարկով եւ դիրքով։ Պաշտամանց մէջ վերին հսկողութիւն եւ մատակարարութիւնն իրե՛ն վե-րապահուած էր եւ բարձր հեղինակութիւն մը համարուէր ի կրօնականս Ըսենք քահանայ, մովպետան-մովպետի վերապահելով եպիսկոպոսութիւնը։

Դաստուր, որչափ կրցինք հաստատել, ամենէն բարձրն էր, ոչ այնու թէ մի առանձին եւ տարբեր հոգեւորական կարգ կամ իշխանութիւն մ՚ունենար, այլ Թագաւորէն իրեն շնորհուած բարձր դիրքի՝ կարգի եւ պատուոյ աղագաւ։ Սա մի արտաքին պատիւ էր որ անպատճառ հոգեւո-րականութիւն չէր պահանջեր։ Այնպէս որ հասարակ աշխարհական վէ-զիրներն ալ դաստուր կը յորջորջուէին, մինչ ապա դաստուր անունը վէզիր-ի հոմանիշ անցաւ։ Որչափ ալ թէպէտ ընդհանրացած կը տեսնենք պաշտօնը եւ տիտղոսը, այնու ամենայնիւ խոստովանելի է որ բարձր հո-գեւորականութեան կը վիճակուէր այս դիրքը։ Սովորաբար Մովպետան-Մովպետն էր Դաստուր եւ խորհրդական եւ Աւագ Պաշտօնեայ կամ Հա-զարապետ եւ ազատ էր ու մուտ ունէր Արքայից Արքային մօտ։ Ամէն դժուարին պարագաներու մէջ կը տեսնենք որ Թագաւորը անո՛ր խոր-հուրդ կը հարցնէ եւ անո՛ր միջոցաւ ուրիշներուն կը յայտնէ իւր հրա-մանները։ Պատմութեան մէջ պիտի տեսնենք որ, երբ, որսի մը պահուն, Արտաշիրը տխրած էր եւ կուլար, ոչ ոք յազատականաց եւ յաւագան-ւոյն իշխեց մօտ երթալ եւ հարցնել Թագաւորին. այլ ամէնքը բոլոր-ուեցան Դաստուրին շուրջը, աղաչելու որ երթայ հարցնէ իմանայ Թա-գաւորին լացին պատճառը։ Ա՛յսչափ բարձր էր Դաստուրին պատիւը եւ դիրքը Թագաւորին քով։

Հիմա, որովհետեւ ժամանակը ամէն բան առած տարած է, այն վաղեմի նուիրապետական սանդուղէն ոչ մի աստիճան մնացած է առողջ եւ անխաթար։ Փարսիք իրենք ալ ընդ աղօտ միտ կը յիշեն թէ ի՛նչ ու-նէին եւ ի՛նչ էին։ Հիմա մովպետ՝ դաստուր՝ հրպետ այն ճիշտ աստիճան-ները չունին թէեւ, որպէս ի հնումն, սակայն եւ այնպէս դաստուրը կը պահէ դարձեալ իւր բարձր նշանակութիւնը եւ կրօնական ծանր հեղի-նակութեանց միայն կը տրուի։

Գալով բառագննականին։

« Հրպետ »-ին համար ըսողներ եղան թէ մեր « հայրապետն » է. ես ալ պահ մը միտեցայ յայն, քանզի նորութեան հրապոյրին հետ. պատ-մական եւ լեզուաբանական ըլլալու առաւելութիւնն ալ ունի։ Բայց տեսայ որ լուրջ եւ խոր քննադատութեան դիմանալու չափ հիմ եւ ոյժ չունի այս կարծիքը։ Իրաւ է որ ديره -ը հէյր է, ոչ հիյր, այսինքն կը մօտենայ մասամբ հայր-ին. իրաւ է դարձեալ որ Թագաւորը Դաստուրին

խօսք ուղղած ժամանակ هیربد ալ կը կոչէ զայն, իբրեւ թէ ըսէր · — Հա՛յրապետ, այս ամէնը քաղցր եւ բնական կը հնչէ մեր ականջներուն, այլ սակայն բառին զենդ ծագումը երբէք չթոյլատրեր այս հանգի-տութիւնը:

Գիտունք هیربد -ը կը տարրալուծեն ի զնդ. aêthra յորմէ اذر կամ آذر (հուր). եւ ամփոփմամբ th խումբի՝ هیر , եւ paiti = պետ. Որով هیربد -ը իսկապէս կը լինի Հրպետ (պաշտօնեայ եւ պաշտպանող կրակի):

Բայց մեր մէջ երբէք այս իմաստով գործածուած չէ «հայրապետ»-ը, ոչ առ հինսն եւ ոչ յետոյ, այլ միշտ աւագ-ի՝ իշխան-ի՝ ընտանեաց մեծի, գիւղի, քաղաքի եւ ժողովրդեան առաջնորդի, եւ այլ այսպիսի իմաստներով առնուած է:

1. «Կարգեցէք զնոսա ըստ կարգի հայրապետացն»:

Ա. Եզր. Ա. Ս:

2. «Կացցեն իշխանք ըստ ազգացն եւ հայրապետաց»:

Անդ Բ. 8:

3. «Ընտրեաց Եզր արս քահանայս իշխանս եւ հայրապետս»:

Անդ Թ. 11:

4. «Յարեան իշխանք հայրապետաց որդւոցն Յուդայ»:

Բ. Եզր. Ա. 5:

5. «Իշխանք ըստ հայրապետացն իւրեանց»:

Նեեմի Է. 70:

6. «Էին իշխանք եւ քահանայք հայրապետացն»:

Անդ ԺԲ. 9:

Ես աւելի բնական եւ բանաւոր կը գտնեմ բերել «հայր»-ը սնսկր. եւ զնդ pita (պհլ. pitar եւ patar եւ նոր peder) արմատէն եւ չխանգարել «հայր, մայր, եղբայր» խումբին միութիւնը, քան թէ «ադր» հեռաւոր արմատին վրայ բանանալ:

Ուրեմն «հայրապետ»-ը ճիշդ արդի կրօնական իմացմամբ ուղիղ եւ հարազատ է եւ կը նշանակէ «հայր հարանց, մեծաւոր, պետ, աւագ, իշխան, տանուտէր, եւն.» որով կ՚երթայ կը չօշափէ գաւական հին ա-ռումը որոյ մի քանի նմոյշները տուինք ի վերոյ:

Շատ գեղեցիկ եւ հարազատ հետեւողութեամբ շինուած է, առ յե-տինս, «մայրապետ»-ը որ ինքն ալ մի ապացոյց է թէ նախնիք «հայ-րապետ»ն ալ ուրիշ կերպ ըմբռնած չէին, այլ՝ «հարանց պետ»:

Գալով դաստուրին, մեր պհլ. բնագիրը ամէն տարակուսութիւն,

ամէն չփոթութիւն կը բառնայ ուղղագրելով «դաստուբար», իբր ձեռքէ (դաստ) բռնող եւ բերող (բար, բեր)։

Սա մեզ կը յիշեցնէ անմիջապէս մեր «դաստիար(ակ)»-ը որ անպատճառ անցած պէտք է ըլլայ միջին «դաստաւար» կամ «դաստիվար» ձեւէ մը՝ յանգելու համար վերջապէս ի «դաստիար»։

Հիւբշմանը մի ուրիշ աղբիւր կը նշանակէ. նա կ'ուզէ «դաստիար»ը բերել նպ. دستيار ձեւէն, սակայն մեզ ամենեւին համոզիչ չթուիր այս. քանզի دست يار ձեռնտուութիւն՝ օժանդակութիւն կը նշանակէ եւ ընդհանուր միտք մ'ունի որ ամէն տեսակ օգնութեան կը պատշաճի եւ այս ընդհանուր իմաստով կը գործածուի հիմա ալ առ հասարակ, մինչ դաստուր (دستور) -ն առ հին պարսիկս եւ «դաստիար»-ն առ մեզ աւելի անձուկ եւ բարձր եւ խորին իմաստ մը կը պարունակէ, այն է հրահանգելու՝ խրատելու՝ ուսուցանելու՝ վարդապետելու, միով բանիւ առաջնորդելու, եւ աւելի ի դէպ կուգայ մեր « ուսուցող » եւ « վարդապետ » բառերուն որ իրաւամբ եւ արժանապէս գործածուած են առաջին անգամ մեր մեծ ուսուցիչ եւ դաստիարակին՝ Մեսրոպին համար յորմէ հետէ եւ ցայժմ այդը պահած է նոյն իմաստը եւ առումը։

Ոսկ.-ի Պաւղոսի մեկնութեան մէջ կը կարդանք որ Մովսէսի վրայ խօսելով կ'ըսէ. — «Որպէս զի ցուցցէ ոք՝ վարդապետ եւ դայեակ եւ դաստիարակ կոչել զՄովսէս եւ զարմանալ ընդ բազում իմաստութիւն առնն. . .* »։

Ինչո՞ւ դաստիարակ կոչելու է զՄովսէս, — քանզի վարդապետ (հրահանգող) էր, դայեակ (հոգաբարձու՝ սնուցիչ) էր, քան զի առաջնորդող էր։ Եւ արդարեւ ալ ասկէց աւելի յարմար եւ պատշաճաւոր անուններ չէր կրնար դրուիլ Մովսէսին՝ նայելով իր կատարած դերին եւ ահագին ձեռնարկութեանը։

Վերջացնելու համար յիշենք որ J. Darmesteter ներհուն բանասէրն ալ «դաստ» արմատը մէկ դի ձգելով՝ daçta կամ daçtva-էն (règle) կ'ուզէ բերել دستور -ը եւ կ'իմանայ կանոն, օրէնք, ղեկ, ուղղութիւն, ուղղող, վարող։ Թէեւ նրանցները տակաւ առարկանալով սա ալ կ'երթայ վերջապէս կը յանգի մի եւ նոյն առաջնորդելու գաղափարին. այլ մեր ցուցած աղբիւրն աւելի տրամաբանական եւ աւելի անդիմադրելի է. ձեռքէն բռնել վարելէն աւելի յստակ եւ յայտնի յանդիմանութիւն

---

* Ճառ ԸՆԹ. եր. 159։

չկրնար ըլլալ եւ նոյն առումն է որ հազարաւոր տարիներէ ի վեր կը չաւակէնքու։

**58.** Այս բառը պհլ. բնագրին մէջ, ծպտեալ լեզուով (այսինքն՝ زوارش անուամբ ճանչցուած սեմականով) «փաղման» գրուած է զոր առհասարակ խուրայ կամ լաւ եւս խուռայ կ'իմանան պարսկերէն։

Արդ՝ խուռայ, լուսաւոր հեղինակներու կարծիքով. նաեւ՝ բախտ՝ բաստ՝ փառք կը նշանակէ. թողլով անդւոյս անյարմար ուրիշ առումները Spiegel նշանաւոր արեւելագէտը, ինչպէս կ'իմանանք Nöldeke-էն, Majestat թարգմանած է (արքայական վեհափառութիւն)։ Ֆիրդուսին որ ամենամեծ հեղինակութիւնն է այսպիսի պարագայից մէջ՝ فر կը գնէ, ինչպէս Nöld.-ն ալ կը յիշէ։

Ահա Ֆերդուսիին տողերը.

چنين داد پاسخ كه اين فر اوست
بشاهى زنيك اخترى پر اوست

«Այսպէս պատասխանեց (դաստուրը) թէ նա անոր (Արտաշիրին) բախտ ու փառքն է։ Բարեգուշակ աստղով թագաւորութեան հասնելու թեւն է նորա»։

Զոր J. Mohl կը թարգմանէ.

« C'est un *signe* de la dignité royale d'*Ardeschir* et une aile pour atteindre la royauté et la fortune ».

Ինչ որ ալ լինի տարբերութիւնը, էական եւ մեզ կարեւոր կէտը նոյն է, այսինքն թէ՝ Արտաշիրին ապագայ մեծութեան նշանակ կամ մարմնաւորեալ բախտն է այն սիրուն կենդանին զոր ուրիշ տեղ մ'ալ ինչպէս բախտ կը կոչէ Ֆիրդուսին։

Այս ամէնը կշռելով քննելով, տեսանք որ մեր «փառք» բառին մէջ թէ՝ ձայնն ունինք եւ թէ՝ ճիշտ ու ճիշտ նշանակութիւնը նոյն فر եւ خره բառերու, որոնց հետ նոյն կրնանք համարել մերինը։ Երկբայութեան բնաւ տեղի չմնար երբ կարդացինք Darmesteter*-ը եւ Hubschmann*-ը որք երկուքն ալ միաբան են «խուարընահ» հին ձեւէ մը բերելու խուռռան որոյ մի խառացումը կը համարեն փառր արդի բառը որուն ալ հնագոյն ձեւ մը կը նշանակեն farn, farna, եւն.։ Իսկ Hubsch.-ը

* Etudes Iran. I. 95 եւ 262.

** Arm. Gramm. I. 254.

յայտնի աղբիւր կը նկատէ այս բառերը մեր «փառքորին»։ Մի նոր ապացոյց գերազանցութեան հայ լեզուի. քանզի մինչ այլք բախտ՝ Majestat, եւ այլ մերձաւոր բառերով կը փորձեն ի վեր հանել բնագրին իմաստը, հայը նոյն իսկ բնագիրը կուտայ առանց թարգմանելու պէտք տեսնելու։

**59.** Բն. «անուշակ բիյդ» (անուշակ լերուք)։

Սա՝ մի յաճախեալ ձեւ է պ. հին մատենագրութեան մէջ եւ կը յիշեցնէ Ս. Գրոց «Արքա՛յ յաւիտեան կեաց»ը։

Եւ որովհետեւ կը տեսնենք թէ Ս. Գրոց այն համարներուն մէջ ալ ուր այս ձեւը գործածուած է, Պարսից՝ Մարաց՝ Քաղդէացւոց վրայ կը դառնայ նիւթը. յայտնի կ'երեւի որ նոյն հին ազգաց մէջ միահամուռ ընդունուած եւ ընթացիկ մի ձեւ էր սա, երբ թագաւորին ուղղուէր խօսքը։

Խորենացիին մէջ ալ մի գեղեցիկ յիշատակութիւնը կը տեսնենք այս ոճին, երբ Արեաց նախարարք, Արքայից Արշայրին դիմելով ի բարեխօսութիւն մանկանն Արտաշիսի՝ կ'ըսեն. — «Անմահ բարերարութիւնդ քո»։ Տարակոյս չունիմ որ մեր մէջ ալ, յարքունիս, այս էր պաշտօնական ձեւը, քանի որ մեր առանին եւ հասարակական ամէն կարգ ու սարքն ալ Արեաց վրայ չափուած ձուլուած էր։

Արդ՝ «անուշ»-ը ձեւացած է զն. ան բացասականէն եւ ան՛շահ-էն որ ապականութիւն (destruction) եւ մահ կը նշանակէ, յորմէ հետեւաբար «անաո՛շահ» որ ամփոփեալ է 'ի «անուշ»՝ անապականութիւն՝ անմահութիւն՝ անեղծութիւն։

Կ'ըսուի. զօ. «անուշակ բիյդ» (انوشاك بيد) որ է, նպ. بوید انوشه ։ Զատարեչ ըսուած սեմական ծածկագրութեամբ ալ կը կարդանք յաճախ «անուշակ եհաւունիդ» եւ արդի պրս.-ով زنده باشید ։

Նոյն արմատն է որ կը տեսնենք պ. انوشیروان կամ نوشیروان-ի եւ մեր «Անուշաւան»-ի մէջ որոյ պհլ. ձեւն է «անուշակ-ռուբան» կամ «ռուվան*», որ է անմահ ոգի» (زنده روان)։

«Անմահ»ութենէն «կենդան»ութեան տանող գիծը ոչ երկար եւ ոչ ոլորապտոյտ է. երկու գաղափարաց մէջ անցումը գրեթէ անզգալի է։

---

* Զէնդ. «Ուրուան», հպ. «ռուան, ռուբան», պհլ. «ռուբան» և նպ. روان-ը կը պատկերացնէ նաև մեր «Ուրու»-ն (ուրուական) յորմէ օտար չեմ համարիր նաև «ուհի»ն, իբր «ուրուհի», ինչպէս կը տեսնենք ալ յաճախ ուղղագրեալ «ուրհի», որ թուի լինել նոյն ինքն «հուրի» տառաշրջեալ։

Ս. Գրոց մէջ ա՛յնչափ յաճախ տեսնուած

«Կենդանի է Տէր»
«Կենդանի է անձն քո»
«Որ կենդանին է յաւիտեան»
«Կենդանի եմ ես, ասէ Տէր»

եւ այլ այսպիսի ձեւերը միթէ ուղղակի «անուշակ»-ը չե՞ն յիշեցներ։

Այս անվիճելի ապացուցութեանց առջեւ աներկբայապէս պիտի ըսեմ թէ մեր մատենագրութեան մէջ, թէ՛ թարգմանութիւն եւ թէ՛ հեղինակութիւն, «ջուր»ի առընթեր եւ անբաժան տեսնուած «անուշ»ը ոչ այնչափ քաղցրութիւն որչափ կենդանութիւն կը յայտնէ, այսինքն ոչ այն ջուրը որ մօրացած լճացած ապականած մնացած է (eau dormante), այլ այն որ շարժման մէջ է, վազուկ է (vive), մաքուր է։ Այնպէս որ կեանքի եւ կենդանութեան գաղափարը միշտ անմեկին եւ անբաժան ընթացած է ջրոյ հետ։

«Եցոյց ինձ մաքուր գետ կենդանի ջրոյ»։ (زنده կամ رود زاینده)
Յայտ. ԻԲ. 1։

«Առնուլ զջուրն կենաց»
Անդ 17։

«Տարաւելոցն տամ յաղբերէ ջրոյ կենաց ձրի» (آب حيات)
Անդ ԻԱ. 6։

«Եւես ջրհոր ջրոյ կենդանւոյ»։
Ծննդ. Իա. 19։

«Առաջնորդեսցէ նոցա ի կենաց աղբիւր ջրոյ կենդանւոյ»։
Յայտ. Է. 17։

Այս կէտէն մեկնելով՝ սրբազան տաղերգուք աւելի վեհօրէն ըմբռներ եւ փոխադրեր են իմաստը հոգեւորականին՝ ըսելով։

«Անմահարար բաժակ հեղեալ յերկնից»

«Զմայլեալք ուրախութեամբ ի քէն կենդանարար բաժակ»

«Ի հայրաշարժ աղբերէն անհատահոսդ վտակ կենդանարար սուրբ Հոգի»

«Յանկարծահաս հնչմամբ հեղեալ կենդանարար աղբիւր լուսոյ» (Շար.) եւն. եւն.։

Այս ամենուն մէջ, ինչպէս կը տեսնուի, կենդանի եւ անուշակ զոյգ կ՚երթան, իբր արտայայտութիւն մի եւ նոյն գաղափարի։ Իսկ Մակաբայեցւոց Զ. գլխոյն, 10 համարին մէջ յայտնի բացարձակ դրուած կը տեսնենք երկու բառերն ալ քովէ քով.

թիւն, խելք, միտք, վերջապէս հոգեկան կարողութիւնները կ'ակնարկէ, որով եւ յիշողականն անշուշտ: Թերեւս ի դէպ կուգայ գրուած ակնութիւնը թէ միանգամ հոն նկատուող դժբաղդին համար, այլ եւս միտք գալ եւ յիշուիլ չկար*.

Այլ թէ ինչո՞ւ մին «անոյշ» եւ միւսն «անուշ» ձեւերը կ'ընծայեն, թէպէտեւ չփոթմամբ երբեմն մէկն միւսին տեղ ալ գործածուած կայ, ինձ կ'երեւի թէ տառերին մէջ Յ-ն պարզապէս զենդին ո՛ւ, ո՛չ երկար Ո-ն ցուցնելու համար գրուած է, ինչպէս յոյներն ω-ին համար ալ ո-ին քովը վ աւելցուցած են նախնիք: Զարդ կնթագրութիւն մ'է անշուշտ որ կ'ընկնք, տեսնենք ուրիշ օրինակներու ալ պէտք հանդիպի՞նք հաստատուելու թէ ոչ: Իսկ «անուշ»-ին ու-ն արդէն բառին մարմինն է, այն տեղ երկմտութեան չկայ, բայց միայն նոյնութիւն:

**60.** Պարսիկ պատմագիրք հինգ կարգ կ'ընդունին իրենց Նախնի Հարստութեանց.

1. Արագեան որոյ հիմնադիր կը ճանչնան զՄահապատ անն:
2. Ջայեան — Հիմնադիր՝ Ջի-Աֆրամ կամ Ջաֆրամ-Ազադ:
3. Շայեան — Հիմնադիր՝ Շայգելիոյ անն:
4. Ցասայեան — Ցասան անունով մէկէ մը սկզբնաւորեալ:
5. Գուլշայեան — Գուլշահէ մը:

Այս հինգերորդ Հարստութենէն ալ չորս ցասակարգի կը բաժնեն.

1. Փիշդադեան — ի Կայոս Մարսէ:
2. Գայեան կամ Կաւեան** — ի Կայ-Կաւատէ, Կիւրոս, Դարեհ, եւն., այս դասակարգի մէջ են:
3. Աշկանեան — Արշակունիք, Աշկ կամ Արշակէ մը:
4. Սասանեան, որոյ հիմնադիրն է մեր հերոսն Արտաշիր:

Նախակարգեալ հինգ Հարստութիւնները պատմական գրոյցներ

---

* «Իսկ սաէ Թագաւորն Շապուհ. խիստ են խնդրուածքդ զոր խնդրեցերդ, զի յաւուրց ժամանակաց՝ յորմէ Թագաւորութիւնս Պարսից կանգնեալ է, և բերդն այն Անյուշ բերդ կոչեցեալ է, չիք ոք մարդ եղեալ ի մարդկանէ՝ որ իշխեցեալ է յիշեցուցանել Թագաւորաց զոր յայնմ բերդի եղեալ զոք է Թագաւորաց, յիշելով զայն մարդ՝ որ յայնմ բերդի զոք եղեալ է . . ., և դու աւադիկ զանձն ի մահ եդիր և յիշեցուցեր զԱնյուշն, որ ոչ էին լեալ երբէք օրէնք Թագաւորութեանս Արեաց ի սկզբանէ»:

Պ. Փ. Բզ. Ե. Գլ. Ե.

** Տ տառին համար հատուկ ուղղագրութիւն մը չգտանք մերայնոց մէջ. Գ ա յ ալ կայ, Կ ա յ ալ կայ, Կ ա ւ ալ կայ:

կրնանք համարիլ, ինչպէս նաեւ երկրորդ տախտակին առաջին պատկերը (Փիշդադեանը)։ Բուն պատմական վէպը կամ վիպախառն պատմութիւնը կ'սկսի Գայեանց Հարստութենէն, քիչ շատ հաստատուն կռուան ունենալով Հերոդոտեայ եւ Կտեսիայ վկայութիւնը։

Որովհետեւ հին այս շրջաններուն ամենէն նշանաւորը եւ փայլունը, յաչս Պարսից, Գայեանց՝ այսինքն Կայ-Խոսրովեանց کی خسرو եւ Դարեհեանց շրջանն է (Աքեմենեան)․ այս անուան վրայ ամփոփած մարմնաւորած են անկախութեան՝ ազատութեան եւ իշխանութեան գաղափարը։ Այնպէս որ, երբ Գայեանց փառք կամ բախտ կամ աստղ կ'ըսեն, նոյն իսկ ազգային անկախութիւնը, փառքը եւ փայլը, կամ թէ ըսենք Ոգին կը հասկնան։

Ուստի այս տեղ ալ եւ, յընթացս գործոյս, ուր ուրեք որ պատահի այս բառը, նոյն մտօք իմանալի է։

**61.** Ֆիրդուսիի, թէ՛ տպեալ թէ՛ ձեռագիր, մեր տեսած բոլոր օրինակներուն մէջ, այս բառը تباك (տաբակ) գրուած է. եւ ֆռ. թարգմանիչ Mohl-ն ալ Tebak կարդացած եւ արտագրած է բնականաբար։ Սակայն մեր պհլ. բնագիրն ունի, անտարակուսելի ընթերցուածով, بناك զոր եւ զենդ արտագրութիւնն ալ կը հաստատէ։

Ո՞րն է ճիշտը։

Գրչութեան արաբական սիստեմին մէջ յայտնի է որ բառը, կէտերու մի քիչ ետեւառաջութեամբ մարթ է թէ՛ تباك եւ թէ بناك ընթեռնուլ. եթէ մանաւանդ կէտերու թուոյն մէջ ալ շփոթութիւն մը տեղի ունեցած է, երկուքի տեղ մէկ, կամ մէկի տեղ երկու, ինչ որ շատ հեշտ է եւ գրեթէ անխուսափելի այս գրութեան մէջ։

Հիմա խնդիրն այն է թէ Ֆիրդուսին ի՞նք սխալ կարդացած է թէ իր ընդօրինակողք սխալ հանած են. — Եթէ զենդ արտագրութիւնը չվկայէր մեր պհլ. ընթերցուածոյն ճշտութեանը, կասկածելու թերեւս տեղի մնար, այլ քանի որ երկուքին մէջ ալ միաձայն եւ միակերպ بناك է, ինչպէս նաեւ պ. թարգմանութեան մէջ ալ Խօտանարը بناك անցուցած է որոյ ուղղութիւնը բերանացի ալ պապ հաւաստեց մեզ, տարակոյս չունիմ թէ այս վերջին ընթերցուածն է հարազատը զոր եւ «Բանակ» դարձուցինք մեր թարգմանութեան մէջ։

Ֆիրդուսիին պահլաւերէն գիտնալը տարակուսական է, ոմանք կ'ընդունին թէ գիտէր, այլք կը ժխտեն։ Ամէն երեւոյթ կը հաստատէ սակայն թէ չէր գիտեր, քանզի վաղուց նսեմացած էր պհլ. գրչութիւնը գոնէ իբրեւ ծանօթ եւ ընթացիկ լեզու, այն ժամանակին յոլում կը գրէր

Պարսից Հոմերն իւր անմահ դիւցազներգականը, ԺԱ. դարու սկիզբները։ Հին գրեանք մեծաւ մասամբ այրած, հին լեզուն խափանած, հին կրօնից եւ պատմութեան ուսումն արգիլուած, ամէն ինչ արաբական դարձած էր արդէն։

Սուլթան Մահմուդ Ղազնէվիի քաղաքական եւ փառասիրական ձգտումներուն շնորհիւ, նոր ոգեւորութիւն մը հազիւ դեռ սկսած էր երեւիլ ժողովրդեան մէջ, հին աշխարհը եւ լեզուն կենդանացնելու։ Սոյն լուսաւորեալ իշխանին տուած քաջալերութեամբն էր որ ամէն կողմէն հին պատմագիրները ժողվուեցան, դիւցազններուն աւանդութիւնները լսուեցան եւ Նոր Արքայից Գիրքն ի գիր առնուեցաւ։

Թէ ի՛նչպիսի յիշատակարաններ էին ասոնք եւ ո՛րպիսի լեզուաւ գրուած, դժուար է ըսել. հաւանական է կարծել թէ նոյն աւելի մօտ միջին պարսկերէնով մ'էին, եւ մանաւանդ, ինչպէս կը կարծուի, կամ նոյն արաբական թարգմանութիւնները եւ կամ զուտ արաբացի գիտնոց հեղինակած պատմագրութիւնները։

Ֆիրդուսիին՝ հին այս գրքերը փէհլէվի անուամբ մկրտելուն հաւանութիւն չեն տար քննադատք զի սովորութիւն էր ամէն հին գրուածք փէհլէվի կոչել եւ այժմ իսկ մեր օրով ալ Պարսիկները փէհլէվի կամ فرس قديم եւ կամ زند و پازند կը կոչեն ինչ որ չեն հասկնար եւ ինչ որ սովորականէն մի քիչ կը շեղի. եւ այս՝ առանց ամենափոքր գաղափար մ'ունենալու զենդի՝ փէհլէվիի՝ հին պարսկերէնի. վրայ. Դառնալով ուրեմն մեր խնդրոյն կ'ըսենք թէ կամ Ֆիրդուսին խնդրական բառը արաբ textերուն վրայ կարդալով անճիշտ օրինակի մը հետեւեր է եւ կամ, որ աւելի հաւանականն է, ինք ուղիղ տեսած եւ ուղիղ աւանդած, այլ արաբացի գրչութեան անյարիր պակասութեանը բերմամբ սխալ կարդացուեր եւ սխալ օրինակուեր է։ Ի հաստատութիւն ասոր՝ ըսենք որ بتاك ընթերցուածի մըն ալ հանդիպեցանք մի այլ գրուածքի մէջ (Ֆէրազխթան) որ ոչ նուազ յարգի է։

**62.** Nöld. կը տարբերի այս տեղ մեզմէ։ Նա, փոխանակ « զօրականաց մին էր » ըսելու, « Սպահանէն էր » կ'ըսէ, եւ այս շփոթութեան պատճառը « զօրական » եւ « Սպահան » բառերուն, երկուքն ալ, « սպահ »ով սկսելն է։ Այլ սակայն մեր օրինակը ճշտիւ կը զանազանէ երկու ընթերցուածն ալ* « Սպահան » կը դնէ քաղաքին համար, ինչպէս

* Nöldekeն ի ձեռին չունէինք երբ խմբագրեցինք վերի ծանօթութիւնը. այժմ ուրախութեամբ կը տեսնենք որ նա ալ մեզ հետ بناك կը կարդայ։

տառադարձեցինք, այս անուան յիշատակութեան առթիւ՝ գրքին սկիզբները. Իսկ այս տեղ, յայտնի եւ որոշ կերպիւ « սփահիան » կը դնէ որ կը նշանակէ զօրականք։ Փարսի թարգմանութիւնը բնաւ տարակոյս չթողուր։

« Մարդ մը հանճարեղ, բանակ անուն, (որ) այն զօրականներէն (սպահիան) որ Արտաւանի ձեռքէն փախած էին, էր »։

**63**. Բնագրին « կունդ » կամ « գունդ »ը թէ՝ troupe իմաստով կ'առնուի եւ թէ՝ քաջ՝ արի։ Մենք երկրորդին աւելի յարեցանք. քանզի այս մտօք շատ գործածուած է։

Աւտի անտեղի կը գտնեմ Միհրան Գ. Տ. Մկրտչեանի կարծիքը թէ Խորենացւոյ՝ Արամազդի համար գործածած « կունդ » բառը « մի նպատակաւոր փոփոխութեան ենթարկուած » լինի եւ թէ « կատար » կամ « կատարումն » կարդացուելու է, իբրեւ « հաճկատար », « խնդրակատար »։

Բնաւ հարկ չեմ տեսներ Պատմահօր բառն ուրիշ բառերով փոխանակելու, « հաճկատար՝ խնդրակատար »ի պէս Տիրամայրական իմաստներ ընծայելով Հզօրին՝ Մեծին եւ Վեհին ի դիս՝ Արամազդին, որուն « կունդ » բառը շատ լաւ կը պատշաճէր։ Տարակուսելու տեղի չկայ, բառը պարսկերէն է եւ Ֆիրդուսիի եւ Սուզանիի (کُنْد) պէս ծանր հեղինակներէ գործածուած եւ բառարաններու մէջ անցած փէհլէվան եւ քաջարի եւ հզօր նշանակութեամբ։ Ասկէց աւելի յարմար կոչում կրնա՞ր գտնել Խորենացին Արամազդին համար։ Ուրեմն շատ լաւ եւ շատ ճիշտ իմացեր եւ թարգմաներ է Իտալացին՝ forte եւ bellicoso ըսելով։ Իսկ Էմինի խոստովանութիւնը թէ չէ հասկացեր ինք այդ բառը « որը ոչ մի ուրիշ տեղ չէ հանդիպում* », ոչինչ կ'ապացուցանէ, սա միայն թէ՝ գիտնականին միտքը չէ եկեր համազօր պր. բառը եւ կամ թէ նեղութիւն չէ յանձն առեր աւելի հետազօտելու։

**64**. Բն. Բուխս — Արտաշիր զօր եւ Փ. Թ.-ը քուխս կը դնէ որ թէ՝ ուղի կը նշանակէ եւ թէ՝ յիշատակ եւ դատակերտ։ Մենք, հայացի ձեւ մը տալու համար Արտաշառուխս ըսինք, քուխսի համազօր ռուխսը յիշելով ի հազարառուխս որոյ մէջ ալ խնդրական կը մնայ ռուխսը։ Հիւպշմանի մէջ ալ գոհացուցիչ մեկնութեան մը չհանդիպեցանք։

---

*) Միհրան Գ. Տ. Մկրտչ. Խորենացու պատմ. ուսումնասիրութիւն. Վղրշպտ. 1896։

**65.** Կրակ ըսելով Վռամական կրակատուն մը կը դիտուի անշուշտ որ մեր մէջ տարուչան ըսուած է. սակայն այս բառին, գոնէ սոյն ձեւի տակ, մինչեւ հիմա չհանդիպեցանք դեռ փարսի մատենագրութեան մէջ։ Լինի Թերեւս Ատր-Ռոշան (روشن آذر) որ մեր նախնեաց օրով գործածական եւ տպա խափանեալ եւ այժմ բոլորովին մոռացեալ լինի որոյ մի աղճատեալ ձեւը համարուի մեր տարուչանը։ Մեր Աստուածպետ ալ, երբ հարցուցինք, աւելի տեղեկութիւն չկրցաւ տալ այս մասին։

Փարսից կրակին, սա՝ երեք տեսակ էր.

1. Դատգահ
2. Ատրան
3. Վարահրամ կամ Վահրամ, կամ Վռամ։

Առաջին տեսակը հասարակ կրակն է որ ամէն տուն կը գտնուի եւ յարդգանոց տաճարկայ է, ինչպէս են պատկերները Ցունաց եւ Ռուսաց մէջ։ Եւ Վեհդինեանք* ալ հասարակ կարող են անոր մերձենալ եւ դպչիլ, այլ՝ այլադենից ներեալ չէ։

Երկրորդը, Ատրան-Հուրը ո՛րքան սուրբ եւ մաքուր է որ սրբակրօն մոլպետներէ զատ ոչ ումեք ներեալ է անոր մօտ երթալ։ Այս կրակին պատրաստութեանը համար երկար արարողութիւններ կը կատարուին։ Զորս այլ եւ այլ տեղերէ, զօ. երկաթագործի քուրայէն, ներկարարի՝ ոսկեւագործի հալոցներէն եւ բաղնիքներէ մի քիչ կրակ կ'առնեն (իւրաքանչիւր տեղէն մի՛ անգամ եւ եթ, ոչ աւելի). ասոնք մէկ տեղ կը բերեն, կը սրբագործեն եւ տեղ մը կը նստեցնեն** եւ կը հսկեն որ չմեռնի***։

Երրորդ, Վռամական Հուրը որ աւելի « Վարահրամ » անունով ծանօթ է, ամենէն խորհրդաւորը՝ սրբազնագոյնը՝ աստուածայինն է. ան-

---

* Փարսիներու մէջ Զրադաշտեան դենը վեհ-դեն և հետեւողներն ալ վեհդենեան կ'անուանուին, այսինքն վեհագոյն կրօնքի հետեւող, զոր մենք ալ հայ ձայնիւ վեհդենեան պիտի ըսենք։

** Նուիրական բառն է կրակի համար, փոխանակ ըսելու՝ դնել-զետեղել։

*** Նոյնպէս և այս, փոխանակ ըսելու՝ մարել-հանգչել որոյ մի գեղեցիկ հեգնականը կը տեսնենք Եղիշէի մէջ. « Մեռանի այն որ շնչէն և շարժի և գնայ և ուտէ և ըմպէ. ե՞րբ տեսեր դու զկրակ գնայուն կամ խօսուն կամ գիտուն։ Արդ զոր կենդանի քո չէ տեսեալ մեռեա՞լ խոստովանիս »։

հպելի՝ անմերձենալի՝ անտեսանելի՝ անձեռնմխելի, քանզի եւ ոչ իսկ Վեհզեննեանց ներեալ է ի ներքս ի սրբավայրն, ուր սա պահուած է՝ Թափանցելի։

Աս ալ վերի « Աղրան »ին պէս, այլ 16 տարբեր տեղերէ կը ժողովեն եւ պատրաստութիւնն ալ տարի մը կը տեւէ։ Տարի մը շարունակ յազույաշտ, աղօթք, օրհներգութիւն եւ այլ մանրամասն պաշտօն պէտք կատարուի մինչեւ որ սրբագործութիւնը լրանայ եւ կրակը իւր « գահոյքը բազմեցնեն »։ Այս հուրը մշտնջենական գիտեն Մազդեզնականք եւ ամէն զգուշութիւն ի գործ կը դնեն որպէս զի չմեռնի (մարի). եւ եթէ երբէք դէպ լինի որ չիջանի, աղետից մեծագոյնը կը համարուի։

Սպասարկուք եւ պահապանքն են առ հասարակ մաքրակենցաղ եւ ամբիծ վկայեալ ծերունի մովպետներ որք փոխանակաւ գիշեր եւ ցերեկ կը հսկեն եւ կ'աղօթեն։ « Կալակ » կ'ըսուի այն կրակարանը որու մէջ կը պահուի այս հուրը եւ տեղին եւ ժողովրդեան կարողութեան համեմատ, կամ կճեայ կը լինի, կամ արոյրէ, կամ արծաթէ եւ կամ ձոյլ ոսկիէ. եւ հանապազ հոտաւէտ հոյզեր կամ սանդալ ըսուած փայտէ յատկապէս պատրաստուած նուրբ եւ չոր ճիւղեր « խորաիկ » կը մատուցուի անոր։ Պաշտօնավարող մովպետներն, ի ժամ օրհներգութեան, դէմ առ դէմ կ'անցնին եւ սպիտակ չղարչեայ մաքուր վարշամակով* մը իրենց երեսը, աչքերէն վար, կը քողարկեն որպէս զի քիթէն եւ բերնէն ելլող դարշ արտաշնչութիւնը կրակի վրայ երթալով չպղծէ զայն։

Այժմ Զրադաշտեանց մէջ երեք տեղ միայն կայ Վռամական Հուրը**, վեց հատ ի Պոմպայ, մի հատ Եզտ եւ մի հատ ալ Քիրմանի։ Ըստ աւանդութեան զոր շատ չեն խոստովանիր այժմ, զոնէ յայտնապէս, այս հիմա գոյութիւն ունեցող Վռամական հուրը, կը կարծեն թէ այն նոյն հրն, այսինքն Արտաշիրէն ի վեր լուցեալ հուրն է որ անշէջ պահուած է մինչեւ ցայսօր։

Այս երեք կրակներն են որ իբրեւ զգալի պատկեր աներեւութին

---

* روبند որ է « փանդամ »՝ յիշեալ առ Եղիշէի, զոր « կապերտակ » և « փադոնք » թարգմանած են նախնիք, Ոսկ.-ի Եւ. մեկնութեան մէջ։

Հատ. ԸՆԹ. 234։

** Սոյն այս հուրը լինել կը թուի մերայնոց « Որմզդական » ըսածը։

Հրոյ. « Հուր-Իմաստութեան* » կը յարգուին կը պաշտուին Եզդանեանց** մէջ։

Արտաշրի պատմութեան ընթացքէն եւ նոյն իսկ Փարսիներէն, մեր կենդանի ձայնիւ առած տեղեկութիւններէն այնպէս կը հասկցուի որ, ուր ուրեք հարկ կը լինէր կրակատուն հաստատել, սոյն Վռամականն էր. Արտաշիր, մեծ վերանորոգիչն Դենի Մազդեզանց, յանհունս բազմացուց Վռամական Հրոյ մեհեաններն ի սփիւռ Արեաց աշխարհին, տարածելով. ինչպէս դիտենք, նոյն հոգածութիւնը՝ նաեւ Անարեաց վրայ***։

Սոյն այս բարեպաշտական սովորութեան կ'ակնարկուի նաեւ այս համարին մէջ « տասը Վռամական կրակ հաստատեց » ըսելով։

**66**. Նախկին Կրման կամ Կարմանիա, նահանգ՝ ի հնումն հռչակաւոր, ի Հարաւ-Արեւելս Պարսկաստանի։

. Որ եւ Մակրան****, նահանգ ընդ մէջ Կրմանայ եւ Սիստանու (Սագաստան նախնեաց)։ Անշուշտ այս աշխարհին կ'ակնարկէ Եղիշէ « Կուրան եւ Մակուրան » ըսելով եւ ոչ թէ Խաքայ-Խուրայ, Ջին-Մաչին, Գոգ-Մագոգ, անիմաստ եւ անարժան ռամկաբանութեամբ, հեռաւոր անորոշ երկիր մը իմացնել ուզած լինի, ինչպէս կը համարի Գ. Պ. Ղուկասեանց, Եղիշէի աշխ. Թարգմանիչը*****։

**68**. Ըստ հնոց « Հագէս » — Թէհրանու հարաւ-արեւելեան կողմը հին երեւելի քաղաք մ'էր որոյ այսօր իսկ կ'երեւին աւերակները։

---

* « Ահուրայ-Մազդայ »։

** Այսինքն Աստուածեանք։ Փարսիներն այսպէս ալ կը կոչեն իրենք զիրենք։

*** « Իւ զմեհենիցն պաշտամունս առաւել եւ յորդորէ. այլ [և զհուրն որմզդական, որ ի վերայ Բագնին՝ որ ի Բագաւան, անշէջ հրամայէ լուցանել »։

Խոր. Բ. Գիրք. Հէ։

**** Nold. մեր «Մակրիստան»ը Makran, Ispahan կը կարդայ և ի ծանօթութեան կը յաւելու — « Այս երկու բառերը מכרספאו (Մկրստան) են յօրինուած պէտք է լինին։ Մեր օրինակը լիովին կը հաստատէ այս կարծիքը։

***** Եր. 15, Ծան. 27։

Մակեդոնեան շրջանին մէջ « Եւրոպոս » կոչուած էր այս քաղաքը, իսկ Արշակունեաց ժամանակ եւ մինչեւ դարուն՝ Ռէյ, որով եւ այժմ իսկ հին Թէհրանը կ'իմանան Պարսիկները. Մեծանուն Հարուն-ալ-Րաշիդը այս տեղ ծնած էր, կ'ըսուի։

**69.** Պատմական եւ հռչակաւոր քաղաք ի յարեւելս կոյս Թէհրանու, համանուն լեռնէն առած իր անունը (دماوند) զոր « Դըմբաւընդ » կը կոչէ Խորենացին. լեռ որոյ ամպածրար ալեհեր գագաթը քանի մ'օրուան ճանապարհ հեռուէն կ'երեւայ*.

Յոյժ մեծ եւ կարեւոր դեր խաղացած է այս սարը Պարսից հին պատմութեան մէջ. այնպէս որ կրնայ ըսուիլ թէ այս լերան շո՛ւրջը կը դառնայ Արեաց ազգին պատմ-առասպելական հին շրջանը. Մինչեւ ցայսօր ժողովրդեան մէջ որոշ չափով կենդանի են դեռ այն վաղնջուց աւանդութիւնք՝ զրոյցք եւ վէպք որոց թատերավայրն հանդիսացած է այս լեռը. Դեւք՝ ճիւաղք՝ հսկայք՝ դիք եւ դիւցազունք իրենց աւանդական չաստուածութեամբք կցուած են այս վայրերը զորս այնքան հրաշալի տաղերով հանդերգած է անմահն Ֆիրդուսի։

**70.** Դայլամ կամ Դայլաման Կասպից ծովու հարաւային եզերքը Գիլան ըսուած նահանգին մէջ մի քաղաք էր, կ'ըսեն։

**71.** Այս բառը բնագրին մէջ միշտ « զադման » գրուած է զոր Փ. Թ.ը խոռայ կը կարծէ. Արդ՝ խոռայ պարսկերէնի մէջ կը նշանակէ, ըստ բառարանաց. 1. լոյս աստուածեղէն, իմա՛ ազդեցութիւն կամ ներշնչութիւն որ վերուստ մարդոց շնորհուած է. 2. իւրաքանչիւրն այն հինգ բաժնից որոց բաժնուած էր Արեաց աշխարհը, որք են.

1. Բաժին Արաւաշրի
2. » Սաւահրայ
3. » Դարեհի
4. » Շադհոյ
5. » Կաւադայ

եւ այլ մի քանի նշանակութիւններ ալ որք պատշաճ չեն տեղւոյս։

---

* Մեծ Մասիսէն 514 մեթր բարձր, ըստ աշխարհագրաց որք կը դնեն Դամաւանդը 5670 և Մասիսը՝ 5156 մեթր։ Այս հաշիւները կը տեսնենք որ մերձաւորաբար են, քանզի կը տարբերին հեղինակէ հեղինակ։

Եւ Արտաշրի բաժնով, ի մասնաւորի, կ'իմանանք Արտաշրի շինած քաղաքը* զոր կարող ենք մեղ ծանօթ « Արտաշատ » ձայնիւ հայացնել, այլ որովհետեւ մեր մէջ ալ մի Արտաշատ կայ արդէն, մեր աշխարհի սեպհական, շփոթութեան տեղի չտալու համար նոյն այն պարսիկ խոrայ ձայնը գործածել ի դէպ վարկանք։ Սակայն կը խոստովանինք որ բուն բառը « Արտաշատ »ն էր, քանզի « շատ »ը ինքնին տեղ՝ դաստակերտ՝ աւան նշանակութեամբ առնուած է միշտ, ինչպէս կը տեսնենք Ցաշտիշատ = յաշտից տեղի (Ագաթ.**)։

72. Բնագիրն է « վ . . . ր », այս երկու բաղաձայններուն մէջ ամէն ձայնաւոր դնելու կարելիութեամբ. ուստի Nöld. իրաւունք չունի var կարդալու, եւ եթէ գիտնար կամ յիշէր թէ հայերէնի մէջ նոյն բառը կայ ի « վիր-ապ », չենք տարակուսիր թէ « վիր » պիտի կարդար քան թէ վա՞ր (վէր)։

Մեր փարսի Դաստուր Hoսանարը ա՛յնչափ հաստատ է իւր ընթերցուածին վրայ որ պ. Թարգմանութեան մէջ, ձայնը շփոթութենէն ազատելու համար տակը օ [illegible] մըն ալ դրած պատկերացուցած է وو ։

Մեր մէջ վիր առանձին գործածուած չէ եւ ոչ ալ ուրիշ բարդութեան մէջ, որչափ կը յիշեմ. այլ սակայն սորա մի ուրիշ ձեւն ունինք ի « վիհ » որ Ոսկ. ի (Մեկն. Ես.) մի եւ նոյն գլխոյն մէջ***, երեք տեղ « վիրհ » գործածուած է (վիրհ մեծ է ընդ մեզ եւ ընդ ձեզ), մինչդեռ Ղուկասու ակնարկեալ համարին մէջ պարզապէս « վիհ » է։ Րն սովորաբար փոխանակող Հ ին քով նոյն հին ր ին ալ մնալը տարակոյս չձգեր թէ վիր եւ վիհ մի եւ նոյն բառերն են, որով մեր « վիրապ » ը պարզապէս ջրհոր ըսել կ'ըլլայ։

73. Մենք ալ Mohl ի եւ Nöld. ի հետ « քուրդ » իմանալով « Կորդուք » թարգմանեցինք հետեւելով հին անուանակոչութեան

* Nold. կ'ըսէ թէ այս քաղաքը մինչեւ մահմետականաց ժամանակը կար և Gôr կը կոչուէր. յետոյ ապա Ֆ ի ր ո ւ զ ա բ ա դ կոչուեցաւ։

** Տե՛ս այս բառին մասին մեր դիտողութիւնը Արարատ ամսագրի 1903 տարւոյ Օգոստ.-Սեպտեմբ. ամսոյ Ը-Թ. համարը. յորում ընդարձակ բացատրած ենք թէ « Ցաշտիշատ » է բուն բառն և ոչ « Աշտիշատ », ինչպէս կը կարծուի և կը կարդացուի սովորաբար։

*** Հատ. ընթ. 216—217։

**ՀԴ.** Զարուլիստան կամ լոկ Զարուլ կամ Զաւուլ նահանգ է որոյ սահման կը դնեն պարսիկ աշխարհագիրք յարեւելից՝ Քաբուլը (Աւղան), յարեւմտից՝ Սիստանը, հիւսիսէն Զինը եւ հարաւէն Խորասանը եւ Հազարեան լեռները։

**ՀԵ.** Մեր Փ. Թ.ին հետեւելով այս բառը մենք ալ նախապէս « Մասիկ » գրած էինք, բայց յետոյ Nöld. ին « Մատիկ » ընթերցուածը որ տեսանք՝ անոր ուղղութեանը աւելի համոզուեցանք, քանզի իբր թէ կը մատնանշէ « Մեգ » (mède) արմատը. եւ գիտենք որ Մարք եւ Մեդք կամ Մեդացիք նոյն ազգը կը նշանակեն այն է Քուրդերը։

**ՀԶ.** Այս կտորը մեր Փ. Թ.ը սխալ ըմբռնած կ'երեւի, բնագրին մէջ բառին ընթերցումը տարակուսական մնացած լինելուն համար։

Փ. Թ.ը կ'ըսէ « իւր ընկերներուն եւ ձիերուն հետ անօթի եւ ծարաւ մնացին »։

Nöld., բառը écarté, séparé կարդալով, կը դնէ. « ինք իւր ընկերներէն եւ ձիանէն զատուած »։ Այս վերջինը մեզ ճիշտ կ'երեւի, քանզի պատմութենէն կը տեսնենք որ Արտաշիր ինք մինակ էր, յետոյ մարդ ուղարկեց եւ իւր հետեւորդները բերել տուաւ։

**ՀԷ.** Բնագրին մէջ բացայայտ « առիկ »՝ մանաւանդ թէ « հառիկ » הריכ է զոր դարձեալ սխալ ընթերցմամբ առուբէկ կը կարդայ Փ. Թ.ը չփոթելով ի ն բ ի հետ։ Մեր « հեռի » ն եթէ չլինէր՝ ուղղելու ընթերցուածը, տարակուսելու թերեւս տեղի մնար, այլ որովհետեւ ձայնի մօտաւորութիւնը եւ նշանակութեան նոյնութիւնը երկուստեք կատարեալ են, վարանելն անկարելի է։ Պահլաւականէն ալ եթէ վերջին տառը վերցնենք որ նոյն լեզուի պահանջներէն է ձայնաւորով վերջացող բառերուն՝ կ'ունենանք « առի »։ Եւ որովհետեւ պհլ. տառը ոչ միայն պարզ א, այլ եւ ה ալ կը կարդացուի, ուստի տալով բառին այս երկրորդ ձայնը՝ կ'ստանանք զուտ բառը « հա°ռի » (փակ ա ով) որ նոյն ինքն է « հեռի »։ Hubschmann ը գնդ. « paro » եւ սնսկր. « para » արմատները կը նշանակէ, ինչ որ աւելի մեծ հնութեան կը հանէ մեր բառը, փոխանակութեամբ փ եւ հ տառերու։

Տեղի կայ ուրեմն ենթադրելու թէ պհլ. « հա°ռի » ն ալ նոյն արմատէն է որմէ ժամանակաւ ինկած լինի փ ը։

**ՀԸ.** Nöld. « լեռնադաշտ » (Steppe des Gebirges) կը թարգմանէ.

բայց մեր օրինակին մէջ այնչափ յայտնի չէ թէ սա ինչպէս լեռնա-դաշտ լինի. «Լեռ դաշտ» կ՚ըսէ պարզապէս, կամ աւելի ճիշդը՝ «դաշտ լեռ» զոր ջոկ ու անջատ կ՚իմանայ մեր Փ. Թ.-ը։ Այս իմաստը մենք աւելի նպատակայարմար գտնելով ատոր յարեցանք, քանզի հովիւ մը իր հօտին հետ չարունակ մէկ տեղ չկենար, կ՚ուզէ լեռնադաշտ լինի՝ կ՚ուզէ ձոր ու հովիտ, արօտէ արօտ կը փոխադրուի չարունակ ուր որ թարմ դալար խոտ գտնէ։ Ուրեմն ատանց կապելու եւ ոչ ալ անջատելու բառերը՝ «լեռ դաշտ» ըսելով անցանք։

**79.** Այս համարին վերջին մասին վրայ Nöld. բաւական կը տար-բերի մեզմէ։ Նա կ՚ըսէ. «Անկէց երեք փարսախ անդին տեղ մը կայ, լաւ մշակուած, բազմամարդ, եւ շատ գիւղեր կան»։ Այս թարգմանու-թիւնը կը ցուցնէ որ բնագրին «պատաշնիհ վասեար»ը «պատաշտեհ վասեար» կարդացեր է, որուն վրայ սակայն ինքն ալ վստահ չէ։ Այլ թէ ուsեղիֆի իմաստը ո՛ր բառէն հաներ է մեր Խօսաւարը՝ ան ալ յայտնի չէ մեզ. այսու ամենայնիւ, ցնոր տեղեկութիւն, պահեցինք իր թարգմանութիւնը որ տեղւոյն յարմար է։

**80.** Բնագրին մէջ haftānbuxt է այս բառը որոյ վրայ երկար-օրէն կը ճառէ Nöld. որուն Hubschm.ն ալ կը ձայնակցի.

هفتان ի վրայ խնդիր չկայ. սա՝ «եւթն» կամ աւելի մօտ եր-թալով «եւթան» է։ Դժուարութիւնը երկրորդ մասին՝ buxt ին վրայ է զոր յիշեալ մեծանուն գիտնականները կ՚ուզեն بوختن (ազատել) ի արմատ ընդունիլ։

Բուխտ-ի նկատմամբ որոյ երկրորդ բայարմատն է بوز յորմէ բայ-անուն بوزش, այլուր ըսած ենք թէ մեր «բոյժ»ը, «բոյծ»ը, թե-րեւս եւ «բոյս»ն է (եր. 60—ծան. 42)։ Աս գիտենք։ Յստակ չեմ ըմբռներ թէ haftānbuxti հետ ի՛նչ մերձաւոր առնչութիւն կրնայ ունե-նալ «ազատել»ու գաղափարը։ Ազատո՞ղը ով, ազատուո՞ղը ով եւ ի՞նչ առթիւ եւ ո՞ր պատմական կամ առասպելական հիման վրայ։ Գերման գիտնականին տուած ստուգական մեկնութիւնը բնաւ այս տարակուսութիւնը չլուծեր։ Հասկնանք պահ մը haftānով եւթ աստղերը, թէ՛ մոլորակները լինին եւ թէ՛ սայլարածը (մեծ արջ), եւ ըսենք թէ նոցա ազատածն է (թէպէտ եւ բոլորովին մտացածին եւ ենթադրական), յայնժամ նոյն իսկ Nöld.-էն յիշուած čahārbuxt ը ո՛ր չորից ազատածը համարելու է. «սի-բուխտ»ը զոր Եղիշէէն յօրինակ կը բերէ՝ ո՞յր ազատածն ըսելու է։

Եւ այս մեկնութիւնը հիմնովին բանաղրօսին կը գտնեմ. մինչդեռ աւելի բնականը եւ մերձաւորը կայ. Պարսիկ բառագիրք բուխտը մանչ (տղայ) կը մեկնէ, ինչպէս որ « դուխտ »ն ալ աղջիկ.

Ուրեմն բուխտ = ուստր

դուխտ = դուստր.

Որովհետեւ « պուխտ » ձեւը մենք ալ ունինք բարդութեանց մէջ, կրնանք « ուխտ » կամ « ւուխտ » կամ « բուխտ » ձեւ մըն ալ ենթադրել օրինաւորապէս որ համապատասխանէ « ուստր » ին, ինչպէս որ « դուխտ »ն ալ « դուստր » ին*.

Եւ որովհետեւ Ֆիրդուսին ալ կ'ուսանինք թէ եօթ որդի ունէր այդ մարդը եւ այն պատճառաւ Հաֆթվաs կոչուած էր, այլ եւս հարկ չմնար, կարծեմ, երկար բարակ անյարիր մեկնութիւններ կարկառելու.

Տալով « վատ »ին, պ. բառագիրք « որդի » նշանակութիւնը կուտան թէեւ, բայց հիմնական եւ ճիշտ գիտութեամբ չէ, այլ Ֆիրդուսիին վերի կտորին վրայ յենլով է. Իսկ թէ Ֆիրդուսին ուրկէ՞ց է հաներ այս բառը, խիստ ճարտարօրէն կը մեկնէ Nöldeke ն՝ յանգական հարկի թելադրութիւն համարելով « բուխտ » ին 'ի « վատ » չրջումը. Ահա թէ ինչպէս.

Դնենք նախ բառը իւր բուն ձեւին մէջ

هف ت ان بو خت

բառնանք երկու միջին տառերը՝ կը մնայ

هف ت و خت

Որովհետեւ ու ձայնը պահլաւերէնի մէջ վ (ւ) ալ կրնայ կարդացուիլ եւ խ գիրն ալ կրնայ համարուիլ ա. պարզ է որ այս կերպով ընթերցուածը կը փոխուի 'ի واد , յորմէ هفت واد :

Այս հանճարեղ եւ հրապուրիչ մեկնութեամբ կը նոյնանայ ուրեմն վաs ը բուխs ին [հետ եւ սա ինքը կը մնայ բուն եւ նշանական բառը.

Մենք Նըլտէքին մէջ յիշուած Սիբուխտը մեզ առաջնորդ առնելով, որ « երից որդւոց տէր » կը նշանակէ ըստ մեզ, յօրինեցինք « Սեթանբուխտ » կամ աւելի հայ ձայնիւ « եւթնաւուխտ » ը որ աւելի հարազատ կը պատկերացնէ նաեւ պահլաւին կազմակերպը.

* « Հազարաւուխտ » բարդութիւնն օրինակ է.

*Յաւելուած. — Մենք վերի տողերը գրած էինք երբ յետոյ աչ- քերնուս ինկաւ* J. Darmesteter*ի մի հմտալից տեսութիւնը* Nöld. *ի այս Թարգմանութեանը վրայ. տեսութիւն որոյ մէջ բախտ ունեցանք տեսնել գիտնական քննադատը կատարելապէս մեր կողմը։*

*Թէ՛ նիւթին աւելի լուսաբանութեանը համար եւ թէ ի յարգանս հեղինակին՝ չեմ կրնար չփոխադրել աստ, իւր իսկ լեզուաւ, իւր պա-տասանը։*

*Յետ հաստատելոյ, նա ալ իւր կողմէն, ճէկֆքկաs սխալ ընթերցումը՝ կը յաւելու.*

« Je ne saurais admettre pour ce dernier mot l'explication de M. Nöldeke ; bokht, d'après lui, serait le mot ordinaire qui signifie « délivré » ; haftanbôkht serait formé à l'imitation des mots — phrases du sémitique : « *mara bokht, geshù bokht* », et signifierait « les Sept ont délivré » ; ces Sept seraient les sept planètes ahrimaniennes, le nom d'un être démoniaque pouvant fort bien exprimer la confiance dans les forces infernales, juste comme celui d'un fidèle exprimerait la confiance dans les forces divines. Voilà une explication bien ingénieuse, trop ingénieuse, je crains. M. Nöldeke rapproche bien le nom de Sibôkht (Σεβόχθης) qui devient « les trois ont délivré » ; ces Trois seraient les trois vertus cardinales du Mazdéen : bien penser, bien parler, bien agir.

Vient malheureusement un *Cahar bokht* « les quatre ont délivré, die Vier haben erlöst », et ici M. Nöldeke est forcé d'insérer après Vier une paranthèse interrogative, welche ? qui prouve que l'élasticité des nombres a des limites.

L'explication de *Haftanbokht* nous est donnée directement par Firdousi : il signifie « qui a sept fils » ; les dictionnaires persans donnent, en effet, un mot *bôkht* « fils », et ici on ne peut objecter l'exemple du persan vâd qui ne doit son existence qu'à une lecture fausse ; l'erreur porte sur la lecture du mot et non sur le sens même que la tradition n'a pu inventer. Ces sept fils paraissent et dans Firdousi et dans la Karnamak. Il est à peine besoin de dire que ces sept fils ne sont que des dédoublements du Ver ; il a sept fils,

c'est-à-dire qu'il est septuble ; il a sept fils comme il aurait sept têtes* ».

*Այլ թէ ո՛վ եւ ի՛նչ էր այս Եւթանբուխտը, որովհետեւ պատմութեանս մէջ աւելի ծանօթութիւն մը չկայ, Ֆիրդուսիէն քաղուածօքէն կը գտնենք այս տեղ, ընթերցողին դիւրութեանը համար։*

*Պարսից ծոցին մօտերը Կուլարան ըսուած քաղաքին աղջիկները սովորութիւն ունէին, ամէն առտու, իւրաքանչիւրն իր հետը իլ մը եւ մէկ օրուան մանելու չափ բամբակ վերցնելով, քաղաքին դուռը միանալ եւ խմբովին մօտակայ սարին ստորոտը երթալ եւ այն տեղ ուրախ զուարթ կայտռելով մինչեւ իրիկուն ու չ ատեն իլ դարձնել եւ մանած բերել տուն։ Այս աղքատիկ աղջիկներուն կերակուրներն ալ հասարակաց էր եւ բնաւ իւիք չէին զանազանուեր իրարմէ։*

*Նոյն քաղաքին բնակչաց մէջ Հաւթվատ անուն զուարթաբարոյ աղքատիկ մարդ մը կար, այնպէս կոչուած, վասն զի եւթն որդի ունէր եւ մէկ աղջիկ որուն կարեւորութիւն չէր տրուեր։*

*Օր մը որ այս այս աղջիկը, իր միւս ընկերներուն հետ, ցերեկուան սակաւապետ ճաշի պատրաստութեամբ զբաղուած էր, ճամբու վրայ ծառէ մը ինկած խնձոր մը տեսաւ եւ իսկոյն վերցուց եւ խածաւ։ Տեսաւ որ մէջը որդիկ մը կայ թաքցած, խնայեց եւ իւր փափկիկ մատներովը կամացուկ մը առաւ զայն եւ զգուշութեամբ տեղ մը պահեց, ուտելու տալով նմա խնձորի կտորիկ մը։ Եւ ըսաւ. « Յանուն Աստուծոյ Միոյն եւ Անզուգականին, պիտի տեսնէք թէ ես այսօր ո՛րչափ բամբակ պիտի մանեմ այս խնձորորդին աստղին բախտով »։ Յիրաւի այն օրը ամէն օրուան կրկինը մանեց եւ մօրը բերաւ հրճուանքով։ Հետեւեալ օրը կրկնապատկեց բամբակին քանակութիւնը եւ ան ալ ամբողջովին սպառեց, աւելի շուտ քան ուրիշները։ Այսպէս, ամէն օր կրկնապատկելով աշխատութեան բաժինը, քիչ ատենի մէջ այնպիսի բարեկեցութեան հասաւ որ քաղաքին մէջ մատնանիշ եղաւ։ Հօրը մօրը խնդութեան եւ ուրախութեան չափ սահման չկար, իրենք ալ զարմանքի մէջ մնացեր էին թէ ի՛նչ է այս հրաշալեաց գաղտնիքը։ « Պարիկներու (پری) հետ ընկե՞ր եղած ես, ա՛ղջիկ, կ'ըսէին, աս ի՛նչ ձեռքի արագութիւն, ի՛նչ հնար ու ճարտարութիւն, ո՛չ, ո՛չ, աս անպատճառ մարդկային կարողութենէն վեր է, անշուշտ աներեւոյթ օգնողներ ունիս »։ Ասոր վրայ, աղջիկը որ մինչեւ այն օրը խնամով պահած եւ մեծցուցած էր որդը,*

* Etudes Iraniennes II, 82 — 83.

բերաւ ցցուց զայն իւր ծնողացը, պատմեց եղելութիւնն եւ ըսաւ թէ — « Ահա այս է իմ գաղտնիքս, ես այս Որդին սատղը (թախտը) ինձ օգնութեան կը կանչեմ եւ անոր բախտին ու շնորհին ապաստան գործի կ'սկսիմ եւ այսպէս ալ կը յաջողիմ »։

Սկսան աւելցնել խնամք ու գուրգուրանք որդին վրայ որ հետ զհետէ կը մեծնար եւ տարապայման համեմատութիւններ կ'առնէր։ Քանի կը խոշորնար, կը փոխէին տեղը եւ աւելի լայն ու ընդարձակ պահարաններու մէջ կը դնէին, մինչեւ որ, երթալով, անհեթեթ զանգուած մը եղաւ եւ յատուկ սպասարկութեան պէտք եղաւ։

Սոյն միջոցին, այն քաղաքի բնակիչներէն զօրաւոր իշխան մը որ բոլոր այն կողմերը կը բռնակալէր, լսելով եւ տեսնելով Նեթան-Բուխտին այս յանկարծական եւ յարաճուն յաջողութիւնը՝ սկսաւ սաստիկ նախանձիլ անոր վրայ եւ զգետնել տապալել կը խորհէր զայն։ Թշնամութիւնը երկուստեք այն աստիճանի հասաւ որ վերջապէս ճակատեցան։ Յաղթեց անոր Նեթանբուխտը, խորտակեց ցրուեց անոր զօրութիւնը, վերցուց բոլոր առ ու աւարը եւ տիրեց եւս քաղաքին։ Յետոյ մերձակայ բլրի մը գագաթը ամրոց մը շինեց ապահով եւ ամրակուռ, լայնանիստ վիթխարի ժայռի մը վրայ, պատնէշներով շրջապատեալ, եւ այն տեղ փոխադրեց որդը որուն եւ յատուկ պաշտօնեաներ կարգեց որք կը հսկէին նորա վրայ ամենայն գուրգուրանօք, եւ կաթ եւ մեղր եւ եփած բրինձ կը մատուցուէր անոր հանապազօր։ Նեթանբուխտը դարձած էր իշխան մը, ունէր իւր սեփական զօրքը եւ կ'ասպատակէր Չինական սահմաններէն մինչեւ Քիրման։ Իւր եօթն որդւոց իւրաքանչիւրը տաս հազար զօրաց կը հրամայէր եւ ոչ ոք կը համարձակէր իր վրայ յարձակում գործել, քանզի որդին պատմութիւնը լսելով սարսափահար կը լինէին։

**81**. Բն. « Քիրմ-Խուդա » (որդան տէր), զոր աւելի ախորժ ձայնիւ ուզեցինք « Որդունի » կոչել, օգտուելով Խորենացիէն յիշուած հայ Նախարարութեան մը անունէն։

**82**. Nöld. « Գուրարան » կամ աւելի « Գուլջարան » կ'ուզէ կարդալ Տապարիի եւ Ֆիրդուսիի համաձայնութեանը յենլով. թերեւս լինի ուղիղ. բայց եւ այնպէս մենք մեր բնագիրը պահեցինք որ շատ որոշ եւ պատճառաբանեալ է։

**83.** Այս բառը մեր Խոտանարը «Սիան-Բազուրիկ» կը կոչեայ եւ դէմ կը հանէ «սիփիդ ռազուրի» ի (սպիտակ դաշտ), մինչ միւսը «սեւ դաշտ» եւ տեղւոյ անուն կը համարի։

Մենք ոչ այս ընթերցուածը եւ ոչ այս մեկնութիւնը հաւանութեան արժանի տեսանք. եւ որովհետեւ պատմական հիմ մ'ալ կուտայ Nöld. թէ شهرزور ը շատ ծանօթ քաղաք մ'է որ առաջին անգամ 628-ին Հերակլէս կայսեր հետ մղուած պատերազմին առթիւ յիշատակուած է, մենք ալ վստահաբար իրեն հետեւեցանք։ Աւելցնենք նաեւ որ Խոտանարը ինքն իսկ իւր ընթերցուածին վրայ չպնդեց, երբ այս խնդիրն ալ յուզեցինք մեր տեսակցութեան միջոցին։

Դիտելի է սակայն որ, ինչպէս Nöld. ալ կը խոստովանի, այս համարները բաւական մութ եւ ճապաղ են, երեւի խանգարումներ կրած լինի բնագիրը։

Այս Եզգանկերան ալ որոշ չգիտցուիր թէ ո՞վ է եւ թէ ճիշտ Եզգանկե՛րտ է անունը, ինչպէս կը կարդանք, թէ մի այլ ինչ, յայտնի չէ։

**84.** Բուն իմաստն է «կոտորած եւ անարգանք». սակայն քանի որ «սատամբակին» եւ «վէնասկարին» գրուած է բնագրին մէջ, պահեցինք նոյն ձայները, արգելք չհամարելով իմաստի փոքր խոտորումները։

**85.** Ահա բառ մի եւս ուր փոխանակ յարմար անյարմար թարգմանութեանց դիմելու՝ բուն իսկականը դնելու առաւելութիւնը կուտայ մեզ մեր լեզուն։

Բառը բնագրին մէջ «վերջաւանդ» է զոր ورجاوند կը դարձնէ Փ. Թ.ը։ Ո՞վ չտեսներ այս տեղ «վերջ» ին եւ մեր «պերճ» ին նոյնութիւնը, գիտնալով որ վ եւ պ տառերը, թէ՛ պարսկերէնի եւ թէ մեր մէջ միապէս լծորդ են եւ հետեւաբար փոխանակելի։

«Վէնդ», «վանդ» կամ «ւանդ» ածանցը որ սեփականութեան՝ ստացման գաղափար կը յաւելու, մեր մէջ շատ գործածուած չէ։ Կը յիշենք մի քանի բառեր միայն, զօ. արգաւանդ՝ դաւաւանդ՝ սաւաւանդ՝ շաւաւանդ։ Այս կարգէ է նաեւ բարձրաւանդ որ եւ բարձաւանդակ կամ բարձուանդակ։

Շփոթ ըմբռնման մ'արդիւնք է անշուշտ Առձեռն բառարանին «բարձր ձայնով գրուած (քարոզ)» մեկնութիւնը, աւանդը իբր գոյա-

կան նկատելով եւ հոլովելով ալ « բարձու աւանդակի »։ Չեմ գիտեր վաւերական վկայութիւն կա՞յ այս տարիճան բացորոշ հոլովման, զոր Վենետիկի գիտնական Հայրք պիտի լուսաբանեն անշուշտ։

Մեր համոզումն այն է որ այս տեղ ւաւանդի՝ ւաւանդուրեան հետ գործ չունինք, այլ պարզապէս ւանդ ածանցականի հանդէպ կը գտնուինք որ, ըստ հայ լեզուի սովորութեան, ա զօդիչով մը կապուած է գլխաւոր բառին հետ։

Արդ՝ այս հայեցուածով կրնայինք պերճաւանդ ալ ըսել, մանաւանդ որ բուն բառն ալ էր, այլ սովորական չլինելուն՝ նախընտրեցինք պերճափառ ը որ բնագրէն ալ աւելի ուժգնապէս կուտայ նոյն իմաստը։ « Պերճաւանդ » ն ալ գործածեցինք սակայն ուրիշ առթիւ։

Տարակոյս չունինք որ Ն ի մը անկմամբ նոյն ւանդ մասնիկն է նաեւ մեր ւէտ ածանցը՝ երբ կ՚ըսենք, զօ.՝ այգեւէտ, խոտաւէտ, հոտաւէտ, երանաւէտ, շահաւէտ, օգտաւէտ, եւն.։

**86.** Նախընտրելի համարեցանք մենք Nöld. ի հետ رود կարդալ բառը քան թէ մեր Խ. ին հետ روگ կարդալով ծանօթ խոյին կամ նոխազին մի նոր կերպարանք եւս տալ, այն է՝ ցռի։

Յիշելի է սակայն որ Դասթուրը կը պնդէ իւր ընթերցուածին վրայ առարկելով թէ զենդի մէջ روگ ը խոյ ալ կը նշանակէ եւ թէ կերպարանափոխութիւն չկայ։ Ուրեմն երկդիմութիւն չմնար։

**87.** Բնագրին մէջ բառը թէ՛ դշուադարկ եւ թէ՛ դշնդարկ կրնայ կարդացուիլ։ Արդ՝ « վդարկ » կամ « ուադարկ » ը իմաստ չունի, մինչդեռ « դշնդա(ր)կ » ընթերցման երաշխաւորող « դժնդակ » բառն ունինք հայերէնի մէջ, իմաստ որ տեղւոյն ալ ճիշդ պահանջածն է։ Ուստի Խ. ին վ առած ձայնը Ն կարդալով՝ հաստատել կը կարծեմ բուն հարազատ ընթերցուածը որ է « դշնդարկ » որ բերնէ բերան խեղաթիւրմամբ առած է անշուշտ մեր « դժնդակ » ը։

**88.** Բն. « ավի վա՛զա՛նդիհա » (անվնասութիւն) զոր بی گزندی կը հանէ Փ. Թ. ը։ Բառը բաղկացնող երկու տարրերն ալ կան հայերէնի մէջ. թէ՛ բացասական մասնիկն ապ, ապի, ապա (ապօրէն, ապիկար, ապաշնորհ), եւ թէ گزیدن (վնասել) ին گز (գազ) արմատը որ անհամեմատ պէսպիսութիւններով՝ յանհունս յեղաշրջուելով գեղեցիկ միավանկերու երկար շարք մը առած է մեզ։ Մեկնելով, զօ., « գազ » էն ու-

նինք. զեզ, գեզ, կեզ, գիծ, կիծ, կիճ, եւ հարկաւ՝ գազ էն անց-նելով՝ խած, խայծ, խայթ, խայց, խութ (խթեմ), խոց(եմ), խեթ (խղճի խայթ), խիթ (խիթեմ), եւ թերեւս ուրիշներ ալ որոց ամենուն մէջ տիրող իմաստն է կճել՝ խեթկել՝ վիրաւորել՝ զարնել՝ մշտել։

Կը մնար ուրեմն մեզ յօդել տարբերքը եւ ունենալ բնագրին « ավի-վապանդ » ը մեր « ապապաղ » ին մէջ, ինչպէս արդէն ունինք բազում այսպիսի օրինակներ լեզուին մէջ, զ. ապարան, ապաժոյժ, ապաշեր, ապաժամ, եւն.։

**89.** Ճիշդ ընթերցմանը չեմ վստահիր այս բառին զոր Nöld. « Mahôe » կը կարդայ (?) ով, եւ մեր Փ. Թ.ը՝ ماند , բայց ուրիշ շատ կերպ ալ կրնայ կարդացուիլ, ինչպէս կը դիտէ Nöldeke 'ի ծանօթութեան։

**90.** Բն. « գունակ-մինյու » = كنا مينو ։

« Մինյու » կը նշանակէ հանդերձեալ երանաւէտ վիճակ, երկինք, ուստի « մինյուան մինյու » (երկնից երկինք)։

« Կունակ » ը տեսանք որ մեր « ճեմս » ն է, յանցանք տամամբ։ Ուրեմն « գունակ-մինյու » կը նշանակէ, երկնից դէմ ռեղանչող զոր ամփոփ հայ ձայնիւ պիտի ըսենք « երկնաճեմս »։

Խօսքը Ահրիմանի վրայ է որոյ սեփական մակդիրներն են գունակ-մինյու, դարուանդ (մոլորեցուցիչ) եւ դրուժան։ Այս որակականները գրեթէ միշտ միայար եւ միաչար կ'երթան։ Nöld. « չար ոգի » կամ « այս չար » (esprit malin) կը թարգմանէ որ ճիշդ է։

**91.** Բնագրին այս բառը ուզdէշ կը կարդայ մեր Փ. Թ.ը, եւ Ugdês՝ Nöld.։ Իսկ նշանակութեան մասին երկուքն ալ համաձայն են, այն է՝ կուռք՝ չաստուած (Abgott)։

Արդ՝ որովհետեւ պհլ. բառի մը համար բացարձակ ընթերցուած 'ի բազումս անկարելի է, իրաւունք կը կարծեմ, առանց երբէք հեռանալու texte էն, մի երրորդ ընթերցուած ալ ես առաջարկել, այն է՝ « աուզ-տաս » որ այնչափ ուղիղ եւ ճիշդ կրնայ համարուիլ որչափ միւսները։

Կը ձգեմ ուրիշ կարելի եւ ենթադրական ընթերցուածները որք տե-սական (théorique) են միայն եւ գործնական հաւաստիք չունին։

Ուրեմն « աուզտաս » ին վրայ միայն խօսելով, կ'ըսենք որ, տես-նելով իմաստը որ աստուածութեան վրայ կը թաւալի եւ ձայնը որ

տապարխօք շատ հեռի չէ մեր բառէն, բնականաբար մեր միտքը պիտի դայ մեր ամենակարեւոր եւ ցարդ անլոյծ մնացած « ԱՍՏՈՒԱԾ » բառը։

Համարձակութիւն չունիմ անշուշտ բացարձակապէս հաստատելու թէ սա նոյն հին « սուղտաս »ը լինի, սակայն բաւական հանգիտութիւն ալ կը տեսնեմ սորա եւ նորա մէջ զոր կ'արժէ ի վեր հանել։ « Սուղտաս »էն « աստուած » ին անցնելու համար, յիրաւի, շատ խորին փոփոխութիւններու ենթարկելու հարկ կայ բառը. բաւական է դըրնուած տառերը միայն մի քիչ տեղափոխել որմէ կ'ելլէ « ադսուաս » որոյ համար կրնանք ըսել թէ ժամանակաւ եւ կիրառութեամբ այժմու « աստուած » ձեւն առած լինի փոխանակութեամբ Ձ եւ Ս տառերու եւ վերջին ս-ի՝ ի բուն ծ հայկական. որոյ օրինակներն յաճախադէպ են։

Կրնայ եւս մտածուիլ թէ, ո՛ գիտէ, թերեւս բուն հին նախնական ձեւը մերինն է եւ պահլաւինը խանգարում կրած լինի, ինչ որ ոչ անկարելի է եւ ոչ անհաւանական։

Ուշադրութիւն կը հրաւիրենք նաեւ այն պարագայի վրայ թէ երկու կողմանէ ալ կրօնական են բառերը եւ մի եւ նոյն գաղափարը՝ յայտնող. հոգ չէ թէ մէկը իրականին ճշմարտին եւ միւսը ստուերին՝ սուտին իմանանք այսօր, հերիք է որ երկուքն ալ աստուած կամ չաստուածը կը նշանակեն։ Կրօնական վէճերու մէջ օրինակը շատ է այսպիսի հակադանութեանց ուր մէկ կողմի ճշմարիտը՝ բարին՝ ուղիղը միւս կողմի համար սուտ՝ չար՝ թիւր եղած է եւ մէկ կողմի պաշտելին՝ խնկելին՝ երկըրպագելին միւս կողմին ատելի գարշելի եւ մերժելի համարուած է. վերջապէս մէկ կողմի աստուածը միւս կողմին կուռք երեւցած է։ Այս հակառակութիւնը այնչափ սաստիկ եւ խորարմատ էր որ մինչեւ իսկ գրուածոց մէջ, ինչպէս հին ձեռագիրներու եւ տիպերու մէջ կը հանդիպինք, բոլոր չաստուածներուն կամ սատանաներուն կա՛մ առաջին գիրը գլխիվայր կը դառնար եւ կամ պատիւը շրջեալ սորեւ կը գրուէր, որ մի գուցէ ճըշմարտին հետ շփոթուին։

Զրադաշտեան մատենագիրք կ'աւանդեն որ նախ քան Զրադաշտի երեւումը Արիք եւ Հնդիկք քէշով եւ դենով մէկ էին. երկնային մարմիններ եւ թանձրացեալ իրեր (կուռքեր) կը պաշտէին որոց « դեւ » անունը կուտային « աստուած » իմաստով եւ իրենք ալ « դեւեզն » կը կոչուէին, այսինքն « աստուածապաշտ » (ديوسن)։

Յետոյ Զրադաշտը եկաւ, այն հին կրօնքին տեղ նոր մը քարոզեց, (միաստուածութիւն կ'ըսեն Փարսիք), եւ որպէս զի խտրութիւնը խոր եւ շօշափելի լինի երկու հատուածի մէջ, բռնեց « դեւ » անունն ալ

իւր նախնի նշանակութենէն հանելով հակառակ իմաստով Հնդկաց սեփականեց եւ իրենը Մազդեզն կոչեց, այն է «երկրպագու Մազդայի» (Ահուրայ = Որմզդի)։

Դեւ (դաեւա) ի սկզբան կը նշանակէր եւ այժմ ալ Հնդկաց մէջ կը նշանակէ լոյս, պայծառութիւն որմէ մեր «Տիւ»ը որ շատ մը եւրոպական լեզուներու մէջ ալ պահուած է եւ այս է Δευς (Դիոս)ը, Deusը, Diesը յորմէ Dieu, ևն.։ Բայց կը յանգի նաեւ մեր «Դիք»ը, Լեզուաց մէջ մնացած հին առումներէն ալ կ'երեւայ որ «դեւ»ը սատանայ չէր ի հնումն, այլ լոյս էր, տիւ էր, աստուածութիւն (դիք) էր. յետոյ ուրեմն հակառակ իմաստին հակեցաւ եւ Ահրիմանը եւ անդնդային ոգիները նշանակեց։ Շատ հետաքրքրական է որ մեր լեզուին մէջ երկու հակառակ առումներն ալ պահուած են. թէ՛ «դեւ» (սատանայ) եւ թէ՛ «տիւ» (լոյս)։

Վասնորոյ, յաչս բանասիրի, ամենեւին կարեւորութիւն չունի թէ «աղուգաս»ը սուտ աստուած նշանակէ եւ «աստուած»ը ճշմարիտ. բաւական է որ երկուքն ալ մի եւ նոյն գաղափարը կը յայտնեն եւ նոյնիմաստ են։ Հետեւաբար, փոխանակ հակառակելու կը միաբանին եւ փաստ մի եւս կ'ընծայեն ակնարկեալ ենթադրութեան հաւանականութեանը։

Այլ թէ ինք «աղուտաս» կամ «աստուաղ»ը ի՛նչ է եւ ի՛նչպէս կը տարրալուծուի, մեր ունեցած տեղեկութիւնք չեն թոյլատրեր այժմ պատասխանել. ոչ ալ Խօսաճարէն լոյս մը կրցանք առնել բերանացի եւ ոչ ալ Հիւպշմանի եւ այլ եւրոպացի գիտնաց մէջ բան մը գտանք։

**92**. — Մազդեզնական ըմբռնմամբ հրեշտակները երկու դասակարգի բաժնուած են. 1. Գերագոյն Ոգիք, այն է հրեշտակապետք որ Ահուրական Աթոռոյ մերձաւոր եւ անմիջական սպասարկուք են, եւ 2. ստորնագոյնք որ երկրորդական եւ պարզ հրեշտակներ են։ Առաջինները «ամշասպանդ» կ'ըսուին. երկրորդները՝ «Իզէդ» կամ «Եզդ»։

Ամշասպանդք թուով եւթն են եւ իւրաքանչիւրը բանի մը տեսուչ եւ խնամակալ կարգուած է. զօ.

Ահուրամազդ՝ մարդկային դունոց,
Բահման՝ դուարաց,
Ուրդի կամ Արդի Բեհեշտ՝ հրոյ,
Շահրիվար՝ հրահալելեաց,
Սպանդարամետ՝ երկրի,

Խորդադ՝ ջրոյ,
եւ Ամրդատ 'ի բուսոց եւ տնկոց։

Սաոնց հետեւողութեամբ Իզեդներուն ալ չահապետական պաշտօններ յատկացած են զորս երկար եւ տարադէպ կը լինի թուել։

**93. 94.** — Ցաշտելը (Եշտէն) զոհել չնշանակեր այժմ, այլ յարդարել պատրաստել, եւս եւ արարողութիւն կատարել։ Կ'ըսուի, զօ. « Որմիզդ եշտ » (Որմզդական պաշտօն), « Սրուշ եշտ » (պաշտօն Սրուշի), « Դրուն եշտ » (պաշտօն Սեղանոյ), եւն., որպէս թէ ըսէինք մեր կրօնա-պաշտօնականով՝ « Կանոն Ծննդեան, Խաչի, Վերափոխման » եւն.։

Իրաւ է, հիմա յազով յաշտով* անարիւն ընծայաբերութիւն եւ պարզ արարողական պաշտօն մը, օրհներգութիւն մը կը հասկնան եւ բաղումք կը ժխտեն ալ որ ի հնումն ալ կենդանեաց զենմամբ եղած լինի, բայց միւս կողմէն հեղինակաւոր վկայութիւնք կան որ կը հաստատեն եւ Փարսիներէն ալ ոչ սակաւ գիտնականք կ'ընդունին թէ ի հնումն արեամբ եւ զոհիւ կը կատարուէին յազ ու յաշտը, այլ յետոյ խափանուեցաւ այս սովորութիւնը։

Խոստեալն ալ այս վերջին կարծիքէն է եւ նա մեզ մատնանիչ ըրաւ Խուրտ-Աւեստայի հետեւեալ տողերն ուր Վռամայ պաշտօնի մէջ կը կարդանք.

« Արեաց աշխարհի մարդիկ պէտք է որ, ի պատիւ Վահրամայ, եփեն այսինքն յաղեն ոչխար որ սպիտակ լինի կամ մի ընաիր գունով եւ կամ Հումի** վրայ գտնուող գոյներուն մէկն ունենայ »։

Թող որ եթէ Փարսիները իրենք չխոստովանէին ալ, մեր հինգերորդ դարու մատենագիրք ո՛րքան համաձայն եւ բացարձակ են որ այս մասին տարակոյս չեն ձգեր։

Զրադաշտական հրահանգներէն մին ալ կերակուրէն առաջ բաժ առնելն էր (واج گرفتن) որ մի քանի պայմաններ ունէր, նախ ձեռքերը լուալ, յետոյ Աւեստայէն կարճ աղօթք մը մրմնջել (زمزمه), ապա (եթէ թոյլատր կամ մովպետ է) ձախ ձեռքը բարսամ (բարսմունք) բռնել եւ

* Ցազ = եզն یسن զօ. մազդեզն, դեեզն. յաշտ = եշտ یشت ։

** « Հում » մի վայրի ծառ է որոյ ճիւղերը խիտ առ խիտ հանգոյցներ ունին եղեգի պէս որոնցմէ կը շինեն տրցակներ եւ ձեռք կը բռնեն մովպետներ աղօթքի ժամանակ։ Այս է բարսամ կամ մեր բառով բարսմունք ըսուածը։

բերանը կնքել եւ բառ չարտասանել մինչեւ կերակուրի վախճանը։ Մէկուն ըսել թէ « բաժ ա՛ռ » նոյն է թէ ըսուէր « Հրամմէ՛, սեղան նստէ »։

Այս օրեր ձեռքս ինկաւ հմուտ բանասիրին՝ Նորայրի Բիւզանդացւոյ « Հայկական Բառաքննութիւնը » յորում բաշխ բառի առթիւ վաժխ կամ վաճ պարսկերէն աղբիւր մը կը նշանակէ յորմէ առած լինին, կ՚ըսէ, մեր բժշկապետք բաշխ կամ բաշխտակ բառերը։

Մենք հայ բժշկարաններու հետ ծանօթանալու առիթ ունեցած չլինելով, չենք գիտեր թէ գիտական ինչ բառեր յօրինած յերիւրած են ժամանակի վարպետները, ուստի, ցորչափ բուսաբանական նկարագրութիւնը չտեսնենք, չենք կրնար տիրապէս ի վերայ կալ թէ ո՛ր բոյսին յարմարցուցած են բաշխ կամ բաշխտակը*։ Գալով վաժխ բառին՝ աս ալ անծանօթ է մեզ պարսկերէնի մէջ, թերեւս լինի վաճ կամ բաճ որ հայերէն բաժ է, եւ բաշխ ալ նշանակուած, հարկ՝ տուրք իմաստով։ Այս ճշմարիտ է, բայց թէ բոյս մը նշանակող واج բառ մը լինի պարսկերէնի մէջ, հանդիպած չենք։

Վերը բացատրեցինք թէ ինչ կ՚իմացուի « բաժ առնել » ըսելով։

Իրաւ է բանաստեղծք իրենց առանձնաշնորհեալ ազատութեամբ երբեմն մին միւսին տեղ եւ երբեմն ալ երկուքն ի միասին գործածած են, Ցերղուսին ըսած է, զօ.

« Աստրապաշտն Զրադաշտ կ՚երթար, բաժ եւ բարսամ ի ձեռին »։

Նոյնը դարձեալ

« . . . մի մեծապարիշտ (Աստուածապաշտ) մարդ եկաւ պարտէզը, բաժ ու բարսամ ի ձեռին »։

Եւ Նիզամի

« Երբ որ սեղան նստելու ժամանակն եկաւ, աշխարհակալն (արքայն) Մովպետէն պահանջեց որ բաժ ու բարսամի արարողութիւնը կատարէ »․ իբր թէ ըսէր սեղանը օրհնէ։

Բայց ասոնք բանաստեղծական լայն առումներ են որոնցմէ նիւթական ճշտութիւն չպահանջուիր։ Սա կէտը ճշմարիտ եւ հաստատեալ է որ բաժ ը բարսամ չէ։ Բարսամը նիւթական իր մը, ինչ մըն է որ բարոյական գործի մը՝ արարողութեան մը (բաժ) համար պէտք է, ոչ ալ անհրաժեշտ քանզի առանց անոր ալ բաժ կ՚առնուի, ինչպէս այժմ առ հասարակ։

Գալով բարսամի թէ ի՛նչ է եւ ինչ դեր ունի, մանրամասնենք մի քիչ, քանզի կարեւոր է նոյն իսկ մեր մատենագրութիւնը ճշտիւ հասկընալու համար։

---

* Մեր յարգելի բարեկամ Տքթ. Արթինեան հմուտ բուսագէտը կրնայ հեղինակաւո-բար լուսաբանել այս կէտը։

Ինչպէս բանասիրաց յայտնի է, « թարսամ » եզակի ձեւով գործածուած չէ մեր մէջ, այլ միշտ «թարսմունք » յոգնակի ձայնիւ։

Թէ ի՛նչ մասնաւոր պատճառներով այսպէս են վարուեր մեր հնուտ նախնիք, մեզ ծանօթ չէ։ Թերեւս հաւանական թուի այն պարագայն թէ որովհետեւ ոչ մի չիւղ կամ ճիւղ, այլ մի քանի ճիւղեր ի միասին մի հաւաքածոյ կազմելով կը գործածուէին, այս հաւաքական իմաստին աւելի ուշ դրած լինին։

Իսկ « թարսամ »ը, ինչպէս վերեւ (ծան. 93—4) ակնարկեցինք, Հում ըսուած ծառի ճիւղերն են որ կ'ըսեն նման է گز (գազ)ի եւ հանգոյցներ կ'ունենայ։ Մենք անձամբ տեսանք Դաստուրին ձեռքը մի տըրցակ, բարակ եւ նուրբ ճիւղերէ 10—15 հարիւրորդամետր երկայնութեամբ եւ հանգոյցներն ալ գրեթէ 3 հարիւրորդ իրարմէ հեռաւոր։

Այս չիղերուն յատումը եւ մասնաւոր պահարաններու մէջ պահպանումը յատուկ արարողութիւն ունի։ Դանակը* որ կը գործածուի, մի՛ միայն սուր սեփական է եւ ուրիշ բանի չգործածուիր. այս դանակին կոթն ալ երկաթէ պէտք է լինի։ Յատուկ աղօթքներով արարողութիւններով մովպետը նախ այս դանակը կը լուայ կը մաքրէ, եւ յետոյ կը կտրէ մատղաշ բարակ ճիւղերը, մէկ թիզ երկայնութեամբ եւ կը զետեղէ զանոնք յատուկ պահարանի (թարսամտան) մը մէջ զոր նախապէս լուացած մաքրած պէտք է լինի։

Յետոյ ամենայն զգուշութեամբ կը պահպանեն այս ճիւղերը եւ ըստ հարկին կը գործածեն։ Տիտարաններուն մէջ որոշուած սահմանուած են թէ ո՛ր պարագային քանի հատ այս ճիւղերէն պիտի առնուի տրցակ կազմուի, քանզի պարագային համեմատ թիւն ալ կը փոխուի։ Եթէ Վենդիդատէն պիտի կարդացուի աղօթքը՝ 35 ճիւղ պէտք է, եթէ Աւեստայի ուրիշ Լանկաներէն՝ (համար)՝ 24, եթէ պարզ բաժի համար է՝ 4, եւն։ Եւ միանգամ գործածուած թարսամը այլ եւս մի անգամ չգործածուիր, իւր զօրութիւնը կորսուած կը համարուի։

« Հում »ը չգտնուած տեղ նռնենիի կամ « գազ » ըսուած ծառի ճիւղերն ալ կրնան գործածուիլ։

**95** Դահակ, Զոհակ, Զահակ, եւս եւ Աժդահակ, կամ Աժ-Դահակ, կամ Աժ-Դահա, այս ամէնը մի եւ նոյն անձը կը նշանակեն որ Աժդահակ

---

* برسم چين (թարսամքաղ)։

անունով աւելի ճանչցուած է մեր մէջ։ Սորա մասին զրոյց շատ կայ եւ ամենեւին անմիաբան են հեղինակք։

Գաղղիացի Louis Dubreux իւր La Perse հմտալից գործոյն մէջ, արձագանգ լինելով տիրող կարծեաց կ'ըսէ.

« Dohac, appelé aussi Beïourasp*, était Arabe, suivant la plupart des historiens et descendant de Caïoumors. D'autres auteurs disent qu'il était Syrien et descendant de Scheddad. On a encore supposé qu'il était le même que Nemrod », (եր. 222)։

Նոյն անստուգութիւնը կը կրկնէ նաեւ Sir John Malcolm Անգլիացին՝ իւր « Պարսից Պատմութեան »ը մէջ։

« Il y a différentes opinions sur la généalogie de Zohauk, qui devient alors roi de Perse. Suivant quelques historiens, il était Arabe, mais il descendait de Kaïomurs, D'autres le font descendre de Shedad, et disent qu'il était Syrien ; on a même supposé qu'il était le Nemrod des Hébreux ». (Թրգմ. գղղ. Հատ. I. եր. 27)։

Nöldeke**, ըստ կարի համաձայնեցնելով ի բաղումս անհամաձայն երկու յոյն պատմիչները, Հերոդոտն եւ Կտեսիասը, Մեղացւոց պետութեան սկզբնաւորութիւնը կը դնէ այսպէս.

Deïocès,
Phraortès,
Cyaxarès,
Astyagès.

Մի եւ նոյն աղբիւրներէ առնելով անշուշտ, մերս Խորենացին ալ կը կարգէ.

Մարաց առաջին
Վարբակիս,
Մօդակիս,
Առտիկիս,
Դէովկիս,
Փռաւորտիս,

---

* Բիւրասպ = بیوراسب (տաս հազար ձի)։ بیور ը պհլ. ի մէջ ալ թէ՛ բեւր եւ թէ բիւր (իու) կը կարդացուի որով կը պարզուի մեր երկու տարբեր գրութեան եւ ընթերցուածին գոյութիւնը։ Մ. Խ.

** Études historique sur la Perse ancienne.

Գղղ. Թրգմ. 1896։

Կուաքս,

Աժդահակ.

Առաջին երեք անուններն ի բաց առնելով վերջին չորսը մի եւ նոյն կը տեսնենք երկու պատկերի մէջ ալ որ նոյն ինքն է Աժդահակ Մար։

Ըստ պարսկական աւանդութեան, Զոհակը (ضحاك) մի տաճիկ (تازی = Արաբ) իշխան էր որ եկաւ Իրանու վրայ տիրեց յետ Ջամշիտի։ Երկու ուսերուն վրայ երկու ելունդներ ունեցաւ* զոր ժողովրդային երեւակայութիւնը վիշապի նմանցուց։ Նոյն իսկ իւր անունը այս վիշապանման ուռոյցէ առնուած կը տեսնենք, քանզի աժդահակ՝ թէ՛ հին եւ թէ նոր պարսկերէնի մէջ՝ اژدها կը լսուի, այն է վիշապ ինչպէս կը նկատէ Խորենացին ալ։

Արդ՝ բժիշկներէ հնար չգտնելով, Ահրիմանայ սադրանօք, կ՚ըսէ աւանդութիւնը, ամէն օր երկու հոգի մեռցնել կուտար եւ ուղեղները խղխայթեալ վէրքերուն վրայ կը դնէր։

Սպահանցի երկաթագործ մը որոյ, մի եւ նոյն օրուան մէջ, երկու որդիքը միանգամայն սպաննել տուած էր, չկրնալ հանդուրժելով դառն կսկիծին, առջեւը կապած կաշի գոգնոցով փողոցները ինկաւ եւ սկսաւ ճչել դոռալ եւ գրգռել արդէն իսկ գրգռուած դժգոհ ժողովուրդը։ Երթալով ստուարացաւ ամբոխը եւ խուժեց պալատը, սպաննեցին կուսակալը եւ իրենցմէ մէկը տեղը կարգեցին։ Յետոյ երկաթագործի գոգնոցը ձողի մը վրայ անցընելով դրաւշ** ըրին եւ հորդան տուին դէպի Դամաւանդ։ Գտան մեռցուցին Զոհակը եւ արքայազարմ Ֆերիդունը գահը նստեցուցին։

Նոյնը գրեթէ կը պատմէ Խորենացին իւր կուռ եւ գեղանկար ոճով։

« Բայց զի՛նչ արդեւք տարփանք քեզ Բիւրասպի Աժդահակայ փծուն եւ անճոռնի առասպելքն իցեն. եւ կամ է՛ր սակս զմեզ Պարսից անյարմար եւ անոճ բանից, մանաւանդ թէ առաւել վասն անբանութեան, առնես աշխատ, եւ անբարի առաջնոյ նորա բարերարութեան, եւ դիւաց

---

* Sarcômes կամ carcinômes ulcérés, ըստ ամենայն հաւանականութեան։

** Այս դրօշը (درفش کاوه) այդ դէպքէն յետոյ, գանձարանը պահուեցաւ եւ ազգին պատերազմական նշանը (symbole) դարձաւ։ Ամէն իրարու յաջորդող թագաւորները նոր գոհարներ եւ թանգակին քարեր վրան կ՚աւելցնէին որով նախկին tablierի գինը անմատչելի բարձրութիւններու հասաւ։ Վերջին Ցազկերտի պարտութենէն յետոյ, արաբացւոց ձեռքը ինկաւ այս գանձը եւ խալիֆ-Օմար իւր զօրականացը բաշխեց ամբողջովին։

նմա ապստամբութեան եւ ոչ վրիպեցուցանել կարելոյ զվրիպեալն եւ զսուտն. եւ ուսոցն համբուրումն, եւ անդուստ զվիշապացն ծնունդս, եւ յայնմանէ չարութեան յաճախութիւն. ծախել զմարդիկ ի պէտս որովայնի*։ Իսկ ապա եւ Հռուդենայ ուսմամբ կապել զնա սարեօք պղնձիւք եւ ի լեառն տանել՝ որ կոչի Դըմբաւընդ »։

**96**. Ֆրասեաք կամ Աֆրասիաբ հռչակաւոր թագաւոր էր Տուրանայ (Թուրքեստան) որ երկար տարիներ անընդհատ պատերազմ մղեց Իրանու դէմ. Քաջին եւ անպարտելեայն Ռոստամայ նահատակութիւնները սորա ժամանակին տեղի ունեցան։

**97**. Թէ՛ Nöld.ի եւ թէ H.ի մէջ տարբեր տարբեր թարգմանուած կը տեսնենք այս խօսքը, իւրաքանչիւրին իր ընթերցման համեմատ։

Քար դայթակղութեան եղողները երկու բառերն են զորս N. կը կարդայ «վերճ ու կայման» (Würde und Majestat = մեծութիւն եւ փառք կամ պերճափառութիւն). իսկ H. կը կարդայ. «վարզ եւ եղման» (արարք՝ գործք եւ ձեռք)։

Առաջինը այն իմաստը կը հանէ թէ, որովհետեւ Եզդանը զժգոհ էր իւր մեծափառութեամբ զանոնք բնաջինջ ըրաւ։ Այս տեղ, ինչպէս կ'երեւի, անկատ բան մը կայ, մի քանի հոգի կործանելու համար Աստուած իւր բոլոր փառաց ու մեծվայելչութեան կոչում ընելու պէտք մը չունէր, բաւ էր կամելը։

H. ը կ'ըսէ « զանոնք իրենց ձեռքով եւ արարքովը անհետացուց ». աս աւելի տրամաբանական է. բայց ասկէց ալ աւելի յարմարագոյնը կրնայ մտածուիլ։

Ես կը կարդամ N.ի հետ « պերճ եւ փառք », սակայն, փոխանակ Աստուծոյ վերագրելու՝ նոյն անձանց վրայ կ'իմանամ, քանի որ նախընթաց אפשמן (զնոսա) բառ մըն ալ կայ ի հաստատութիւն, եւ կ'ըսեմ. « Եզդան զանոնք իրենց փառքով եւ պերճութեամբ երկրիս երեսէն բնաջինջ ըրաւ »։ Ասով թէ՛ ընթերցուածը եւ թէ իմաստը միանգամայն կը շտկուին**։

---

* Պարսկական զրոյցը աւելի հաւանական կը թուի։

** Դասատուս՝ որին առաջարկեցինք մեր այս հայեացքը՝ իւր կատարեալ համաձայնութիւնը յայտնեց։

**98.** — Nöldeke *կը թարգմանէ. « որպէս թէ աշխարհ ճանչցած չլինէր զանոնք »։ Այս իմացումը չպատասխաներ գոնէ մեր օրինակին ուր խօսքը պարզ եւ մեկին կերպով*
*« Ինչպէս որ աշխարհի յայտնի է » ըսուած է։*

**99.** — N. *չգիտեմ ինչո՛ւ կիտագրութեամբ անցած է այս բառը որ ամէն բառարաններու մէջ « ողկոյզէ զատուած խաղողի հատիկ » նշանակուած է։*

*Թէպէտ յստակ ակնարկութիւն մը չը կայ թէ թա՛ւիմը կը նկատուի թէ արդէն չորցած չամչացածը. սակայն մտածելով թէ իրենց բնէն անջատուած հատիկները պահեստի ամփոփուած լինելով անշուշտ՝ արդէն իսկ աստիճան մը չամչացած կրնային լինել, մենք ալ անորոշաբար չամիչ դրինք, առանց կարեւորութիւն տալու անկարելի լինելու պարագային զոր խնամով ի վեր կը հանէ մեր Փ. Թ.ը։*

**100.** — *Այս բառը բնագրին մէջ և ի մօտ փակ ա ով hաւաշs է որու համար Խոտաեարը « չակերտ » կը դնէ։*

*Նոյն միտքը կը յայտնէ նաեւ* Nöldeke *բառովս* Lehrling։

*Բառին այս ընդհանուր առումը մերձեցնելով մեր այս համարին մէջ գիտուած նպատակին՝ կը տեսնենք որ թերեւս անփորձ աշկերտէ մ՚աւելի բանգէտ անձնուէր ընկերներու պէտք ունէր Արտաշիրը, ինչպէս « գենակա՛ » բառն ալ կը պարզէ։ Ուրեմն՝ հաւատարմութեան գաղափարն է այս տեղ գերակշիռը՝ գործոյն յաջող ելքին համար։ Եւ ահա այս իմաստը եւ այս ձայնը կը գտնենք ճիշդ մեր « հաւատ » բառին մէջ որոյ զանազանութիւնները կը կարծենք « հաւատ»ը, « աւատը »ը եւ իրենց ածանցները։*

*Զգիտեմ արդեօք « կարի՛ յանդուգն է » պիտի ըսուի եթէ քիչ մ՚աւելի յառաջ մղելով համեմատութիւնն ըսեմ թէ նոյն իսկ* Avesta *ալ որոյ համար վճռողական բան մ՚ըսուած չէ դեռ՝ նոյն ինքն մեր « հաւատ »ին կը հակի իբր « հաւատաեաց աղբիւր », « հաւատարան », « հաւատարան », « աւատարան », եւ վերջապէս « աւետարան »։ Քըննադատներուն է որոշել անշուշտ թէ ցո՛ր ըմլայր hաւաsh կրնայ համարուիլ մեր այս ենթադրութիւնը որ բառից եւ իմաստից զուգակցութեան՝ անցման եւ չղթայման ա՛յսպիսի հիանալի օրինակ մը կը պարզէ մեր առջեւ։*

*Մեր բարեկամ Խոտաեարին ա՛յս կէտը լիովին պարզեցինք եւ առարկութեան մը չհանդիպեցանք բնաւ, այսու հանդերձ, տեսնելով*

չօշափուած կէտերուն ծանրութիւնը, իրմէն ալ խնդրեցինք որ վերստին խուզարկութիւններ կատարէ այս մասին, կատարեալ ապահովութեան համար։

**101.**
**102.** « Ցաղ » եւ « Ողբայիս » երկուքն ալ Աւեստական (զենդ) բառեր են։

« Ցաղ »ին համար արդէն բաւական բացատրած ենք (եր. 93. ծան. 93—94) թէ այժմու իմացուածով ոչ այլ ինչ է, եթէ ոչ տօնական աւուրց յատուկ պաշտօն՝ արարողութիւն եւ ընծայաբերութիւն երախայրեաց ըստ ժամանակին եւ եղանակին, հանդիսութիւնք որոց շատ անգամ ներկայ գտնուեցանք։

« Ողբայիս » կամ « ողբայիչ »ն ալ նոյնպէս հանդիսական աղօթք՝ մրմունջք եւ օրհներգութիւնք են որք յազէն աղօթքներու տեսական եւ արարողական ինչ ինչ աննշան մասերով միայն կը տարբերին, որչափ ստուգեցինք զենդէտ մովպետներէ։

Եղիշէի մէջ « բոզպայիտ » բառի մը կը հանդիպինք որ ձեռագրաց մէջ « բաշպայիտ » ալ տեսնուած է* զոր հիմ առնելով՝ Հիւպշման նպ. baza (بزه) , փազէնդ baza, պհլ. bacak (մեղք) արմատի մը կը դնէ զոր բաղադրելով զնդ. paititiի հետ (پتت = զղջում, ապաշաւ) կը յօրինէ bajapatiti որ պիտի նշանակէ « մեղաց քաւութիւն » (Sün den-sühnung**) — եւ այս ամէնը՝ կատարեալ վերապահութեամբ, ինչպէս կը յայտնէ վերջը դրած հարցականը։

Որչափ ալ խելքի մօտ ըլլայ այս լուծումը՝ միշտ արուեստական կը մնայ եւ յետահնար, հետեւաբար զուրկ ի հնագոյն վաւերական կիրառութեան դրոշմէ։

Այս դրութեամբ մենք աւելի յաջողագոյնը կրնայինք առաջարկել, անփոփոխ պահելով « բոզ » արմատը որ հիմնական տարրն է پوزش եւ پوزیدن ի որ ներում՝ թողութիւն հայցել ըսել է, որ աւելի կը յարմարի տեղւոյն քան baza որ ձայնիւ ալ կը հեռանայ, նշանակութեամբ ալ։ Բայց այս ամէնը, ինչպէս ըսինք, մերահնար եւ քմածին մեկնութիւններ են եւ ոչ իսկ ճշտիւ կը պատասխանեն տեղւոյն պահանջմանը։

Այն ձեւով որ կը ներկայանայ մեզ բառը Եղիշէի մէջ, թէ՛ ո ով

---

* Վիեննայու հայ ձեռագրաց ցանկ Հ. Տաշեանի, յիշեալ ի Հիւպշմանէ։
** Armenische Gramm. I. եր. 122.

լինի եւ թէ ա ով, դէնդ եւ պհլ. մատենագրութեան մէջ չկայ եւ որչափ որ հարցուփորձ ըրինք փարսի գիտնականներէն, անոնց մէջ ալ այդպիսի բառի մը գոյութիւնը գիտցող չկայ։

Այլ կայ ոզբայիս կամ ոզբայիշ բառ մը որ յաճախ կը յիշուի կրօնական մատենագրութեան մէջ եւ յատուկ կանոն մ'է (tout un système) փառաբանական պաշտօնի մը եւ մասը կը կազմէ այն օրհներգութեանց որք կը յիշուին ستایش ، نیایش եւ ازبایش անուններով։

Եւ ապացոյց որ այս մօք իմանալի է բառը, պատմութեան ոգւոյն պահանջումն է։ Ուրիշ կերպով կարելի չէ այդ դրուժանին ճարը տեսնել, կ'ըսեն Բուրգ եւ Բուրգ-Սոր եղբարք, բայց միայն ծղտելով եւ Աստուծմէ օճան եւ օղնութիւն խնդրելով (յաղ, յաշտ եւ ոզբայիս կատարելով)։ Այս տեղ « մեղաց քաւութիւն եւ թողութիւն »ը ի հարկէ անզօր եւ անիմաստ պիտի մնար։

Ուրեմն « բոզպայիտ »ն ըստ մեզ, կարի հաւանականաբար, նոյն այս « ոզբայիան »ն է, իսկ « ոզբայիս »ը կամ ուղղագոյնս « ոզբայիշ »ը զնդ. « աուզբա »ի ծնունդ կրնանք համարիլ որ կը նշանակէ խնդրել՝ հայցել։

**103**. Գուցէ ծիծաղելի երեւնայ այս տեղ մեր գործածած « վերմակ » բառը, սակայն պհլ. բառին եւ մերինին նմանութիւնը ո՛րքան փորձիչ եւ ո՛րքան հրապուրիչ է որ կարելի չէ մին տեսնելով միւսը միտք չբերել, որչափ ալ խոյր եւ խորոց ըլլան երկուքին մէջ նշանակութիւնը եւ այժմու կիրառութեան պայմանները։

Եբրայ. բնագրին ורמ...ב* ը կրնանք ընթեռնուլ վէrամակ, վէrհամակ, վէrհմակ, եւ ուրիշ շատ կերպ ալ որք սակայն lectures théoriques կուտան։ Թանաւոր ընթերցուածը վերի նշանակուածներն։ Եւ որոնցմէ « վերհամակ »ը ընտրեր է Խոտաեայր։ « Իւր մարմինը Խորասանցեի վերմակով յարդարելով » կ'ըսէ բառ առ բառ բնագիրը, որ ի սովորական լեզու՝ « Խորասանցիի կերպարանք առնել » կը հասկցուի։

Մեր « վերմակ »ին հիմակուան առումը բնաւ արգելք չլինելէ զատ՝ իմաստով կը հաստատէ ալ նոյն նախնի առումը այն է ծածկոյթ, վէrար-

---

* Պհլ. ի մէջ այս տեղ տառ մը կայ որ թէ՛ א եւ թէ ה կրնայ կարդացուիլ։

կու եւ ինչ որ վրան կ'առնուի երբ զգեստը արտաքին երեւելի մաս « վեր համակ » (pardessus)։

« Մակ » նախադրութիւնն ալ որ ունինք, որ ժամանակ մը մեծ կիրառութիւն ունեցած եւ բառից մեծ մթերք մը բերած տուած է լեզուին, չգիտեմ ուրոյն եւ անկա՛խ մտածելու է զայն թէ նոյնպէս « համակ »ի մի համառօտեալ ձեւը համարելու է։

**104**. « Ապապարեմ »ը տեսանք քանի տեղ որ «(անձը) զոհել՝ զոհաբերել » ու նշանակութեամբ գործածուեցաւ։ Այս տեղ ալ բնագիրը « կենսապար » է. այսինքն՝ կենսուրաց՝ անձնուրաց՝ անձնուէր, զոր հայացնելու համար « կենսապապար » կրնայինք ըսել, միացնելով պարզապէս կեանք եւ ապապարը։ Բայց ականջի պահանջն ալ ի հաշիւ առնելով յապաւեալ կենսապար ձեւը աւելի ախորժալուր երեւցաւ մեզ, հետեւելով յայսմ, جانسپار ի որ նոյնպէս կրճատեալն է جان اوسپار ի։

**105**. — Բն. « պարիւար » է զոր پريور կը հանէ Փ. Թ.ը շուրջանակի նշանակութեամբ։ Մոտէն որ նայինք՝ կը տեսնենք որ սա՝ մեր « պարոյր »ն է, ճիշտ ինչպէս որ տեսանք թէ բեւրի եւ բիւրի մասին։ Մենք որչափ ալ մեր առաջնորդին հետեւելով « պարիւար » ընթերցուած մը տուինք, սակայն « պարեւր » ընթերցուած մը աւելի ուղիղ կը գտնենք եւ աւելի համապատասխան մեր բեւր ին՝ հանդէպ։ Այս « պարեւր »ը անցման (transition) սովորական եղանակով կրնայ «պարիւր»ը, հուսկ ուրեմն ապա « պարոյր »ը տուած լինել։

**106**. Բնագիրը կը դնէ שכאפת (շկապտ) որ է شكافت 'ի, شكافتن է եւ կը նշանակէ հատանել, բաժանել, հերձնուլ, ընդ մէջ կտրել, զատանել, անջատել, եւ այլ այսպիսի բաժանական իմաստներ։

Հայերէնի մէջ, որչափ գիտենք, միայն մէ՛կ տեղ մը գործածուած է այս բառը, Խորենացւոյն մէջ, զոր չիմանալով բոլորովին սխալ եւ հակառակ իմաստով թարգմանած են առ հասարակ։

Կը փափաքէինք որ ընթերցողը Խորենացին աչաց առջեւ ունենար ճշտիւ հետեւելու համար լուսաբանութեան այս ամենակարեւոր կէտին։

Արդ՝ յետ պատմելոյ թէ ի՛նչպէս Վաղարշակ առանին եւ քաղաքական կարգերով եւ գեղեցիկ օրինադրութեամբ պայ՝առացուց աշխարհը « սկիզբն առնելով ի գլխոյն իւրմէ եւ ի թագէ », կը յաւելու Պատմահայրը.

« Եւ գունդս եւ պահապանս գրան արքունի պատրաստէ գչորս, զմի մի իւրաքանչիւր վառելովք. 'ի նոյն հին զարմից թագաւորացն՝ որ ի Հայքայ, որ ընդ ժամանակս ժամանակս ժառանգութիւն ի հարանց ստացեալ գիւղս եւ դաստակերտս։ Իսկ աստ ուրեմն Պարսից թագաւորութեանն, որպէս լսեմ, յայլոց յարուցեալ գունդս եւ Ոստան անուանեալ. ոչ գիտեմ թէ վասն սպառելոյ ազգին առաջնոյ, թէ վասն ընդդիմութեան իրիք լինելոյ՝ շկապեալ եւ ի բաց ընկեցեալ զազգն, զայլս ի տեղի նոցա յարուցին գունդս անուամբ արքունի »։

Խոր. փոքրագիր Վենետիկ — 1881
Բ. Գիրք. Է. Գլ. Եր. 169։

Հանգուցեալ Հ. Խ. Ստեփանէ, իւր աշխ. թարգմանութեանը մէջ սապէս կուտայ յիշեալ հատածին երկրորդ մասը.

« Իսկ այս անդ, ինչպէս լսում եմ, պարսիկների թագաւորութեան ժամանակ, չգիտեմ առաջին ազգին սպառելո՞ւն համար թէ մի ընդդիմութեան նպատակով միացած լինելու համար, հեռացրել են ազգը եւ նորա տեղ ուրիշ գնդեր են կազմել ոստան անունով »։

Եր. 96։

Ինչպէս կը տեսնուի, խօսքը անիմաստ եւ անհասկանալի է. ո՛վ է միացողը, ո՛ւմ հետ եւ ինչ նպատակաւ։ Քանի որ մէջ տեղ ընդդիմութիւն մը կ'երեւի, հարկ էր, ընդ հակառակն, բաժանում յառաջ գար եւ ոչ միութիւն, իրաց բնական ընթացքին հետեւելով։

Աւելի շօշափելի ընելու համար խնդիրը՝ յիշենք որ Խորենացւոյն պատմագրած կամ ակնարկած ժամանակը Արշակունեաց թագաւորութիւնն արդէն բարձած էր եւ Պարսիկք իւրեանց բաժնին բացարձակ տէրը դարձած էին եւ ի ձեռն մարզպանից կը կառավարուէր երկիրը։ Որով բոլոր հին կարգ ու սարքը փոփոխութեան ենթարկուած էին եւ Տիրողը՝ կարելի եղածին չափ բուն ազգային տեղական տարրը պաշտօններէ հեռացնելու քաղաքականութիւն մը բռնած էր։ Այս հակառակութեան հետեւանօք է որ այն հին արքայական զարմէ սերեալ չորս գունդն ալ որ ի վաղուց հետէ, Վաղարշակայ կարգադրութեամբ, արքունի դրան պահապան կարգուած էին, հեռացուցեր եւ տեղը ուրիշները դրեր են։

Աւելի հաւանական կը թուի այս ենթադրութիւնը քան սպառումն այն գնդին, եթէ ժամանակին ոգւոյն եւ ձգտման միտ դնենք։

Թարգմանենք այժմ վերի հատածն իւր ամբողջութեամբ, ոչ բառացի.

« Չորս գունդ ալ արքունի դրան պահպանութեանը համար կ'որոշէ, իւրաքանչիւրը ընտիր եւ քաջարի զինուորներէ բաղկացեալ, բոլորն ալ

նոյն հին հայկեան զարմէ սերեալ եւ այլ եւ այլ ժամանակներուն գիւղերու եւ գաւառակերտներու տէր եղած՝ ժառանգաբար ի նախնեաց։

Իսկ յետոյ, Պարսից տիրապետութեան ժամանակ, ինչպէս կը լսեմ, անոնց տեղը ուրիշ գնդեր են դրեր Ոստան անուանեալ։ Չգիտեմ այն առաջին ազգին սպառա՛ծ լինելուն համար, թէ մի հակառակութեան պատճառաւ այն ազգը ընդհատելով ի բաց մերժեցին եւ անոնց տեղ ուրիշ գնդեր յարուցին արքունի անուամբ »։

Այս է ահա ճիշդ իմաստն ակնարկեալ համարին։ Այս ամէն չփոթութիւնք յառաջ եկած են « չկապեմ » բառին բուն պարսկական ծագման եւ իսկական նշանակութեան չհասկացուելէն։ Մեր այս առաջարկած ստուգաբանութեամբ թէ՛ իմաստը կ'ուղղուի եւ թէ՛ պատմական կարեւոր դէպք մը կը լուսաբանուի։

Որովհետեւ իմացած էինք թէ Հ. Խ. Սա. ի աշխ. Թարգմանութիւնը՝ Թիֆլիսի Ներսիսեան Ուսումնարանի հայ լեզուի ուսուցիչ եւ հմուտ բանասէր Գ. Ստ. Մալխասեանի աչքէն անցած է. ուզեցինք յայնժամ, բարեկամի մը միջոցաւ* նոյն գիտնականին ալ կարծիքը հարցնել այս խնդրոյն վրայ։

Յարգելի գիտնականը, շնորհակալ ենք, լուրջ ուշադրութեան առնելով խնդիրը, իւր համաձայնութիւնը յայտնած էր մեզ իւր 10 յունվար 1903 Թուակիր յոյժ խրախուսական նամակովը որմէ Թոյլ կուտանք մեզ հետեւեալը քաղել.

« Ձեր Դեկտ. 22 (յունվ. 4) որչափ ընդարձակ նոյնչափ եւ հետաքըրքրական նամակը, որի վերջին մասն ինձ էր ուղղուած՝ Գ. Համբ. Առաքելեանը ինձ տուեց կարդալու, գիտնալով որ ինձ շատ հետաքըրքրական կը լինի նրա բովանդակութիւնը։

« Յայտնում եմ ձեզ իմ անկեղծ խնդակցութիւնս Ձեր ուսումնասիրութիւնների համար զէնդ եւ փէհլէվի լեզուների շրջանում, որոց գիտութիւնը մեծ լոյս պէտք սփռէ հայոց ոչ միայն լեզուի բառակազմութեան ու ոճաբանութեան վրայ, այլ եւ սովորութիւնների, պետական, հասարակական եւ ընտանեկան կազմի, հաւատի եւ հաւատալիքների, կերակրի, զգեստի, անօթի, նիւթերի, եւն. վրայ. մի խօսքով՝ մեր հին կեանքը ամբողջապէս ճանաչելու լաւագոյն աղբիւրն է հին պարսից կեանքը, որ արտայայտուած է նրանց հին գրականութեան, մանաւանդ

* Ծանօթ հրապարակագիր Գ. Հ. Առաքելեան։

*փէնիկեցի գրականութեան մէջ։ Ճիշդ էք նկատել, որ այդ լեզուների քաջ ուսումնասիրութիւնը ամենից աւելի մատչելի է հային քան եւրոպացւոց, եթէ հայը գոնէ մասամբ ունենայ նրանց հետազօտութիւնը եւ աշխատասիրութիւնը*։ »*

*Ապա մեր աշխատութեան սատարել կարող մի քանի աղբիւրներ նշանակելէ յետոյ, աղբիւրներ որոց ամէնը ձեռաց տակ ունինք այժմ, կը յաւելու.*

*« Խորենացու Բ. է. հատուածի նշանակութեան եւ « չկապեմ » բառի բացատրութեան վերաբերմամբ միանգամայն համաձայն եմ Ձեզ հետ եւ շնորհակալ եմ, որ այդ՝ մինչեւ այժմ անծանօթ համարուած բառը յաջողութեամբ բացատրեցիք։ Խորենացու ձեռագիրներից ոմանք « չկապեալ »ի փոխանակ ունին « չազկապեալ » (որին եւ հետեւել է հանգ. Խորէն Ստեփանէն). ոմանք էլ « նշկահեալ » (որին եւ հետեւել է Լանգլուան՝ թարգմանելով — սխալ կերպով —* « ou bien par esprit d'opposition à ces familles repudiées et proscrites »). *Էմինը խուսափելով՝ թարգմանել է. . .** (= կամ որ եւ է ապստամբութեան պատճառով ոչնչացրուել էր)։ »*

*Մի քանի ուրիշ անճշդութիւններ ալ նշմարելով Խորենացւոյ նոյն հատուածին աշխ. թարգմանութեանը մէջ նշանակած էինք որոց կը պատասխանէ մեր արգոյ թղթակիցը. այլ որք առաջիկայ խնդրոյն հետ ուղղակի կապ եւ առնչութիւն չունենալուն՝ զանց կ'ընենք։*

**107.** *Բն.* אובש *ա՛շուպ* (اشوب) , *'ի բայէս՝* آشفتن *որ կը նշանակէ՝ աղմուկ՝ շփոթութիւն՝ յուզում ցասումն, եւն.։*

---

* Եւրոպացիք մեր վարպետներն են, առիկա անժխտելի է։ Մենք ոչ անոնց բազմակողմանի հմտութիւնն ունինք և ոչ անոնց վերլուծական միտքը և ոչ ալ դժբախտաբար հետազօտութիւնը, ինչպէս կ'ըսէ մեր յարգելի թղթակիցը։ Խորապէս համոզուած եմ սակայն թէ, գոնէ այս կարգի, այսինքն մեր աշխարհի վերաբերեալ աշխատութեանց մէջ, հմտութիւնը՝ կարողութիւնը՝ վերջապէս պատրաստութիւնը երկուստեք հաւասար ենթադրելով, հայ մը աւելի դիւրաւ և խորապէս կը թափանցէ իրաց իսկութեանը քան եւրոպացին։ Եւ ասոր ալ պատճառը հայուն աւելի ուշիմ և ընդունակ ըլլալը չէ, այլ տեղացի՝ համազանգ և համատարր լինելն է որով շատ մը բաներ գրեթէ բնական են իրեն, տեսած է, լսած է, և գիտէ արդէն. մինչ խեղճ եւրոպացւոյն ամէն ինչ օտար է և նոր։

Ծան. Թ.

** Թուրքերէն։

Տարակոյս չկայ թէ սա մեր « ապշոպ »ն է. այլ թէ ինչո՞ւ մէկ պ աւելի կը թուենք մենք քան պարսիկը, կամ ա՛յն է որ աւելի նախնական ձեւի մը կը պատասխանէ մերը եւ պ ինկած է պարսիկէն եւ կամ թէ ճիշտը պարսկականն է որոյ առաջին ձայնաւորին երկարութիւնն զգալի ընելու համար երկու ա ով գրած լինին մերոնք՝ աաշոպ, ինչպէս օրինակները կը տեսնենք 'ի Նաասովն, Աքաաբ, ե.ն., զոր ապա դիւրին էր անիրազգած ընդօրինակողի մը « ապշոպ » դարձնել, չփոթելով երկրորդ ա ը պ ի հետ, գրչութեան ո՛ գիտէ ինչ թերութեան բերմամբ։ Ի հաստատութիւն մեր այս կարծեաց՝ յառաջ կը բերենք Hubschmann-ին հետեւեալ տողերը ուր կ՚ըսէ.

« Երկու ձեռագրի մէջ asop (աշոպ) տեսնուած է. եթէ ճիշդ է՝ ուրեմն նպ. asob է âsuftan, âsubam, phl. âsop, skr. « ksobhate »։

Եթէ âpsop է ճիշտը, յայնժամ պհլ. ap-sôp մ՚ընդունելու է ap կամ apa նախադրութիւնով փոխանակ a ի որ անշուշտ բնաւ ուրեք չտեսնուիր »։

Հաւանականութիւնը կը մնայ ուրեմն « աշոպ »ին, անմեկնելի մնալով պ ի մ՚աւելադրութիւնն առ մեզ՝ բայց եթէ այն ենթադրութեամբ զոր վերեւ յայտնեցինք առ ի չփոթութեան մասին 'ի ապ։ Տեսնենք ի՛նչ պիտի յայտնեն ձեռագրաց նոր քննութիւնք։

**108.** Յայտնի է որ օտար ի ձայնը մեր նախնիք յ ով առեր են, զ. 'Ιακώβ ը՝ Յակովբ, 'Ιωάννης ը՝ Յովհաննէս, 'Ιορδανը՝ Յորդանան, 'Ιησους ը՝ Յիսուս, ե.ն.։

Այժմ մենք այս նուրբ կիսաձայնը հագագ թաւ ի ով կուտանք. այնպէս որ յ ի եւ ի ի մէջ տարբերութիւն մը չնշմարուիր։ Ձենք գիտեր թէ ի հնումն ալ այս թաւ ձայնով կ՚արտաբերուէր՝ թէ նախնիք աւելի նուրբ կը հնչէին եւ յետոյ թանձրանալով՝ արդի խուլ եւ անհարազատ հնչումը առացեր է։ Մեզ կը թուի թէ այս վերջին ենթադրութիւնն է ճիշտը. քանզի կարի անբնական եւ անհեթեթ պիտի լինէր, մանաւանդ թարգմանչացնման ճշդապահ եւ ճաշակի տէր անձանց համար, նուրբ եւ թոյլ ձայն մը հաստ եւ թաւ ձայնի մը փոխել, ուր իրենց իսկ ստեղծած տառերուն զանազանութիւնը կը ներէր ամէն տեսակ ձայն նոյնութեամբ ի հայ հանելու։

Այս կարգի օրինակներէն մին ալ մեր « յաւիտեան » բառն է զոր սովորաբար կը բաղդատեն ջաւիդ եւ ջաւիդան ին հետ։ Թէեւ սխալ չէ, բայց. ինչպէս ուրիշ տեղիս ըսած ենք, աւելի հնագոյնին դիմելու ենք մենք մեր բառերը պարսկականին հետ բաղդատած ժամանակնիս։ Արդ՝

կը տեսնենք որ նոյն բառը պահլաւի մէջ խաւիտ(ակ) է զոր պարս جاوید են ըրեր, մինչ մեր «յաւետ»ը որ եւ «յաւէժ»՝ միացեր է իւր նախնի հնութեան մէջ։

Իսկ իա ին ժ ի կամ ճ ի փոխուելուն երեւոյթները ա՛յնչափ սովորական են լեզուաց մէջ որ չարժեր խօսել։ J տառը, երբ բուն հռովմէական (լատին) շրջանին մէջ էր՝ իա կը հնչուէր անտարակոյս. եւ Jacobը «Իակոբ» էր, ոչ թէ «Ցակոբ»։ եւ Joannèsը՝ «Իոաննէս», ոչ թէ «Ժոան» կամ «Ճան»։ ինչպէս այսօր ալ գերմաներէնին մէջ բոլոր ժ երը ե կը հնչուին։

Լատինածին արդի բարբառներուն մէջ, սակայն, բոլոր այս իա երը ժ կամ ճ եղած են հիմա։ Նոյն փոխակերպութիւնն է որ կը տեսնուի նաեւ պ. ջաւիտ ին վրայ որ արաբականին կնիքը կը կրէ։

**109.** Բոլոր այս նամակին պարունակութիւնը Nöldeke տարբեր-ձով կուտայ. Երկու տարագիր եղբարք իրենց քրոջը կ'ըսեն.

«Եթէ դու մոռացար հայրդ եւ ազգականներդ զորս մեղապարտն եւ Աստուծոյ թշնամին յանդգնաբար մեռցնել տուաւ, կարեկցութիւն եւ գութ ունեցի՛ր զո՛նէ թշուառ եղբայրներուն համար որ կոտորածից երկրին մէջ հազար տեսակ նեղութեանց եւ մտատանջութեանց եւ թըշուառութեան եւ նախատինքի ենթակայ եղած են եւ միւս դժբախտ եղբայրներուն համար զորս այն ուխտադրուժը բանդի կապանքի պատժին ենթարկած է եւ որք անուան՝ իբրեւ շնորհքի մը կը ցանկան. Բայց դու այս ամէնը ապախտ ըրեր եւ քու զգացումդ (սիրտդ) ուղեղ էր դէպի այն ուխտադրուժը եւ դու Աստուծմէ վախ եւ երկիւղ չունիս.

(Որպէս թէ) սպաննուած լինի այն մարդը որ այսուհետեւ կնկան մը վստահի՝ աշխարհիս մէջ. Եթէ դու դոյզն ինչ արդահատանք ունիս մեր վրայ, մեզ համար ճար մը մտածէ՝ եւ մի՛ մոռնար վրէժը հօրդ եւ ազգականներուդ եւ մերձաւորներուդ . . . որով դու պիտի ստանաս մեծ յարգանք եւ բարձր պատիւ եւ աշխարհի միւս կանայք ալ քո այս գործովդ աւելի յարգանք եւ պատիւ ստանան»։

**110.** Ալիւր, ցորեն, գարի, սիսեռ եւ այլ այսպիսի ընդեղէններ բովհրել՝ աղանձել եւ շաքարի հետ խառնելով ուտելը Արեւելեայց մէջ շատ հին սովորութիւն մ'է զոր մենք ալ վայելած ենք մեր մանկութեանը եւ թէ այժմ ալ անշուշտ շատ տեղեր կայ. Պարսկաստան, իբրեւ ճանապարհի պաշար կը բառնան՝ ոչ թէ ալիւրապէս անով սնունդ առնելու

համար, իբրև հաստատուն և իրական կերակուր, այլ իբր պատրաստ աղանդեր երբեմն երբեմն քերան կը նետեն ճանապարհի յոգնութեան և երկարատև նքթութեան դիմանալու համար։ Հիներուն մէջ աւելի պահուած է այս սովորութիւնը, մանաւանդ փարսիներուն մէջ որ յամենայնի շարունակողքն են հին կարգաց և աւանդութեանց։ Այնպէս որ, քանի քանի անգամներ, մեր ալ ճանապարհորդութեանց առթիւ, մեր պատուական փարսի բարեկամները սովոր էին այս փոքրիկ պաշարներէն ուղարկել։

Բախդիարցւոց* մէջ աւելի պինդ պահուած է թէ՛ սովորութիւնը և թէ անունը զոր « պաստ » կը կոչեն և կը պատրաստեն այսպէս.

Գարին և ցորենը նախ կը թրջեն՝ կը հովացնեն, և վրայի ծանծերը կճպել մաքրելէն յետոյ կը բովհրեն և սանդի մէջ կը ծեծեն։ Միւս կողմէն ալ կը ծեծեն բովհրած սիսեռ կամ պիստակ կամ նուշ և քիչ մ'ալ շաքար։ Ետոյ ամէնը մէկ միասին կը խառնեն մինչև որ միայար զանգուած մը լինի, ոչ կարի չոր՝ փոշեխառակ, և ոչ ալ թոյլ՝ ծորական, այլ գէջ և կակուղ ա՛յնչափ որչափ նշի կամ պիստակի պատրաստութիւնը կրնայ ազդել։ Ապա մանաւոր քսակներու մէջ կը դնեն և կը բառնան ի ճանապարհի։ Այս ամէնը նոյն իսկ իրենցմէ, բախդիարցիներէ ստուգեցինք մանրամասնաբար։

Nöldeke, իւր արեւմտեայ ճաշակէն դատելով, ուտելու անյարմար կը գտնէ այս չորեղէն պատրաստութիւնը և կ'ուզէ բնագրին պաստ ու շաքարը որ Ֆերդուսիէն ալ հաստատութիւն ունի, ինչպէս ինքն ալ կը խոստովանի, պաստ ու չիյր կարդալ, որպէս զի այդ փոշիացեալ նիւթերը հեղուկի մը հետ խառնուին և ուտուելու յարմարութիւն առնեն, ինչ որ հակառակ է թէ՛ բնագրին և թէ արեւելեայց այս հնաւանդ սովորութեան որ և զարդիս ի բազում տեղիս պահուած է, ինչպէս տեսանք։

**111.** Բն. כדכ « կաղկ » որ ճիշտ վերի բաղադրութիւնն է և զոր կը յայտնէ նաև մասամբ մեր « կասկ »ը։

**112.** Բնագրին այս דיאנכ « գիանակ » բառը Nöld. յատուկ անուն կը կարծէ, բայց համոզիչ ապացուցութիւն մը չտեսայ։ Կարծեմ թէ

---

* կէս անկախ և քաջ ժողովուրդ վաչկատուն (իլ կամ էլ) Իրաք-Արաբի սահմը, Լօրիստանի։ Ասոնց լեզուին և սովորութեանց մէջ շատ նշմարանքներ կը տեսնուին արժանի ուշադրութեան։

պարզապէս կին ըսել է, ինչպէս մենք թարգմանեցինք եւ զոր ապա Խօսակարն ալ հաստատեց բերանացի։

**113.** Եբ. מרגרזאנ որոյ դէմ կրնանք հանել մարգարժան, այսինքն՝ մահապարտ։ Փարսի օրէնսդրութեան (code) մէջ այս բառը շատ կը գործածուի։

**114.** Բնագրին բառն է « չան »։ Սա, իմաստին պահանջմանը եւ բառին նմանութեանը նայելով, կը կարծենք թէ մեր « չար »ն է, փոխանակութեամբ Հ-ի ի Ր. ինչպէս Սպահապետ = Սպարապետ, Շապուհ = Շահպուր, վիհ = վիր, խոհ, խահ = խոր, եւն.

Հաւանականութիւն չունի Հիւպշ. ի վերլուծութիւնը որ չ բացասականով յն. ἄ-ριστος էն կը բերէ (ոչ լաւ), զոր, եւ ինքն ալ իբր առոյգ չդասեր։ Յունական ἄριστος ին բուն թարգմանութիւնը կը գտնենք առ Խորենացւոյ ի բառիս « անբարի »։

**115.**
**116.** } Ջատուկ, դրուժան, դրուանդ, ասոնց ամէնը, ինչպէս այլուր յիշած ենք, Չար Ոգւոյ (Անգրիմանայ) եւ ոգւոց յատուկ ածականներ են եւ կը նշանակեն նենգաւոր՝ խաբեբայ՝ մոլորեցուցիչ*, եւս եւ դիւր՝ կախարդ՝ հմայիչ՝ պատրող, եւն։

Որովհետեւ հպ. « դրաւ »՝ « դրուխս » (دروغ = ստել) արմատ մը կայ որ տուած է « դրաւճ » (دروج = դրուժ) եւ « դրաւճան » (دروجان = դրուժան), նոյն արմատը մենք ալ, ըստ պարսկականին, ածանցելով وند = ւանդ ով՝ ունեցանք « դրուանդ » որով եւ առ մեզ ամբողջացաւ վերի դիւանախատ չարքը։

**117.** Բնագիրն է « զա°տա°կ զա՛տակ »։ Երկուքն ալ ընդունելութիւն անցեալներ են, մին زدن էն, միւսը زادن էն։ Առաջինը կը նշանակէ զարնել, այլ նաեւ ւերել՝ ապականել՝ փճացնել**. իսկ բ.ը

---

* Աժդահակայ վրայ խօսելով « անբարի առաջնոյ նորա բարբառութեան »։

** Թէ՛ «զ ա ր ն ե լ»ու եւ թէ՛ «փ տ ո ւ թ ե ա ն» գաղափարը մեր մէջ ալ միացած կը գտնենք « Հարկանել »ին վրայ

« Այլ նորա (մեռելոյ) մարմինն հ ա ր ե ա լ իցէ »։

« Զի զնա ի հ ա ր կ ա ն ե լ ն ոչ ոք տեսանէ »։

Ոսկ. Մեկն. Մատթ. (Հատ. Ընթ.), եր. 78 — 9։

Ուր նեխութեան ապականութեան վրայ է խօսքը։

ծնանել։ Այժմ ալ, հասարակ լեզուի մէջ օՅյ կ'ըսուի այն բանը որ (պտուղ, եւ այլն) աւրուած փտած է, զօ. օՅյրگ (որդնահար)։ Ուստի օՅ| օՅյ ով կ'իմանայ նախատիչը՝ ապականեալ ծնունդ։

Nöld. այս ածականները բնաւ չէ յիշած, այլ պարզապէս « նեն-գաւոր » ըսեր անցեր է, բնագիրը խանգարեալ համարելով.

**118.** Մեր դրած « ապախոռ »ը ճիշտ բնագրին գործածած բառն է զոր նոյնութեամբ կը դնէ նաեւ մեր Փ. Թ.ը։

Nöld. դահիճի իմաստ յայտնող բառով մը կը թարգմանէ (Scharfrichter) եւ բնագիրը ճիշտ אספאכור (ապախոռ) կարդալով հանդերձ, զարձեալ խանգարեալ կը կարծէ։

**119.** Այս բառը պհլ. բնագրին մէջ « գարխման » է։ De Harlez-ի ուղղագրութիւնը մի քիչ կը տարբերի մերինէն։ Նա կը կարդայ «գրութ-ման », այլ մարթ է նաեւ կարդալ « գարօթման » կամ փաղէնդ ձայ-նիւ՝ garoəman, ինչպէս կը կարդայ Hübschmann, եւ է զէնդ garo-nmana, նաև گرزمان եւ կը նշանակէ, Աւեստական լեզուի մէջ՝ « եր-կինք », մանաւանդ « երկինք երկնից » որով պհլ. մեկնիչք կ'իմանան երանաւէտ կեանք եւ հանգստաւէտ վիճակ, անքոյթ եւ անվրդով խա-ղաղութիւն։ Տարակոյս չկայ որ մեր « գերեզման »ն է սա. ոչ միայն բառին նիւթական չէնքը այլ իմաստն ալ կատարելապէս կը համապա-տասխանէ իւր պհլ. լծորդին, յայտնելով ճիշտ այն լուին՝ անվրդով՝ խաղաղաւէտ հանգստութիւնը զոր ոչ ուրեք մարթի գտանել քան ի դիր տապանի եւ ի ծոց երկրի։

« Եղիցի խաղաղութեամբ գերեզման նորա ».

Եսայ. Ծէ. 2։

« Որ ննջեն ի գերեզմանի ».

Սաղմ. Ծէ. 6։

Բայց մենք « դժոխք » բառ մ'ալ ունինք որ գաղափարաց այս զար-մանալի չարայարութեան մէջ, մեծապէս նկատողութեան առնուելու է։

« Դժոխք »ը հասարակ առմամբ, ամէն մարդ գիտէ որ « տանջանաց տեղի » մըն է։ Բայց այս միտքը նոր եւ քրիստոնէական է։ Բառին հին առումը ան չէ, « դժոխք »ով հիները ոչ արքայութիւն եւ ոչ տանջա-նարան հասկցած են, այլ պարզապէս անդրաշխարհեան խաղաղավայր մը, անորոշ տեղի մը, նոյն իսկ գերեզմանական անդորրութիւնը յորմէ

« դժոխք »ը հայերէնի մէջ, հիանալի յարմարաբարութեամբ՝ «գերեզման» ալ կը նշանակէ։

« Կատարեցին ի բարութեան զկեանս իւրեանց, հանգստութեամբ ննջեցին ի դժոխս »։

Յովբ Իա, 13։

« Եւ արասցես ըստ իմաստութեան քում, եւ ոչ իջուսցես զալիս նորա խաղաղութեամբ ի գժոխս »։

Գ. Թագ. Բ. 6։

« Իջին ի դժոխս փառք քո »։

Եսայ. Ե. 14։

եւ այլ բազում տեղեր։

Ուրեմն, փոխանակ հակառակելու Աւեստական գաղափարին, կը տեսնենք որ կը գրկեն մանաւանդ զիրար, «գերեզման»ը եւ «դժոխք»ը, յայտնելով մի եւ նոյն խաղաղական վիճակը։

Գաղափարաց այս քայլ առ քայլ հետեւողութենէն յետոյ չեմ կարծեր թէ տեղի մնայ այլ եւս հարցնելու թէ — « արգանդ »ի գաղափարը ինչո՛վ կը հաշտուի « գերեզման »ին հետ։

Ո՛չ ապաքէն դիր՝ տապան՝ ննջարան՝ եւ հանգստարան է սա, դիր՝ տապան եւ լռիկ անդորրավայր մ'է եւ նաև Հանգիստութիւնը ոչ բռնի (forcé) է եւ ոչ կարծուածին չափ հեռաւոր. մի եւ նոյն մայր-գաղափարէն մեկնելով ամենաբնական կերպով եւ սքանչելի անցումներով հասնուէր է այն գաղափարին եւս։ Այս մասին ալ պահլաւէն հեռացած կամ ետ մնացած չենք մենք. եթէ նոյն համարձակութեամբ գերեզման կոչած չենք արգանդը, յիշատակութիւններ ունինք սակայն, ուղղակի եւ կողմնակի, որ կը ցուցնեն թէ մի եւ նոյն գաղափարի հետեւած հպատակած ենք եւ մենք.

« Լուաւ ինձ յորովայնէ դժոխոց »։

Յովն. Բ. 3։

Ո՛վ չտեսներ որ այս տեղ ճիշտ քովէ քով դրուած են « արգանդ » եւ « գերեզման », զիրենք փոխանորդող « որովայն » եւ « դժոխք » բառերով։

Այլ օրինակ ուշագրաւ.

« Ընդէ՞ր հաներ զիս յորովայնէ եւ ոչ անդէն մեռայ, եւ ական չէր տեսեալ զիս, իբրեւ չեղեալ լինէի։ Ընդէ՞ր յարգանդէ ի գերեզման ոչ վճարեցայ »։

Յովբ. Ժ. 18—19։

*Այս օրինակին մէջ ահա որովայն՝ արգանդ եւ գերեզման բառերը միահաղոյն կը պատահին, զոյգեր աւելի բացորոշակի մատնելու համար տիրող եւ առաջնորդող գաղափարը։*

*Գեղեցիկ օրինակ մ՚ալ Ոսկեբերանի մէջ կը տեսնենք ուր « արգանդ երկրի » կը կոչէ հողին ծոցը։*

*« Ջաւէ Աստուած, եթէ վասն զի ի վատութիւն հատեալ էք, չծագեմ զարեգակն, չէջուցանեմ զլուսին, կապեմ* զարգանդ երկրի, *...»։*
*Մեկն. Մատթ.* (*Հատընտիր Ընթ. եր.* 83։)

*Բառերը արտաքին յայտարար նշաններն են գաղափարներու եւ գաղափարները, մտաց այն անճառելի եւ աներեւակայելի երագութեամբ, ա՛յնպիսի թաքուն եւ անկոխ ճանապարհներով կը վազեն կը ժամանեն միմեանց որ հետքերը նշմարելը երբեմն կարի դժուար եւ երբեմն ալ անհնարին կը մնայ։ Բայց անգամ մը որ առաջնորդող թելը՝ շօշափման կէտերը գտնուեցան, այն ատեն կը տեսնուի որ ամենէն տարանջատ, ամենէն հեռու եւ ամենէն անհամաձայն կարծուած գաղափարներն ալ ա՛յնպէս իրար կ՚ընդգրկեն եւ այնպէս կը միաբանին որ մի հիանալի եւ ներդաշնակ լրութիւն մը կը կազմեն։ Բայց խնդիրը այդ շօշափման կէտերը գտնելն է որ, ինչպէս ըսած ենք միշտ չյաջողիր։*

**120.** *Այս տեղ Ֆիրդուսին՝ Ֆէրազիսթանը եւ այլ պարսիկ մատենագիրք մի հետաքրքրական ծանօթութիւն եւս կը յաւելուն որ հաւանականութենէ հեռի չէ։*

*Խոհեմ եւ հեռատես Դաստուրը, այն վայրկեանին իսկ երբ արքայակինը իւր տունը կը տանի, ինք զինք կ՚ենթարկէ վիրահատական այնպիսի գործողութեան մը որ ապագային ամէն կասկածանքէ եւ չար լեզուներէ զերծ պիտի պահէր զինք։ Եւ առ հաւատչեայն, պահարանի մը մէջ խնամով թաքուցուած եւ կնքուած, կ՚առնէ կը տանի թագաւորին եւ կը խնդրէ որ յանձնուի գանձապետին որպէս զի գանձարանը դրուի եւ պահուի անձեռնմխելի զգուշութեամբ, մինչեւ ժամանակը գայ յայտնելու թէ ի՛նչ է։*

*Յետոյ, երբ մովպետին սպասած կէտը հասաւ եւ մանկան գաղտնիքը պարզուեցաւ, այն ժամանակ խնդրեց Արքայէն որ բերուի այն աւանդը եւ բացուի։ Թագաւորը վերջին աստիճան գոհ մնալով այս փափկանկատ զոհողութենէն, ուրիշ առատաձիր պարգեւներու եւ շնորհներու հետ, հրամայեց նաեւ որ արքունի դրամներուն մէկ երեսին վրայ ալ Դաստուրին պատկերը դրոշմուի, ինչպէս մինչեւ հիմա ալ կը տեսնուի այն ժամանակի դրամներուն վրայ։*

**121.** Բնագիրն ունի «փուշտ-աստան-սարդար» որ անշուշտ «Թիկնապահ զօրաց պետ»ն էր. կամ պ. Ճայնիլ «փուշտիպան սարդար»։

Nöld. «փուշտիպան սալար» կը կարդայ, ըստ մեզ՝ յանդէպս, քանզի այս վերջին ձեւը նորագոյն է եւ նոյն աղաւաղեալը, մինչդեռ բնագիրը բուն հին ձեւով վարուած է զոր պէտք էր պահել։

**122.** Ահա բառ մը որ մեզ անհնարին յոգնութիւն պատճառեց առանց սակայն որոշ վախճանի մը յանգելու։

Անկէ առաջ, Արարատ ամսագրի մէջ*, սոյն բառի վրայ տեսութիւն մ'ընելով «աւագ խորհրդական» կամ «բեմբասաց» նշանակութեամբ առած էինք, բայց այժմ, եւրոպացի գիտնոց կարծիքներն ալ առաջի աչաց ունենալով, աւելի վարանեալ մնացինք քան երբէք։

Nöldeke քովի «վասպուրական» բառն ալ հետ առնելով (զոր «ասպուրական» կը կարդայ)՝ ասպետաց կարգի հրահանգիչ՝ մարզիչ կը համկընայ, առանց ի պատմութենէ հաստատելու թէ մի այդպիսի կարգ եւ պաշտօն գոյութիւն ունեցած լինի։

Hübschmann մի զինուորական բարձր պաշտօն կը կարծէ եւ պատուոյ կարգաւ՝ մովպետան մովպետի եւ մեծ սպահապետի մէջ տեղ կը դնէ. «անդարձ»ին նշանակութիւնը միշտ խրատի՝ կցակի սահմանին մէջ պահելով որ զինուորական պաշտօնի մը հետ շատ վերաբերութիւն չցուցներ։

Nöld.ի «ասպուրական» կարդալուն գալով, կարծեմ թէ սխալ ըմբռնման մ'արդիւնք է եւ հաստատուն հիմ չունի այդ ընթերցուածը։ Բնագիրն ամէն ուրեք բացորոշ «վասպուհարկան» եւ «վասպուհարկան»ը ամենեւին անյարմարութիւն չունի տեղւոյս եւ իմաստին. թերեւս պատշաճագոյն ալ է։ Hübschmannն ալ մեզ համամիտ է յայսմ եւ «անդարձապետ»ի վրայ խօսած ժամանակը չարունակ «վասպուրական» ձեւն ի նկատի ունի եւ ոչ «ասպուրական»ը։

Մի ուրիշ կէտ.

Nöld., ինչպէս վերը յիշեցինք, «անդերձապետ ասպուրականաց» կ'ընթեռնու, նոյնպէս նաեւ Hübsch. «անդարձապետ վասպուրականաց» (andarzapat i vâspuhrakân), որմէ կը հետեւի թէ ազնուականք իրենց յատուկ անդարձապետ մ'ունէին։ Մեր օրինակին մէջ այդ երկու

* 1903, Օգոստ.—Սեպտ.։

բառերն իրարու հետ կապելու նշան մը չկայ եւ Փ. Թարգմանութեան մէջ ալ ուրոյն եւ անջատ ըմբռնուած են یل‌اندرزبد و واسپورکانان ։

Մի կարեւոր կէտ եւս.

Ինչպէս վերի օրինակին մէջ կը տեսնուի, اندرزبد էն սկիզբը یل բառ մըն ալ կը դնէ Փ. Թ.-ը։ Արդ այս یل ը ի՞նչ է։

یل ը գիտենք որ, պարսկերէնի մէջ, հզօր՝ հսկայ՝ կտրիճ, փեհլեւան կը նշանակէ։

منم آن پیل ژیان و منم آن شیر یله

« Ես եմ այն հսկայ փիղը եւ ես եմ այն հզօր առիւծը » (فرهنك)։

Բայց ի՛նչ յարմարութիւն ունին այս տեղ վիթխարի զանգուածը, այս տիտանական կորովը, այս փեհլեւանական ձիրքեր ու տաղանդները, պէտք էր մի այնպիսի բառ գնել որ անդերձապետի դիրքին եւ պաշտօնին պատասխանէր եւ հոս է ահա հայերէնի մատուցած ամենամեծ ծառայութիւնը որ կուգայ ուղղել ընթերցուածը եւ հաստատել բառին բուն իմաստը։ Ասոր համար բաւ է այն սխալ یل ը դեր կարդալ ինչպէս ունի հայերէնը — « դերանդերձապետ », որովհետեւ պահլաւին մէջ բառը օրինաւորապէս « եղ » ալ կարդալ կարելի է « դեր » ալ։

Շատ անգամներ ըսած ենք եւ այս առթիւ դարձեալ կը կրկնենք որ պահլաւերէնը ուղիղ կարդալու գործին մէջ ոչ այնքան պհլ. այբուբենի ծանօթութիւնը որքան ուրիշ պայմաններու օժանդակութիւնը կարեւոր է։ Երբեմն տեղւոյն իմաստին պիտի հետեւուի, երբեմն բնակից շառաւիղներուն պիտի դիմուի, երբեմն պատմութեամբ եւ երբեմն աւանդութեամբ պիտի առաջնորդուի։

Ըստ այսմ, վերի պարագային մէջ, կը տեսնենք որ եղ lecture, թէեւ ուղիղ, սակայն որովհետեւ պահանջուած իմաստին օտար է, միւս կողմէն տեսնելով որ մի եւ նոյն բառը ուրիշ ձայնիւ ցեղակից մի ուրիշ լեզուի մէջ կը գտնուի աւելի որոշ եւ յարմար իմաստով, բնական է որ այս վերջինին համեմատ պէտք է ուղղել ընթերցուածը։

Խօսակարը որուն յայտնեցինք հայերէնի այս հանգամանքը յառաջիկայ գէտքի մէջ, բերկրութեամբ եւ անվերապահ ընդունեց մեր այս ցուցումը։

Ուրեմն բառը կը ներկայանայ ճիշդ այնպէս ինչպէս աւանդեր են մեզ մեր մատենագիրք, այն է՝ « դերանդերձապետ » եւ « դեր »ը, տարակոյս չը կայ որ կը նշանակէ այս տեղ « Դուռն » որպէս թէ ըսէր « Դրան անդերձապետ », ինչպէս կ'ըսուի Դրան եպիսկոպոս, եւն։ Գիտնական Հիւպշմանին ալ այս է կարծիքը։

**123.** Այս բառերը ճիշտ բառական թարգմանութիւններն են պհլ. համազօրներուն, այսինքն Անխօսուն = (գունգ) այսինքն համր եւ խուլ Անասուն = պհլ. ազուբակ, ա ժխտականէ եւ զուբակ (ասուն) բայածականէ որ ինքն ալ կը ծագի کب (کو) արմատէն։

Անբան = نادان բարդեալ ա ժխտականէ եւ دان (գէտ)է որ արմատն է دانستن (գիտեմ)ի, որ raison առմամբ մեր « անբան »ն է։

Nöld. այս ամէնը անբան միակ բառով առած է։

**124.** Բն. « ֆէր անը-խողայ-սրուզգարէն », այսինքն՝ տիրոջը հրամանին զբօսնող։

Զբօսնումը (سپوختن وز) կը նշանակէ պ. յամել, յուլանալ, ժամավաճառ լինել, անփոյթ՝ անհոգ լինել, թերանալ, եւն. (Յուն. 31)։ Այս ամէնը կատարելապէս կը պատասխանէ մեր մէջ ալ այս բառին առած իմաստին եւ գործածութեանը, քանզի ժամավաճառութենէ եւ անփութութենէ ստիպմանաբար կը հասնինք անտեսելու գաղափարին։ Այլ որովհետեւ այս վերջինը, հայերէնի մէջ, տիրող գաղափարը չէ զբօսնումին, այլ մասնաւոր աշխատութեան մը պէտք կայ, գաղափարները չղթայելով անոր հասնելու, ուստի մենք, բացայայտութեան համար, բուն բառը՝ անտեսել ը գործածեցինք բարդելով։ Ուրեմն տիրանտես ը պիտի նշանակէ տիրոջը կամքին եւ հրամանին չանսացող։

Իսկ « զբօսանք »ը, « ալիք ծովու » նշանակութեամբ տարբեր եւ հակառակ իմաստ մը չյայտներ, այլ նոյն վերի թուարկութեան սահմանին մէջ է, զի սա ալ տեսակ մը խաղ եւ քմահաճ տարուբերութիւն եւ տատանում եւ ծածանումն է ջրոց։

**125.** Մարթ էր, բնագրին բոլորովին պատկառ կալու համար ըսել. « Պերոզկերին Սար-Շահի բազում գոհաբանական սպաս անգարից » որ թէեւ կատարելապէս հայերէն՝ այլ շատ խորթ եւ օտար տեսնելով զանց ըրինք։

**126.** Այս բացատրութիւնը լաւ հասկնալու համար պէտք է ծանօթանալ Զրադաշտեանց մէջ արմատացած սա աւանդութեան հետ որ ինն հազար տարուան միջոցին վեհ-դենը չորս անգամ նորոգութիւն պիտի

կրէ։ Առաջինը Ջրադաշտի ձեռքով*. երկրորդը՝ « Հուշիդար » անուն անձի մը ձեռքով. երրորդը՝ « Հուշիդար-Մահ »ի ուրումն ձեռքով. իսկ չորրորդը « Սիօշանս » անուն մէկու մը միջոցաւ. եւ այս վերջին նախագութիւնը պիտի առնէ մինչեւ ռաստախիզ ('յարութիւն) յարում تن پسين պիտի լինի. այսինքն մարմինք պիտի վերանորոգին. կամ բառացի թարգմանելով՝ վերջին մարմինը պիտի զգենուն (մարդիկ)։

Այս աւանդութիւնը հաստատուած է Ջրադաշտին մէկ տեսիլքին վրայ. երբ 30 տարեկան հասակին, իւրայնոց հետ Իրան կ'անցնէր. Նախ-քան զքարոզութիւնն։

« Հազարեակ բառով այս տեղ ճիշդ 1000 տարի հասկնալու չէ. այլ շրջան մը որ չորս անգամ կրկնուելով 9000 տարի պէտք է բոլորէ։

127. Այս հնդկաց « Գէտ » = کید ին անուան վրայ մի քիչ մթութիւն կայ։ Դա մի թագաւո՞ր էր արդեօք իմաստուն եւ կենցաղագէտ, թէ ոչ լոկ տեսանող մը, գուշակ մը, մարգարէ մը (Իսրայէլական իմացուածով)։ Եւ այս « գէտ » անունը, որով ճանչցուած է, ցեղային ժառանգակա՞ն մի անուն էր արդեօք, թէ իւր գիտութեանն՝ արհեստին տրուած մի մակդիր։ Մեզ այս երկրորդ ենթադրութիւնը հաւանական կ'երեւի, քանզի որչափ ալ բանգէտ եւ իմաստուն լինէր Հնդկաց թագաւոր մը, գործել չպարտէր Արտաշիր իւր ակար կողմը յայտնել անոր Ֆոգգէտայ մը, աստղագէտ մըն էր դա անշուշտ, իւր գիտութեանն հռչակ եւ համբաւ տուած որուն ամենայն միաձայնութեամբ կրնար դիմել Արտաշիրը՝ գալոց եւ լինելոցները իմանալու համար։ Այն պարագան ալ մեր այս կարծիքը կը հաստատէ որ Արտաշիրին ուղարկած պատգամաւորը դեռ բերանը չբացած Հնդիկը յայտնեց նմա թէ ի՛նչ խնդրոյ համար եկած էր. ուրեմն հարցուկ մը, գուշակ մը, աստղահմայ մըն էր նա, եւ « գէտ » բառը, այս տեղ ալ, ինչպէս ամէն ուրեք 'ի Ս. Գիրս, կը պահէ իւր սովորական նշանակութիւնը զոր գեղեցիկ կը ճշդէ հետեւեալ համարը.

« Կոչեցէք զգէտս եւ զմոգս եւ զկախարդս ». Դան. Բ. 2։

Այս օրէր « Հանդէս ամսօրեայ »ի հին հաւաքածոյ մը բարեդիպաբար ձեռքս իյնալով ուսումնասիրութիւն մը տեսայ հոն « Նախահայերէնի

* Ասկէց ալ կը հետեւի որ Ջրադաշտը ոչ թէ ինքնահնար կրօնք մը քարոզեց, այլ նորոգեց Մահաբադի վաղեմական վարդապետութիւնը, իր կողմանէ ալ ինչ ինչ աւելցնելով եւ բարեփոխելով անշուշտ։

հետքեր Զօկերէնում» վերնագրով եւ Դր. Վանցեան ստորագրութեամբ ուր հեղինակը, Ագուլեցւոց բարբառին վրայ խօսելով, ճիշդ մեր այս խնդրոյ առարկայ «գէտ» բառը քննութեան կ'առնէ եւ «գայտ» նախնական ձեւ մը կը նշանակէ։ Շատ հաւանական է որ ուշադիր բանասէրին այս տեսութիւնը ճիշդ լինի եւ «գայտ» նախնի տիպ մը ժամանակաւ ամփոփուելով արդի «գէտ»ը առած լինի. Այս կարծեաց ոյժ տալ կը թուի նաեւ այն պարագայն որ փէհլէվի դրչութեան մէջ ալ բառը ճիշդ ու ճիշդ «գայտ» է եւ ոչ «գիյտ» ինչպէս կարծեցնել կուտայ արաբացի գրչութիւնը։ Nöld. ալ մեզ հետ «գայտ» կը կարդայ, յենլով Ֆերդուսիի հեղինակութեան վրայ որ գայտ ը միշտ այտ ձայներու հետ կը յանգէ. ինչպէս սայտ (ոյս)։

Ուրեմն հաստատ ընելու չափ հաւանական է որ բառն ի սկզբան «գայտ» էր եւ «գէտ»ը նորա մի կծկեալ աղմեալ յետակազմ ձեւն է. որ սակայն մինչեւ ցայսօր ալ տեղ տեղ, ինչպէս ստուգեցինք, տակաւին իւր նախնի ձեւը պահած է, ինչպէս 'ի Դաշտաստան նահանգին Ֆարսի՝ ուր ժողովուրդը «գայտ» կը հնչէ եւ մեծ եւ երեւելի եւ գիտուն եւ իմաստուն կը հասկնայ։

Այս օրինակէն հետեւցնելով կրնանք նաեւ մեծ հաւանականութեամբ ընդունել թէ մեր «խէթ»ին ալ նախատիպը եղած լինի «խայթ», ինչպէս դիտել կուտայ յիշեալ յօդուածագիրը։

Աւելցնենք սակայն որ. որովհետեւ չափազանց ծանր է այս խնդիրը եւ լի հեռաւոր հետեւանօք, վասն որոյ, սպասելու է որ գաւառաբարբառներու ուսումը եւ համեմատական քննութիւնները նոր նիւթեր մատակարարեն. եթէ ոչ, այս մի քանի օրինակները բաւական չեն մի որոշ եւ բացարձակ համոզում գոյացնելու։

**128.** Բն. «բաղախչարհ» (Թագաւորութիւն) որմէ «բաղախչա» (Թագաւոր = پادشاه) որ կը յիշեցնէ անշուշտ մեր «բդեաշխ»ը՝ չնչին այլայլութեամբ։

Պէտք առարկուի թէ իմաստով տարբեր են — Մեր այժմու քաղաքական կարգաւորութեամբ եւ իմացուածով՝ այո՛. բայց երբ միտք բերենք որ այն հեռաւոր անդրպատմական ժամանակներուն ուր բառերն եւ ձայներն ա՛յն ինչ ձեւանալ եւ կերպաւորել սկսած էին, որոց առումներ եւ նուրբ զանազանութիւններ չէին կրնար տուած լինել անշուշտ։ Մի եւ նոյն ձայնը կարող էր շատ մը բաներու նշանակ լինել անխտիր. անոնց մէջ տեսնուած մերձաւորութեան եւ նմանութեան համեմատ

*Զարմանք չէ ուրեմն որ « պատախշա » որով այսօր մենք* پادشاه *միայն կը հասկնանք, ամէն կարգի մեծութեան՝ իշխանութեան՝ աւանդութեան գաղափարի հետ կապուած լինի ի հնումն։*

*Մեր այս տեսութեամբ կատարելապէս լուծուած կը կարծենք մեր « բդեաշխ »ին հանգոյցը որոյ համար գիտնական Էմինը իրաւամբ ըսած է թէ « Այս բառի յատուկ նշանակութիւնն անյայտ է եւ որոնելու է զանդիկի մէջ, որովհետեւ հայերէն արմատ չունի եւ նորանից բարդ բառ եւս չկայ»։ Խոր. աշխ. Թարգմ.։*

*Յիրաւի կը տեսնենք որ ինչպէս* de Harlez *եւ* Darmesteter *կը հաստատեն, շահին նախնական ձեւն եղած է «խշաթրա»* (khshàthra) *հին պարսկերէնի մէջ եւ սանսկրիտի մէջ որմէ զէնդին անցած է « խշաեաթիա »* (khshàyathia), *եւ սա՝ « բայդի »* (païti)*ի հետ բարդուելով տուած է « բայդի-խշաեաթիա »* (paiti khshâyathia) *որ վերջապէս փէհլէվիի մէջ եղած է բադախշահ* (pâtakshah) — souverain։

*Արդ՝ եթէ համեմատութեան դնենք փատիշահ ը եւ « բդեաշխ »ը, պիտի տեսնենք որ մերինն աւելի հարազատ եւ մերձաւոր է պհլ. ին։ Յիրաւի, « բադախշահ »* پادشاه *լինելու համար բաւական մեծ աղաւաղութիւն կրած պէտք է լինի ռամկին բերնին մէջ որ իւ ձայնը բոլորովին անհետանայ, մինչդեռ մերինին մէջ անկորուստ պահուած է, տառերու աննշան տեղափոխութեամբ միայն որ միշտ կը պատահի նմանօրինակ դէպքերու մէջ որով* խստորը ախտոր *կը դառնայ,* դրգալը՝ գդալ, ձգեղը գցեղ, *եւն.։*

*Աւելի աչքի հետ խօսելու համար, պատկերացնենք երկու բառերն ալ, վանելով ձայնաւորները որ շարժում տալու միայն կը ծառայեն բառին բուն տառերին, բաղաձայններին, ինչպէս գրենք։ Յայնժամ կ'ունենանք*

*պհլ. բդխշ = հյ. բդշխ*

*յորում լոյսի պէս կը ցոլայ նոյնութիւնը երկու քս։*

**129.** *Մենք, նկատուած իմաստը պահելու համար, ընտել տեղով « ճակատագիր » թարգմանեցինք, սակայն բնագրին մէջ « աւարկար » կը կարդանք զոր պարզապէս եւ նոյնութեամբ* اورکر *կը հանէ Փ. Թ. ը։*

Nöldeke *այս բառը* אפרין *կամ* אפריתכאר = افریدکار *կարդալով* Schöpfer *(ստեղծող, արարիչ) կը թարգմանէ, սակայն կասկածանօք. քան զի ինքն ալ կը խոստովանի որ փէհլէվիի մէջ* آفریدن *ը գործածական չէ, այլ՝* دادن *ը։*

*Յաւե՛լ նաեւ որ փէհլէվիի մէջ ոչ միայն բառը, այլ այս ձեւ բանին ալ գործածական չէ։ Աստուծոյ համար, փոխանակ արարիչ, ստեղծող, եւն. ըսելու, միշտ Որմիզդ կամ. Դատար* (دادار) , *Դատկեր* (دادگر) , *եւ. կը գործածեն։*

*Միւս կողմանէ ալ դիտելի է որ, որչափ ալ առաձգական լինի փէհլէվի գրչութիւնը, դէ՛թ այս դէպքին մէջ անկարելի է բառը* آفریدکار *կարդալ, մինչ* اورگ *ընթերցուածը ուղղութեան եւ վաւերականութեան ամէն պայմանները ունի։*

*Գալով նշանակութեանը՝ ի զուր պիտի փնտռենք պ. բառագրաց մէջ իմաստ մը որ այս տեղի պահանջը գոհացնէ։ Մի միայն հայերէնը կուտայ լուծման նպաստաւոր տարրը, ընդլայնելով մի քիչ մեր « աւար »ին առումը։*

*Յիրաւի ի՛նչ է աւարը հայերէնի մէջ. — Կապուտ՝ կողոպուտ (եաղմա, թալան) որ սովորաբար պատերազմի դաշտի վրայ կը հաւաքուի. Եւ « առ » եւ « ապուռ » ձեւերն ալ որ ունինք, ոչ այլ ինչ են բայց եթէ յեղանակաւորեալ ձեւերը նոյն « աւար »ին. առաջինը (առ) ամփոփեալ, երկրորդը ւ ի նախնական բ բուն ձայնը պահած, որ իրաւամբ ենթադրել կուտայ թէ պհլ. ի մէջ հնագոյն « աբարկար » ձեւ մըն ալ կայ կամ թէ այնպէս ալ կը կարդացուի ներկայ ձեւը։*

*Արդ՝ պատերազմական գաղափարները մի կողմ դնելով վայրիկ մը, ըմբռնենք « աւար »ը իբրեւ բաժանելի ինչք եւ գոյք եւ կալուած, ըմբռնում որ ոչ օտար եւ ոչ հեռի է մայր-գաղափարէն, եւ կամ նոյն իսկ պատերազմական գաղափարի մէջ մնալով ալ — քանզի ո՞չ ապաքէն բաշխ-բաժին է «աւար»ը — կը տեսնենք որ աւարակերտ կամ աւարկերը կը լինի աւարաբաշխ, աւարատու, կամ այլ ձեւով, բաշխող բարեաց, տուիչ պարգեւաց, կամ վերջապէս՝ բախտ, ճակատագիր։*

**130.** *« Գէտ » բառին վրայ մեր յայտնած կարծիքը աւելի եւս հաստատութիւն կ'առնէ այս համարին մէջ, զուգորդութեամբ « գէտ » եւ « գուշակ » երկու բառերու որ փոփոխակի միմեանց իմաստը կը լուսաբանեն։*

*Մեր Փ. Թ.ը երկու սխալ միանգամայն կը գործէ այս տեղ որոց երկուքն ալ մի եւ նոյն պատճառէ, հայերէն չիմանալէն, յառաջ կուգան։ Նախ սխալ կը կարդայ պհլ. բնագիրը, փոխանակ « գուշակ »ի « գնչակ », երկրորդ՝ պաշտող, սպասաւորող մեկնելով « գուշակ »ը որոյ պ. յոքնակին է գուշական։ Առաջին սխալն անկեց է որ պհլ. ի մէջ*

ու յայտնօղ նշանագիրը ն ալ կը կորդացուի։ Եթէ հյ. « գուշակ » բառը ծանօթ լինէր Թարգմանչին, անվրէպ ուղիղ ընթերցուածին պիտի առաջնորդուէր։ Գալով գուշականին պաշտեյ նշանակութեանը, մի քիչ հեռաւոր եւ բանազբօսիկ կը թուի մեզ, եթէ իրաւ է որ խուշ եւ խուշիշ արմատներէն կը բերէ. այլ սակայն ջանք՝ փոյթ եւ աշխատութիւն կը նշանակեն անոնք եւ հմայութեան հետ գործ չունին։

**131.** Բնագրին ընթերցուածին վրայ բոլորովին վստահ չենք։ Մեր Փ. առաջնորդին հետեւելով դահճկան գրինք, քանզի այս բառը ոչ միայն պարզ հասարակ գիւղացի եւ շինական մը կը նշանակէ, այլ գիւղի եւ դաստակերտներու տէր հարուստ ազնուական մըն ալ, ինչպէս Ֆերդուսիին մէջ ալ կը տեսնենք։

Nöldekeին առաջարկած lectureն ալ մի ուրիշ անյարմարութիւն կը ցուցնէ, տեղւոյն եւ պարագային նայելով։ Նա կ'ուզէ « դայեկան » կարդալ, « դայեակները փախուցած » իմանալով։ Խօսակարը սակայն առաջին ընթերցուածը կը պաշտպանէ իբր ուղղագոյն։

**132.** Բն. « արդիշդարան սարդար »։ Բառագիրք արդիշի համար սիպահ եւ լաշկար կը նշանակեն անորոշաբար, որով պարզապէս զօրապետ կը լինի մեր բառը, ինչ որ անհաւանական է. քանզի յատուկ եւ մասնաւոր կարգի մը titre կը նշմարուի այս տեղ։ Nöld., ինչպէս նաեւ Sir Jöhn Malcolm « զօրաց հրամանատար » կ'ըսեն, առանց կարենալ ճշտելու։ Մենք կը կարծենք որ մեր « արդ » (գեղ-արդ) արմատէն կարելի է լոյս մ'առնել այս մութ բառին վրայ։ Գիտենք որ արդ(ն), գեղարդ(ն), տէգ, նիզակ, ասոնք տակաւին մեծ դեր կը խաղային այն ժամանակի սպառազինութեանց մէջ։ Թերեւս մի ուրոյն կարգ ալ տէգընկէց զօրաց կար որոյ հրամանատարին կ'ակնարկուի այս տեղ։ Ամենէն հաւանական կարծիքը ինձ այս կը թուի լինել մինչեւ ցնոր ճշտագոյնը։ Այս հայեացքով է որ « արդնաւորաց սարդար » թարգմանեցինք, իբր արդնընկեց՝ տէգընկէց կամ գեղարդակիր վաշտից հրամանատար։

**133.** Բառը բնագրին մէջ « անընտանեկանութիւն » է ճշտիւ. զոր համառօտաբար « անընտանութիւն » ըսինք, պահելու համար պահլաւ կազմութիւնը որ է « ախիշկարի » եւ կը լուծուի

ա = մասնիկ ժխտական
խիյշ = ընտանի, ազգական.

կար = կար, գործ, արարք
ի = գոյականակերտ

որով իմաստը կը լինի ընթացք մը որ հակառակ է ընտանեկան կարգաց եւ օրինաց։

**134**. Բն. « Ա՛ռում » որով Բիւզանդեան կայսրութիւնը կ'իմանան եւ մինչեւ հիմա ալ Օսմ. երկիրը եւ Պետութիւնը որ շարունակութիւնն է Բիւզանդեանին՝ روم կ'անուանեն եւ Թէհրանու Օսմ. դեսպանատունն ալ سفارت روم ։

**135**. Այս կարգադրութիւնները, այս այցելութիւնները, բոլորը առասպելական կը համարի Nöldeke, իրաւամբ։

**136**. « Սար-Նամակ »ը այս տեղ « վերջաբան »ի մտօք առնուած է. մենք ալ նոյնութեամբ բառը պահեցինք, քանի որ հայերէնի մէջ ալ նոյն են, միայն թէ բարդութիւնն անսովոր էր, գէթ այս մտօք։

**137**. Այս 4 եւ 5 համարները Nöld.ին մէջ կը պակսին. կա՛մ. այն է որ ընդօրինակողները տարբեր են, եւ կամ եթէ մի եւ նոյն անձը, մեր Ռոստոմ Մեհրաւանն է, մոռացմամբ կամ այլ պատճառաւ ի բաց թողուած է յիշատակութիւնը։

**138**. Այս վերջին գլուխը, ինչպէս Խոտաեարէն բերանացի ստուգեցինք, իր օրինակին մէջ չկայ եղեր, այլ մի ուրիշ օրինակին մէջ գըտեր եւ թարգմաներ է. անոր համար Nöld.ի օրինակին մէջ ալ այս կտորը չգտնուիր։

**130**. Բնագրին բառը « ավիղակ » ալ « ավիժակ » ալ կը կարդացուի եւ է միջին պարսկերէնի اویژ կամ ویژه ձեւերը, մեր « վճիտ »ը որ ամէն ջինջ եւ մաքուր իրերու բնական ստորոգելին է, մանաւանդ ջրոյ վրայ խօսելով, ճիշտ այս բառն է, անցած լինելով « վէժ » եւ « վիժ » ձեւերէ որ ջրոյ հոսման ծորման գաղափարները կը յիշեցնեն։

**140**. Այս համարին մէջ ալ յիշուած « ապարթար »ը մի նոր հաւանականութիւն եւս կը յաւելու մեր նախընթաց տեսութեան վրայ (ծան. 31)։ Տեղւոյն եւ գրչութեան պահանջն այնպէս է որ անհնարին է

دشكام ըսելու որ ոչ նուազ օրինաւոր եւ վաւերական է, համազօր ունենալով, առ մեզ՝ « դժկամ »ը։ Նոյնպէս بدمنش կ'ըսեն, փոխանակ دشمنش ի։ Իսկ սա իւր համանիշն ունի ի « տուչ-մա՞ռ » որուն կը պատասխանէ մեր « դժմիտ »ը։

Մենք մեր լեզուին անգնահատելի ընդունակութենէն օգտուելով՝ բոլոր այս բառերը դժ մասնիկով պանծալաբար հանեցինք ի հայ, որով, ինչպէս նախապէս ըսինք, ոչ խորթ եւ ոչ օտար նոր բառեր ծնունդ առին, ըստ օրինակի անոնց որ կային արդէն, դժգոհ, դժկամակ, դժխեմ, դժպատիկ, դժպհի, եւն.։



# ԾԱՆՕԹԱԳՐԵԱԼ ԲԱՌԻՔ

---

# ՆՈՐԱԿԵՐՏ ԲԱՌԵՐ

# ԲՆԱԳՐԻՆ ԱՅՆ ԿՏՈՐՆԵՐԸ ՈՐ ՀԱՅԵՐԷՆՈՎ ԼՈՒՍԱԲԱՆՈՒԵՑԱՆ

| | | Պատմ. | | Ծան. |
|---|---|---|---|---|
| | | Եր. | Հ. | Հ. |
| 1 | Այդուն . . | 4 | 1 | 5 |
| 2 | Ավար . . . | 28 | 1 | 129 |
| 3 | Գէտ . . . | 28 | Գլ. | 127 |
| 4 | Գուշակ . . | 28 | 2 | 130 |
| 5 | Դերանդերձապետ . | 26 | 9 | 122 |
| 6 | Դժնդակ . . | 19 | 3 | 87 |
| 7 | Եթէ . . . | 10 | 15 | 51 |
| 8 | Եւթանքուխտ . . | 16 | Գլ. | 80 |
| 9 | Հեռի . . . | 15 | 2 | 77 |
| 10 | Մեծասար . . | 10 | 12 | 48 |
| 11 | Պայման . . | 8 | 21 | 42 |
| 12 | Վասպուրական . | 6 | 6 | 28 |
| 13 | Վիր . . . | 14 | 12 | 72 |
| 14 | Փառք . . . | 12 | 14 | 58 |

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

—

Գործոյս տպագրութենէն վերջը աչքիս հանդիպած մի քանի նոր ծանօթութիւններ։

« Որգոն » էջ 39.

Եւսեբեայ Քրոնիկոնին մէջ գրուած կայ. « Ի Դանիելի պատմութիւնսն զնաբուքոդոնոսորայ պատմի, թէ զիարդ եւ որգունակ անկաւ ի մտաց »։

Հատ. Ընթ. Հ. Թ. Թ. էջ 346.

Ուրեմն մեր « Որգոն »ը որ որգոյն է յորմէ որգունակ, կարծուածին պէս նոր եւ պիտակ ալ չէ եւ թերեւս ուրիշ տեղեր ալ կայ գործածուած, այս եւ ասոր մօտ ձեւերով։

« Դաստիարակ » էջ 68.

Հ. Ղ. Ալիշանն ալ այս բառին նոյնութիւնն ընդ دستور ի դիտած եւ նշանակած է իր « Հին հաւատք Հայոց » հմտալից գործոյն մէջ (358 եւ 466) ուր Մազդեզանց կրօնից եւ ծիսից վրայ ընդհանրապէս լաւ եւ ճիշտ խօսուած է եւ շատ մը բառերու վրայ ալ սուր եւ քաջ վերլուծութիւններ կը տեսնուին։

Այս կարգէ են, զօ.

« Ուրու » (ծան. էջ. 70)

բառին վրայ յայտնած գաղափարները որք լիովին կ'ընդգրկեն իմիններս, նոր ապացոյց մ'ալ աւելցնելով չարքին վրայ « Օրիորդ »ը զորմէ կ'ըսէ թէ ի ձեռագիրս տեսնուած է « Ուրուորդ », որով տարակոյս չմնար թէ սա ալ մի եւ նոյն ծագումը կը մատնէ, այն է « Ուրու »ն որոյ առընթեր իրաւամբ կը դնէ նաեւ « Հուրի »ն։

Դիտել կուտամ միայն թէ. ինչպէս ինքը պատուական Հեղինակն ալ զգացած է, մեր « Ուրու՞ն فروهر ի հետ գործ չունի որոյ համեմատ կրնանք համել մեր « Հրաւէր »ը, իբր հրաւիրակ պատգամաբեր, մեր բանին հրեշտակ՝ մեր սրտի խմացուածով։ Եւ մինչեւ հիմա Պարսկաստանի Ֆարս նահանգին մէջ, Շիրազէ մի քանի փարսախ հեռի, Պերսեպոլեայ հռչակաւոր աւերակաց մօտ (զոր անձամբ այցելեցինք) Սիւանդ անուն գիւղ մը կայ ուր մինչեւ հիմա գիւղացւոց բերնէն فروهر կը լսուի հրեշտակի տեղ, ինչպէս հաղորդեց ինձ բանեկամներէս մին, Ֆուրսաթ անուն Շիրազցի զերահռչակ գիտնականը։

« Աւեստ » (ծան 99)

Աւոր ալ քով դնելով « հաւատի բան՝ » Հ. Ալիշանը ճիշդ ու ճիշդ ի վեր կը հանէ այս երկու ձայներուն արմատակցութիւնը։ Եթէ չիչ մ՝ալ յառաջ մղէր զննութիւնը, անոնց վրայ պիտի աւելցնէր անշուշտ չարքին միւս այլազանութիւնները ալ, այն է՝ հաւատ, աւատ, աւետ յորմէ եւ աւետարան։

« Անոյշ », « անուշակ »
(ծան. 70)

Անոնց ընտանեկցութիւնն ալ ճիշդ կ'ըմբռնէ Հ. Ալիշան. երանական տեղի, արքայութեան վայելք, եւն. իմանալով որ բառին բուն զանգիկ ու պանծալի իմաստը կը չօշափէ. այն է, ինչպէս տեսանք, անմահութիւն՝ անախտականութիւն եւ անանց եւ անվերջ երանութիւն։

Կան ուրիշ հանդիպումներ ալ զորս մի առ մի թուել տեղւոյս սահմանը չներեր։

« Վաժի » (ծան. 94)

Այս օրեր واژغ բառ մը տեսայ برهان ի* մէջ որուն համար մութ բացատրութեամբ մը կ'ըսէ « Այն մասը որ արմաւի ծառէն կը կտրեն եւ անով որթատունկերը կը կապեն »։ Անհարկութիւն է սա անշուշտ

---

* Գտնուած պարսիկ բառագրոց մէջ ամենէն յարգին, թէպէտ եւ Պարսիկները մինչեւ հիմա, սրտի ցաւով, լիակատար եւ գոհացուցիչ բառագիրք մը չունին։

դրախտաբուծական մի սովորութիւն որ ինձ անծանօթ լինելուն չեմ կրնար տիրապէս ըմբռնել թէ ի՛նչ է եւ ի՛նչ մտօք իմանալի։ Եթէ այս է մեր բժշկարանաց գործածած բառը. դարձեալ խնդրական կը մնայ։ Հին հեղինակներէն կարելի է լոյս մ՚առնել։

Վերջակէտս չ՚դրած՝ սա ալ արժան կը համարիմ յիշել որ իմ յաճախակի տեղափոխութիւններուս եւ պարագաներու՝ աններող հարկին տակ աշխատութեանս կրած անպայման ընդհատումներուն պատճառաւ, չեմ կրցած, գործոյս մէջ, տեղւոյ եւ ժամանակի եւ մինչեւ իսկ ոճոյ միութիւն պահել։ Եւ որովհետեւ բուն էականին հետ վերբերութիւն մը չունէին, ընթերցողին ազնուամտութեանը թողուցի ուղղել մտովի այս կարգի թերութիւնները ուր ուրեք որ նշմարուին։



# ՎՐԻՊԱԿՔ

| ԷՋ | ՀԱՄԱՐ | ՏՈՂ | ՍԽԱԼ | ՈՒՂԻՂ |
|---|---|---|---|---|
| ԺԲ | | 28 | յաջողելով | յաջորդելով |
| Ի | | 29 | չանփականելու | անփականելու |
| 3 | | 2 | Արտաշիրի | Արտաշրի |
| 4 | 1 | 1 | » | » |
| » | 10 | Ծան. 1 | այգուն | այգուն |
| 6 | 3 | 2 | ձիավարութեան | ձիավարգութեան |
| 8 | 21 | 4 | անզար է | անզարէ |
| 8 | Ծան. ***** | | (مکارتر) | (کامکارتر) |
| 18 | 2 | 1 | Միհրդրժութիւն | միհրդրժութիւն |
| 19 | 3 | 2 | ցած | Թացած |
| » | » | 3 | արտաշիր | Արտաշիր |
| 32 | 5 | 1 | արգ աւորաց | արգնաւորաց |
| 34 | 1 | 2 | գործեց* | (տող 9) բաժնեց* |
| 50 | | 11 | դիմում | դիտում |
| 63 | 49 | 6 | դանեկան | գանեկան |
| 69 | | 2 | չաւակէնրո | չարունակէ |
| 70 | | 19—20 | بو ید انوشه | انوشه بو ید |
| 74 | | 8 | գ ղափարը | գաղափարը |
| 79 | | 14 | | 67 |
| 81 | Ծան. | 4 | յորումը նզարձակ | յորում ընդարձակ |
| 91 | | 7 | կայ | չկայ |
| 94 | Ծան. | 1 | յեղինակաբար | հեղինակաբար |
| 107 | 109 | 9 | անուան | մանուան |
| 109 | 114 | 8 | անբարի | անբարի* |
| 115 | 124 | 16 | ծա անում | ծածանում |
| 120 | 131 | 2 | գանեկան | գենկան |
| 121 | 135 | 1 | այցելութիւննետը | այցելութիւնները |
| 122 | 143 | 5 | منسنی | منشنی |